## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Նույն կանոնները խախտողների հոդվածները կմնան անհետևանք։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։




# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**6**

ՀՈՒՆԻՍ 1971

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов» — теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

# Содержание





# ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԵՎ ԳԻՏԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՈՐՈՇ ՊՐՈԲԼԵՄՆԵՐ


Ց. Ա. ՍՏԵՓԱՆՅԱՆ

ՍՍՀՄ ԳԱ թղթակից-անդամ

*(Մոսկվա)*


*Կուսակցության XXIV համագումարում տրված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևն ընդգծեց, թե մեր կուսակցությունը գիտական կոմունիզմի կուսակցություն է՝ կարևորագույն մի դրույթ, որն ընդհանրացած ձևով արտացոլում է կուսակցության ողջ գաղափարա-տեսական գործունեությունը հասարակության կոմունիստական վերակերտման ոլորտում։*

*Մեր կուսակցությունը ստեղծվել է գիտական կոմունիզմի հաստատուն բազայի վրա։ Հեղափոխության, նոր հասարակության շինարարության համար մղած իր պայքարի բոլոր փուլերում ՍՄԿԿ-ն մշտապես ղեկավարվում է գիտական կոմունիզմի տեսությամբ, անդուլ զարգացնում և հարստացնում է այն։*

*Մարքս-լենինյան գիտության, գիտական կոմունիզմի տեսության մեջ, մասնավորապես, մեծ ավանդ մուծեց ՍՄԿԿ XXIV համագումարը, որում տրված զեկուցումների, ելույթների և ընդունված որոշումների կարևորագույն բնորոշ գիծը՝ գիտական կոմունիզմի օրգանական կապն է սոցիալիստական և կոմունիստական շինարարության պրակտիկայի, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի և ողջ ազատագրական շարժման հրատապ խնդիրների հետ։ Հեղափոխական տեսության և պրակտիկայի այդ դիալեկտիկական միասնության մեջ ցայտուն դրսևորված է գիտական կոմունիզմի ողջ հարստությունը՝ բառիս լայն և նեղ առումով։*

*Գիտական կոմունիզմը լայն առումով՝ կոմունիստական ֆորմացիայի նախապատրաստման, ծագման և զարգացման օրինաչափությունների ողջ սիստեմի տնտեսական և սոցիալ-քաղաքական հիմնավորումն է։*

*Գիտական կոմունիզմը նեղ առումով՝ մարքս-լենինյան միասնական ուսմունքի երրորդ, փիլիսոփայությունից և քաղաքատնտեսությունից հետո, սոցիալ-քաղաքական մասն է։ Մարքսիզմ-լենինիզմի ուժը նրա բոլոր անբաժա-*

նելի մասերի դիալեկտիկական միասնության մեջ է, որոնք ապահովում են հասարակական զարգացման օրինաչափությունների բազմակողմանի հետազոտությունը: Մարքսիզմի տարբեր մասերի ամեն մի խզում և միմյանց հակադրում՝ անհամատեղելի է կոմունիստական գաղափարախոսությանը: Չի կարելի իսկական կոմունիստ լինել, ընդունելով մարքսիզմի մի մասը, մերժելով կամ անտեսելով մյուսը: Միջազգային բանվորական շարժման մեջ այդպես են վարվել բոլոր երանգի ռևիզիոնիստները, որոնք առանձնապես կատաղաբար էին հանդես գալիս երրորդ, մարքսիզմն ավարտող մասի՝ գիտական կոմունիզմի տեսության, բուրժուազիայի դեմ պրոլետարիատի դասակարգային անհաշտ պայքարի, բանվոր դասակարգի՝ որպես կապիտալիզմի գլխավոր գերեզմանափորի և կոմունիզմի արարչի պատմական առաքելության, կոմունիստական կուսակցության ղեկավար դերի, սոցիալիստական հեղափոխության և պրոլետարիատի դիկտատուրայի անխուսափելիության վերաբերյալ նրա արմատական դրույթների դեմ:

Կաուցկիականության և մյուս ռևիզիոնիստների դեմ Լենինի մղած պայքարի ուսանելի պատմությունը ցույց է տալիս, որ գիտական կոմունիզմը չընդունելը կամ ժխտելը հավասարապես աղճատում է մարքսիզմի մյուս մասերը՝ փիլիսոփայությունը և քաղաքատնտեսությունը, դրանց զրկելով հեղափոխական, կոմունիստական նպատակասլացությունից: Եվ դա հասկանալի է, քանի որ մարքսիզմ-լենինիզմի բոլոր մասերի միջև գոյություն ունի ներքին և անխզելի միասնություն, որն արտահայտվում է մեկ ընդհանուր օբյեկտի՝ կոմունիստական ֆորմացիայի, ծագումն ու զարգացումը հետազոտելու մեջ: Սակայն այդ միասնությունը ոչ թե մետաֆիզիկական է, այլ դիալեկտիկական, որը նկատի ունի հիշյալ մասի ո՛չ միայն հարաբերական ինքնուրույնությունը, նրանց ճանաչման առարկայի առանձնահատկությունները, այլև, նայած պատմական իրադրության փոփոխությունների, կարողանում է այս կամ այն մասն առաջ մղել:

Մարդկության՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջանում, երբ համաշխարհային սոցիալիստական սիստեմի դերը վճռական է ու որոշիչ, վիթխարի նշանակություն է ձեռք բերում գիտական կոմունիզմի տեսությունը, որն ուսումնասիրում է նոր հասարակարգի ստեղծման ընդհանուր, առանձնահատուկ սոցիալ-քաղաքական օրինաչափությունները և, հենվելով փիլիսոփայության, քաղաքատնտեսության ու կոնկրետ հետազոտությունների վրա, տալիս է կոմունիստական ֆորմացիայի լինելության պրոցեսի ամբողջական լուսաբանումը:

ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերում ու որոշումներում տրված տեսական և ծրագրային դրույթների լույսի տակ— հնարավորություն է ընձեռվում կոնկրետ քննարկելու, ընդհանուր ջանքերով լուծելու գիտական կոմունիզմի որոշ հասունացած մեթոդոլոգիական պրոբլեմներ: Բոլոր գիտական պրոբլեմները լուծելիս մենք պետք է ղեկավարվենք XXIV համագումարի բանաձևով, որտեղ ասված է. «Համագումարն ընդգծում է, որ կոմունիստական շինարարության խնդիրների հաջող լուծման գլխավոր գործոններից մեկը սովետական գիտության զարգացումն է: Լայն ճակատով ծավալելով գիտական հետազոտությունները, հարկավոր է գիտնականների ջանքերը կենտրոնացնել առավել կարևոր պրոբլեմների լուծման վրա, ամրապնդել գիտության կապը կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ, արագացնել նրա նվաճումների



կիրառումը ժողովրդական տնտեսության մեջ: Անհրաժեշտ է ամեն կերպ բարձրացնել ինստիտուտների, ամբիոնների և լաբորատորիաների աշխատանքի արդյունավետությունը, հասնել այն բանին, որ յուրաքանչյուր գիտական կոլեկտիվում ստեղծվի իսկապես ստեղծագործական մթնոլորտ, արդյունավետ դիսկուսիաների, գիտնականների փոխադարձ պահանջկոտության մթնոլորտ» (ՍՄԿԿ XXIV համագումարի բանաձև, «Հայաստան» հրատ., 1971, էջ 30):

Հասարակական գիտությունների մեջ կարևոր տեղ է գրավում գիտական կոմունիզմի տեսությունը՝ որպես մարքսիզմ-լենինիզմի իրավահավասար բաղկացուցիչ մաս: Այն ունի հսկայական և գնալով աճող նշանակություն կոմունիստական շինարարության գործում:

## ԳԻՏԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԸ ՈՐՊԵՍ ԴԱՍԱՎԱՆԴՄԱՆ ԵՎ ՏԵՍԱԿԱՆ ՀԵՏԱԶՈՏՄԱՆ ԻՆՔՆՈՒՐՈՒՅՆ ԱՌԱՐԿԱ

Երբեմն հարցնում են, թե գիտական կոմունիզմը, որպես դասավանդման հատուկ առարկա, ինչո՞ւ միայն 60-ական թվականներին մտցվեց այն երկրում, որը պատմության մեջ առաջինն է կառուցում սոցիալիստական և կոմունիստական հասարակություն: Այդ հարցին ճիշտ պատասխան տալ կարելի է միայն պատմական մոտեցման հիման վրա, որը ամեն մի գիտության, ինչպես և գիտական կոմունիզմի կարևորագույն մեթոդոլոգիական սկզբունքն է:

Գիտական կոմունիզմը միշտ էլ եղել է լենինյան կուսակցության տեսական հիմքը: Դեռ ավելին, մեր դարաշրջանի և բուն մարքսիզմի զարգացման դիալեկտիկայի շնորհիվ XX դարում առաջին պլանը մղվեց գիտական կոմունիզմը: Դարաշրջանի պահանջներին համապատասխան Վ. Ի. Լենինը, ստեղծագործաբար զարգացնելով մարքսիզմի բոլոր բաղկացուցիչ մասերը, գլխավոր ուշադրությունը դարձրեց գիտական կոմունիզմի պրոբլեմների մշակման վրա: Դեռ սոցիալիստական հեղափոխության նախապատրաստման ժամանակաշրջանում նա 1911 թվականին Լոնժյումոյի կուսակցական դպրոցում 12 դասախոսություն կարդաց «Սոցիալիզմի տեսությունն ու պրակտիկան Ռուսաստանում» հատուկ առարկայի շուրջ:

Հոկտեմբերյան հեղափոխության առաջին իսկ տարիներից Վ. Ի. Լենինը հատուկ ուշադրություն էր դարձնում գիտական կոմունիզմին: Նրա աշխատությունները առավելապես նվիրված են սոցիալիզմի շինարարության պրոբլեմների մշակմանը: Նա պահանջում էր, որ այդ պրոբլեմները գտնվեն հասարակական գիտությունների հետազոտության կենտրոնում: Այդ նպատակով 1918 թվականի հունիսին ստեղծվեց աշխարհում առաջին «Հասարակական գիտությունների սոցիալիստական ակադեմիա», որը հետագայում վերանվանվեց Կոմունիստական ակադեմիա: Կոմունիստական ակադեմիայի խնդիրները, նրա կազմակերպման հենց սկզբից, ինչպես ասված է 1919 թ. ապրիլի 15-ին Համառուս. Կենտգործկոմի հաստատած կանոնադրության մեջ, գիտության բնագավառում՝ «սոցիալիզմի պատմության, տեսության և պրակտիկայի հարցերի հետազոտությունն ու մշակումն» էր, գիտական բնագավառում՝ «սոցիալիզմի գիտական գործիչների և սոցիալիստական շինարարության պատասխանատու աշխատողների պատրաստումը», կազմակերպչական բնագավառում՝ «գիտական սոցիալիզմի աշխատողների միավորումն ու համախմբումը»:

Համարյա միաժամանակ ստեղծվեց Սվերդլովի անվ. կոմունիստական

համալսարանը, որի առաջին ուսումնական ծրագիրը և ուսումնական պլանը կազմել էր Վ. Ի. Լենինը։ Համալսարանում մտցվեց հատուկ առարկա՝ «գիտական սոցիալիզմ»։ Վ. Ի. Լենինի «Պետության մասին» պատմական դասախոսությունը, որը կարդաց նա համալսարանում, նվիրված էր մարքսիստական սոցիալիզմի գլխավոր հարցին։ Գիտական կոմունիզմի պրոբլեմների շուրջ դասախոսություններով հանդես էին գալիս մեր կուսակցության այլ ականավոր գործիչներ։

Մոտավորապես այդ ժամանակներին են վերաբերում Վ. Ի. Լենինի դիտողությունները Ն. Կ. Կրուպսկայայի «Պոլիտեխնիկական կրթության մասին» թեզիսների վերաբերյալ։ 1920 թ. վերջին ուշադրությամբ կարդալով այդ թեզիսները, Լենինը մի շարք սկզբունքային դիտողություններ ու առաջարկություններ արավ։ Նա պահանջում էր կազմակերպել նախ և առաջ հետևյալ առարկաների ուսումնասիրությունը — կոմունիզմ, ընդհանուր պատմություն, հեղափոխության պատմություն, 1917 թվականի հեղափոխության պատմություն։

Մինչև 1925 թ. գիտական սոցիալիզմի (կոմունիզմի) դասընթացը դասախոսվում էր Մոսկվայի, Լենինգրադի, Կազանի և այլ քաղաքների մի շարք ուսումնական հաստատություններում։ Կազանի համալսարանում 1919—1920 թթ. գիտական կոմունիզմի դասընթացը կարդում էր Վ. Ադորատսկին։

Գիտական կոմունիզմի ուսումնասիրության ձևերն ու մեթոդները փոփոխվում էին՝ կուսակցական կյանքում, երկրում և ամբողջ աշխարհում պատմական իրադրության փոփոխման կապակցությամբ։ Վ. Ի. Լենինի մահից հետո խիստ սրվեց պայքարը լենինիզմի և տրոցկիզմի միջև։ Ի պատասխան լենինիզմը տրոցկիզմով փոխելու հակակուսակցական խմբերի փորձերի, կուսակցությունն անհրաժեշտ համարեց 1924 թ. վերջից ամենուր ավանդել «Լենինիզմի հիմունքները» և «ՌԿ(բ)Կ պատմություն» երկու նոր դասընթացները։ Այդ դասընթացների կարևորագույն նպատակն էր՝ տալ Լենինի գաղափարական և տեսական հարուստ ժառանգության պատմական ու տրամաբանական ամբողջական լուսաբանումը, բացահայտել լենինիզմի՝ որպես մարքսիզմի զարգացման մեջ նոր էտապի, էությունը։

«Լենինիզմի հիմունքները» դասընթացը գրեթե ամբողջությամբ բաղկացած էր գիտական կոմունիզմի տեսության արմատական և հրատապ պրոբլեմներից։ «Լենինիզմի հիմունքների» և «Կուսակցության պատմության» դասավանդումն ու պրոպագանդումը հսկայական դեր խաղացին մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի գործում։

Սոցիալիզմի հաղթանակի կապակցությամբ անհրաժեշտություն առաջացավ հասարակության սոցիալիստական վերափոխությունը ղեկավարելու ոլորտում մեր կուսակցության ձեռք բերած փորձը աշխատավորների լայն զանգվածների համար տեսականորեն և պատմականորեն խորապես իմաստավորել։ 1938 թվականից երկու ուսումնական դասընթացի միացմամբ մտցվեց «Մարքսիզմ-լենինիզմի հիմունքները» ընդհանուր դասընթաց։ Այդ դասընթացում նույնպես գերակշռում էին գիտական կոմունիզմի պրոբլեմները, որոնք ուսումնասիրվում էին մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունների, մեր կուսակցության և Կոմունիստական ինտերնացիոնալի կարևորագույն փաստաթղթերի հիման վրա։ Բոլոր թերություններով հանդերձ, այդ ընդհանուր կուրսի ուսումնասիրությունն ու նրա լայն պրոպագանդումը մեր կադրերին և



ամբողջ ժողովրդին տեսականորեն, քաղաքականապես և գաղափարապես նախապատրաստեցին հիտլերյան ֆաշիզմի ջախջախմանը։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորման և համաշխարհային ամբողջ կոմունիստական շարժման նոր վերելքի պայմաններում, հրամայական անհրաժեշտություն առաջացավ ինքնուրույնաբար ուսումնասիրելու գիտական կոմունիզմը, նրա բազմակողմանի ստեղծագործական զարգացումը սոցիալիստական և կոմունիստական շինարարության ինտերնացիոնալ հարուստ փորձի և խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար կոմունիստական կուսակցությունների մղած պայքարի հիման վրա։

Մեր երկրի գիտական շրջաններում 50-ական թվականներին բանավեճ ծագեց այն առթիվ, որ գիտական կոմունիզմն առանձնացվի որպես ինքնուրույն ուղղություն ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայում և որպես հատուկ դասավանդման առարկա բարձրագույն ուսումնական հաստատություններում ու կուսակցական լուսավորության սիստեմում։ Այդ բանավեճն ուսանելի է շատ տեսակետներից։ Հատկապես կարևոր է վերհիշել գիտական կոմունիզմը որպես դասավանդման և հետազոտական ինքնուրույն առարկա առանձնացնելու կողմնակիցների և հակառակորդների հիմնական փաստարկները։

Առաջինները ելնում էին մարքսիզմի երեք բաղկացուցիչ մասերի զարգացման դիալեկտիկայից։ Նրանք պաշտպանում էին իրականում գոյավորվող կոմունիստական ֆորմացիայի խոր ուսումնասիրության և հին աշխարհի դեմ մղվող սուր պայքարի պայմաններում հաստատվող նոր աշխարհը կառուցողների մտածողության ձևավորման անհրաժեշտությունը։

Նրանց ընդդիմախոսները, ընդհակառակը, պնդում էին գոյություն ունեցող պրակտիկայի պահպանման անհրաժեշտությունը, այն պրակտիկայի, ըստ որի՝ գիտական կոմունիզմի պրոբլեմները հարևանցիորեն, զուգընթացաբար ուսումնասիրվում էին կուսակցության պատմության, փիլիսոփայության և քաղաքատնտեսության դասընթացներում։ Ընդ որում, ոմանք գիտական կոմունիզմի հասկացությունը բառիս լայն իմաստով ինքնաբավ էին դարձնում, այն լրիվ նույնացնելով մարքսիզմ-լենինիզմի մնացած բաղկացուցիչ մասերի հետ։ Իսկ մյուսները գիտական կոմունիզմն ընդհանրապես չէին համարում իր առարկան, իր օրենքներն ու կատեգորիաներն ունեցող ինքնուրույն գիտություն։ Նրանք գիտական կոմունիզմը հասկանում էին սոսկ որպես նոր հասարակության կառուցումը ղեկավարելու մեթոդ։

Այդ ստեղծագործական բանավեճի առաջին էտապը շարունակվեց մի քանի տարի և վերջացավ նրանով, որ գիտական կոմունիզմը հաստատվեց որպես դասավանդման և տեսական հետազոտության ուրույն առարկա։ ՍՄԿԿ Կենտկոմի 1963 թվականի որոշմամբ գիտական կոմունիզմը սահմանվեց որպես դասավանդման հատուկ առարկա բարձրագույն ուսումնական հաստատություններում։

Գիտական կոմունիզմի, որպես մարքսիզմ-լենինիզմի բաղկացուցիչ մասի, դասավանդման և տեսական ուսումնասիրության խնդիրների բնորոշմանն էր նվիրված, այնուհետև, ՍՄԿԿ Կենտկոմի «Հասարակական գիտությունների հետագա զարգացման և կոմունիստական շինարարության բնագավառում դրանց դերի բարձրացման միջոցառումների մասին» (1967 թ. օգոստոս) որոշման մի մեծ հատված։

Մինչև այժմ այդ ասպարեզում հսկայական աշխատանք է կատարված մեր երկրում և, մեր օրինակով, սոցիալիզմի մյուս երկրներում։ Առանձնապես մեծ հաջողություններ են ձեռք բերվել կուսակցության XXIII և XXIV համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում և լենինյան հոբելյանի տարում։

XXIV համագումարը ցույց տվեց, որ սովետական հնգամյա պլանները դառնում են ավելի ու ավելի կոմպլեքսային, արտացոլելով սոցիալիստական հասարակության տնտեսական, սոցիալ-քաղաքական և հոգևոր բոլոր ոլորտների համամասնական, ներդաշնակ զարգացումը։ Տնտեսական և սոցիալական զարգացման օրգանական միասնությունն ու փոխներգործությունը զարգացած, հասուն, դեպի կոմունիզմ ընթացող սոցիալիզմի էական ցուցանիշներից են։

Սոցիալիստական հասարակության համամասնական, ներդաշնակ զարգացման գործում վճռական նշանակություն ունի հասարակական արտադրությունը, էկոնոմիկայի առաջընթացը, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը։ Արդի պայմաններում դա ձեռք է բերվում սոցիալիզմի օբյեկտիվ տնտեսական օրենքների և գիտատեխնիկական առաջադիմության առավելագույն օգտագործման, հասարակական արտադրության արդյունավետության և նրա ինտենսիֆիկացման անշեղ աճման միջոցով։ Այդ և մյուս պրոբլեմները գտնվում են տնտեսագետների ուշադրության կենտրոնում, ինչի մասին միանգամայն ճիշտ ասվում է ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերում։ Հսկայական նշանակություն ունի նաև գիտական կոմունիզմի տեսությունը։

Գիտական կոմունիզմը, որպես մարքսիստական-լենինյան միասնական ուսմունքի երրորդ, ավարտող բաղկացուցիչ մաս, ոչ միայն բացահայտում է նոր հասարակության նախապատրաստման, ծագման ու զարգացման սոցիալ-քաղաքական օրինաչափությունները, այլև, հենվելով քաղաքատնտեսության, փիլիսոփայության, և իր իսկ՝ գիտական կոմունիզմի, կոնկրետ սոցիալական հետազոտություններով նվաճված արդյունքների վրա, տալիս է ամբողջ կոմունիստական ֆորմացիայի լինելության և գործողության օրինաչափությունների ամբողջական լուսաբանումը։

Կոմունիստական շինարարության ղեկավարման համար հասարակության զարգացման արդի պրոցեսների կոմպլեքսային հետազոտությունների անցկացման գծով հասարակական գիտությունների դերի մասին համագումարի ցուցումը շատ բանով է վերաբերում գիտական կոմունիզմին, որը ՍՄԿԿ-ի գործունեության կարևորագույն տեսական հիմքն է։

## ԳԻՏԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՕՐԵՆՔՆԵՐԻ ՍԻՍՏԵՄԸ

Մարքսիզմի բոլոր բաղկացուցիչ մասերն ունեն օրենքների ու կատեգորիաների որոշակի ներդաշնակ սիստեմ։ Այդ մասին ինձ վիճակվեց խոսել դեռևս 1965 թվականին՝ գիտական կոմունիզմի տեսական պրոբլեմների, նրա առարկայի, օրենքների ու կատեգորիաների վերաբերյալ բանավեճի ընթացքում տրված զեկուցման մեջ (տե՛ս «Вопросы философии» հանդես, № 5, 1965 թ.)։ Այդ ժամանակներից սկսած մենագրություններում, կոլեկտիվ աշխատություններում, ուսումնական ձեռնարկներում ու դասագրքերում, բազմաթիվ հոդվածներում, տեսական բանավեճերում արժեքավոր գաղափարներ են արտահայտվել այդ պրոբլեմների ամբողջության մասին։



Դրա հետ միասին մեր գրականության մեջ և մանկավարժական աշխատանքի պրակտիկայում դեռևս շատ թերություններ ու չլուծված հարցեր կան։ Դրանց թվին կարելի կլինի դասել նախ և առաջ քանակական մոտեցումը գիտական կոմունիզմի տեսության օրենքների ու կատեգորիաների նկատմամբ։ Որոշ աշխատություններում թվարկվում են մինչև երկու տասնյակ օրենքներ ու կատեգորիաներ։ Իհարկե, գիտական կոմունիզմի տեսության մեջ դրանք ավելի շատ են, քան մարքսիզմի մյուս բաղկացուցիչ մասերում։ Եվ դա հասկանալի է, քանի որ գիտական կոմունիզմը հասկացվում է բառիս լայն և նեղ իմաստով։ Սակայն տվյալ դեպքում չի կարելի հրապուրվել դրանց քանակով։ Դրանում արտահայտվում է օրենքների ու կատեգորիաների, ինչպես և կատեգորիաների ու հասկացողությունների նույնացումը, դրանց խառնաշփոթումը։

Այնուհետև, մեր աշխատություններում առայժմ բացակայում է գիտական կոմունիզմի ամբողջ սիստեմի ամբողջական լուսաբանումը, դրա օրենքների փոխադարձ կապը, դրա հիմնական օրենքի հիման վրա ստորակարգում կատարելը։

Այդ թերությունները հաղթահարելու և գիտական կոմունիզմի պրոբլեմների հետագա ստեղծագործական մշակումները շարունակելու համար անհրաժեշտ է հետևողականորեն կիրառել մարքսիստական-լենինյան դրույթները՝ օրենքների ու կատեգորիաների և գիտա-տեսական ճանաչողության գործում դրանց դերի վերաբերյալ։

Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է, որ գիտական օրենքներն ու կատեգորիաները օբյեկտիվ աշխարհի օրինաչափությունների տեսական արտացոլումն են ու ամփոփումը։ Ընդ որում, գիտության օրենքները էական երևույթների միջև ներքին փոխադարձ կապի և հարաբերությունների արտացոլումն են։ Կատեգորիաները առավել ընդհանուր հասկացություններ են, որոնք արտացոլում են զարգացող իրականության, նրա իմացության հանգուցային կետերի էական կողմերը։ Ընդհանուրը օրենքների և կատեգորիաների միջև այն է, որ դրանք արտացոլում են զարգացման օբյեկտիվ օրինաչափությունները։ Ուստի, երբ մենք խոսում ենք օրինաչափությունների մասին, ապա նկատի ունենք դրանց արտացոլումը գիտության օրենքների ու կատեգորիաների մեջ։

Տարբերությունն այն է, որ օրենքներն արտահայտում են օբյեկտիվ աշխարհի կողմերի միջև գոյություն ունեցող խոր կապը, իսկ կատեգորիաներն արտացոլում են իրականության առանձին էական կողմերը։

Այս հակիրճ մեթոդոլոգիական դիտողությունները հնարավորություն են ընձեռում բացահայտելու գիտական կոմունիզմի օբյեկտիվ օրենքների սիստեմը։ Գիտական կոմունիզմի լայն ու նեղ ըմբռնմանը համապատասխան նշված սիստեմը կարելի է տրոհել երկու խմբի։

Առաջին խմբին վերաբերում են կապիտալիստական հասարակությունը հեղափոխական ճանապարհով սոցիալիստական հասարակության փոխարկելու և վերջինիս՝ կոմունիզմի վերաճելու ընդհանուր օրենքները։ Դրանք գիտական կոմունիզմի այն օրենքներն են, որոնք մեկ միասնության մեջ ընդգրկում են կապիտալիզմից կոմունիզմին անցնելու պայմաններում հասարակական կյանքի բոլոր հիմնական ոլորտները։ Դրանք տարբերվում են ինչպես բոլոր ֆորմացիաներում գործող ընդհանուր սոցիոլոգիական, այնպես էլ միայն տնտեսական ոլորտում գործող տնտեսական օրենքներից։ Գիտական կոմունիզմի հետազոտության առարկան կազմող ընդհանուր օրենքների թվին դաս-

վում են՝ պրոլետարիատի դասակարգային պայքարը բուրժուազիայի դեմ. հեղափոխական եղանակով կապիտալիստական հասարակության տապալումը և կոմունիստական հասարակարգի ստեղծումը. պայքարը երկու հակադիր սիստեմների միջև. հասարակական կյանքի միջազգայնացում և ազգային պետականության զարգացում. ժողովրդական մասսաների, բանվոր դասակարգի ստեղծագործական ակտիվության և կոմունիստական կուսակցության ղեկավար դերի աճում։ Գիտական կոմունիզմի այդ ընդհանուր օրենքները գործում են հասարակական կյանքի բոլոր ոլորտներում՝ հեղափոխական եղանակով կապիտալիզմը կոմունիզմի փոխարկելու պատմական պրոցեսում։

Ընդհանուր օրենքների այդ առաջին խմբի բնորոշումը տրամաբանորեն բխում է գիտական կոմունիզմի ըմբռնումից, բառիս լայն իմաստով, այսինքն՝ որպես կապիտալիզմի կրախի և կոմունիզմի հաղթանակի բնա-պատմական անխուսափելիության փիլիսոփայական, տնտեսական և սոցիալ-քաղաքական հիմնավորում։ Դա ընդգծել կարևոր է այն պատճառով, որ հաճախ գիտական կոմունիզմը բառիս լայն իմաստով լիովին նույնացվում է փիլիսոփայության և քաղաքատնտեսության հետ։ Բայց միթե կարելի է փիլիսոփայության և քաղաքատնտեսության բոլոր յուրահատուկ հարցերը նույնացնել գիտական կոմունիզմի հետ։ Օրինակ, օրինաչափ չէ նույնիսկ բառիս լայն իմաստով ըմբռնված գիտական կոմունիզմի հետ նույնացնել բնագիտության, տրամաբանության, փիլիսոփայության պատմության փիլիսոփայական հարցերը կամ զուտ տնտեսագիտական շատ հարցեր։ Այդպիսի նույնացումը կնշանակեր անտեսել մարքսիզմի յուրաքանչյուր բաղկացուցիչ մասի առանձնահատկությունը, մի հանգամանք, որն ամեն մի գիտության կարևորագույն պահանջն է։ Մարքսիզմի յուրաքանչյուր բաղկացուցիչ մաս ունի հետազոտման իր յուրահատուկ առարկան և զարգացման օրենքները։

Օրենքների երկրորդ խումբը կապված է բառիս նեղ իմաստով գիտական կոմունիզմի՝ որպես մարքսիզմ-լենինիզմի երրորդ, այսինքն՝ սոցիալ-քաղաքական մասի, ըմբռնման հետ։ Գիտական կոմունիզմը բառիս սեփական իմաստով հետազոտում է կոմունիստական հասարակության նախապատրաստման, ծագման և զարգացման կարևորագույն սոցիալ-քաղաքական օրենքները։ Դրանք այն օրենքներն են, որոնք արտացոլում են ազգերի, դասակարգերի, կուսակցությունների, պետությունների, գաղափարախոսությունների փոխհարաբերությունները, դրանց զարգացման հեռանկարները։ Ընդ որում, խոսքը վերաբերում է ոչ թե բոլոր, այլ արմատական սոցիալ-քաղաքական օրինաչափություններին։ Եվ դա հասկանալի է, որովհետև բացի գիտական կոմունիզմից կան նաև այլ գիտություններ, որոնք ուսումնասիրում են առանձնակի սոցիալ-քաղաքական և գաղափարախոսական օրինաչափությունները (իրավունք, կիրառական սոցիոլոգիա, մանկավարժություն և այլն)։ Այլ խոսքով, սոցիալ-քաղաքական գիտությունների սիստեմում գիտական կոմունիզմը գրավում է գլխավոր, որոշիչ և առաջատար տեղը։ Գիտական կոմունիզմի այդ առաջատար դրությունը ժխտվում է այսպես կոչված պոլիտոլոգիայի կողմից, որը բուրժուական և մանրբուրժուական տեսությունների մի էկլեկտիկական խառնուրդ է։

Իսկ ինչպիսի՞ սոցիալ-քաղաքական օրինաչափություններ են կազմում գիտական կոմունիզմի առանձնահատուկ առարկան։ Դրանց թվին նախ և առաջ դասվում են՝ բանվոր դասակարգի հեգեմոնիան, նրա ղեկավար դերը



դեմոկրատական և սոցիալիստական հեղափոխությունների կենսագործման համար ժողովրդական մասսաների մղած պայքարում. հին, շահագործողական տիպի պետական մեքենայի ջախջախումը և նոր, սոցիալիստական տիպի պետության՝ պրոլետարիատի դիկտատուրայի ստեղծումը, հետզհետե այն վերաճելով համաժողովրդական պետության. բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ամրապնդումը. ազգերի բարգավաճումն ու մերձեցումը, նրանց նյութական ու բարոյական խթանների զուգակցումը. կուլտուրական հեղափոխության իրականացումը և սոցիալիստական ինտելիգենցիայի գոյավորումը. հետևողական գաղափարախոսական պայքարը բուրժուական գաղափարախոսության բոլոր դրսևորումների դեմ։

Սոցիալիզմի հաղթանակով և աստիճանաբար դեպի կոմունիզմ անցումով առաջանում են սոցիալ-քաղաքական նոր օրինաչափություններ, որոնք կազմում են գիտական կոմունիզմի հետազոտության առարկան։ Դրանց թվին պատկանում են՝ սոցիալիստական հասարակական հարաբերությունների վերաճումը կոմունիստական հարաբերությունների, էական տարբերությունների վերացումը քաղաքի և գյուղի, ֆիզիկական և մտավոր աշխատանքի միջև, անցումը դասակարգային շերտավորումից դեպի լիակատար սոցիալական համասեռություն. բազմակողմանիորեն և ներդաշնակ կերպով զարգացած կոմունիստական անհատի դաստիարակությունը։

Կոմունիստական ֆորմացիայի նոր օրինաչափությունները ծագում են սոցիալիզմի համաշխարհային սիստեմի թե՛ կազմավորումով, թե գործելով։ Այդ օրինաչափությունների մշակմամբ զբաղվում են մարքսիզմի բոլոր բաղկացուցիչ մասերը։ Այսպես, փիլիսոփայությունն ուսումնասիրում է ընդհանուր սոցիոլոգիական օրինաչափությունները, նախ և առաջ՝ հակասությունները սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման մեջ և դրանց հաղթահարման ուղիները՝ որպես դրա միասնության ամրապնդման անհրաժեշտ պայման։

Գիտական կոմունիզմը հետազոտում է սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ինչպես ընդհանուր, այնպես էլ սոցիալ-քաղաքական օրինաչափությունները։ Դրանց թվին նախ և առաջ դասվում են՝ սոցիալիստական պետությունների և կոմունիստական կուսակցությունների համախմբվածության ամրապնդումը. ինտերնացիոնալ և ազգային խնդիրների ներդաշնակ զուգակցումը. հասարակական զարգացման մակարդակի աստիճանական հավասարեցումը. հետևողական պայքարը աջ և «ձախ» օպորտունիզմի դեմ։

Այդպիսին է, մեր կարծիքով, գիտական կոմունիզմի օրենքների սիստեմը։ Բայց այդ սիստեմը լրիվ և ներքնապես դիալեկտիկորեն կապված չի լինի առանց բացահայտելու և պարզելու գիտական կոմունիզմի հիմնական օրենքը։

Զարգացման հիմնական օրենքի հետ կապված է յուրաքանչյուր գիտության օրենքների ստորակարգումը։ Դա լիովին վերաբերում է նաև մարքսիզմ-լենինիզմի բոլոր բաղկացուցիչ մասերին։ Ինչպես հայտնի է, դիալեկտիկայի օրենքների կազմում կա կենտրոնական օրենք՝ դիալեկտիկական հակասությունների օրենքը։ Տնտեսական օրենքների կազմում տարբեր պատմական ժամանակաշրջաններում նույնպես հանդես է գալիս հիմնական օրենք. կապիտալիզմի պայմաններում այդպիսին է հավելյալ արժեքի օրենքը, որը կապիտալիզմի քաղաքատնտեսության անկյունաքարն է, իմպերիալիզմի պայմաններում՝ առավելագույն շահույթ քամելու օրենքը, սոցիալիզմի պայմաններում՝ աշխատավորների բարեկեցության անշեղ բարձրացման օրենքը։ Կոմունիզմի

*ժամանակ, ինչպես նախատեսել է Լենինը, այդ օրենքը «հասարակության բոլոր անդամների լիակատար բարեկեցությունը և ազատ համակողմանի զարգացումն» ապահովելն է (Վ. Ի. Լենին, Երկեր, 4-րդ հրատ., հ. 6, էջ 53)։*

*Սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքը որոշում է հինգերորդ հնգամյա պլանի գլխավոր խնդիրը։ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում ասված է. «Հնգամյակի գլխավոր խնդիրն այն է, որ սոցիալիստական արտադրության զարգացման բարձր տեմպերը, նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի և աշխատանքի արտադրողականության արագացված աճի հիման վրա ապահովվի ժողովրդի նյութական ու կուլտուրական կյանքի զգալի վերելքը»։*

*Բնականաբար, հարց է ծագում. ո՞րն է գիտական կոմունիզմի հիմնական օրենքը և ընդհանրապես կա՞ արդյոք այդպիսի օրենք։ Նրանք, ովքեր գիտական կոմունիզմը ինքնուրույն գիտություն չեն համարում, բնականաբար, ընդհանրապես ժխտում են մարքսիզմի երրորդ բաղկացուցիչ մասի օրենքները, առավել ևս՝ չեն ճանաչում հիմնական օրենքի առկայությունը։*

*Իրականում գիտական կոմունիզմը, որպես մարքսիզմի իրավահավասար և հարաբերականորեն ինքնուրույն մաս, ունի օրենքների իր սիստեմը, այդ թվում՝ նաև հիմնական օրենքը, որը որոշում է մյուս բոլոր օրենքների գործողությունը։*

*Այդ հիմնական օրենքի էությունը բացահայտված է մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերում։ Մարքսիզմի մեջ գլխավորն էլ հենց այդ օբյեկտիվ օրենքի արտացոլումն է։ Դրա խոր արտահայտությունը մարքսիզմի դրույթն է բանվոր դասակարգի՝ որպես կապիտալիզմի գերեզմանափորի և կոմունիզմի արարչի, համաշխարհային-պատմական դերի մասին։*

*Հոկտեմբերյան հեղափոխության առաջին իսկ օրերից Լենինն իր հանճարով արտահայտեց նոր աշխարհի երկնած հիմնական օրենքի էությունը, որի արտահայտությունը գիտական կոմունիզմի հիմնական օրենքն է։ Նա խոսում էր ծագող, բայց դեռ չծագած կոմունիզմի և մեռնող, բայց դեռ չմեռած կապիտալիզմի միջև տեղի ունեցող համաշխարհային-պատմական պայքարի մասին։*

*Այժմ, սոցիալիզմի միջազգային ճակատի ընդլայնման ու խորացման և երկու աշխարհի միջև մղվող պայքարի ուժեղացման հիման վրա կարելի է տալ գիտական կոմունիզմի հիմնական օրենքի ավելի լրիվ բնորոշում։ Սահմանումները կարող են տարբեր լինել, բայց անհրաժեշտ է, որ դրանք ընդգծեն երկու հանգամանք, որոնք ներհատուկ են ամեն մի սոցիալական օրենքի՝ ընդհանրապես, գիտական կոմունիզմի հիմնական օրենքին՝ մասնավորապես։ Դա, առաջին, երկու արմատական սոցիալական երևույթների փոխադարձ կապն է, երկրորդ, փոխադարձ հարաբերություններն ու պայքարը նրանց միջև։*

*Նկատի ունենալով այդ մեթոդոլոգիական պահանջը, կարելի է տալ գիտական կոմունիզմի հիմնական օրենքի հետևյալ հակիրճ բնորոշումը։ Կապիտալիստական ֆորմացիայի հեղափոխական վերափոխումը կոմունիստականի՝ բուրժուազիայի դեմ պրոլետարիատի և նրա դաշնակիցների պայքարի, երկու հակադիր համաշխարհային սիստեմների պայքարի հիման վրա, մինչև համաշխարհային կոմունիզմի հաղթանակը, որ բացում է նրա հիրավի առաջընթաց զարգացման դարագլուխը, կազմում է գիտական կոմունիզմի հիմնական օրենքի բովանդակությունը։*

*Այդ օրենքը համաշխարհային ասպարեզում Լենինի առաջադրած «ով ում» պատմական պրոբլեմի օբյեկտիվ հիմքն է։ Գիտական կոմունիզմը սովորեցնում է, որ այդ պրոբլեմը պետք է լուծվի երկու սիստեմների խաղաղ գոյակցության պայմաններում, նրանց միջև մրցության ոլորտում, որ բացառում է ռազմական ընդհարումը, բայց որը ենթադրում է անխուսափելի գաղափարական պայքար։*

*Գիտական կոմունիզմի հիմնական օրենքի լույսի տակ պարզ է դառնում մարդու և մարդկության համապատասխանության մտացածին ընդհանուր օրենքի սնանկությունն այն դարաշրջանում, երբ դասակարգային պայքար է մղվում միջազգային ասպարեզում, «միասնական ինդուստրիալ» և «պոստինդուստրիալ հասարակության» վերաբերյալ օպորտունիստական, ռևիզիոնիստական բուրժուական կոնցեպցիաների հակագիտական լինելը։ Այդ հիմնական օրենքի հիման վրա կարելի է համադրել ցանկացած կոնցեպցիայի ճշտությունն ու սխալականությունը, որովհետև գիտական կոմունիզմի հիմնական օրենքը արտացոլում է մարդկության կողմից կապիտալիզմից կոմունիզմին անցնելու ամբողջ հեղափոխական պրոցեսի ամենաէական կողմերը։ Հիմնական օրենքի առանձնացումը, հետևապես, հնարավորություն է տալիս պահպանել, հետևողականորեն կիրառել և ստեղծագործաբար մշակել աշխարհի կոմունիստական վերափոխության հեղափոխական սկզբունքները։*

*Դրա հետ միասին գիտական կոմունիզմի կարևորագույն օրենքները չեն սպառում կոմունիստական հասարակության ծագման ու զարգացման պրոցեսի օրինաչափությունների ամբողջ գումարը։ Այդ համաշխարհային-պատմական պրոցեսի լրիվ և բազմակողմանի արտացոլման համար գոյություն ունի գիտական կոմունիզմի հիմնական կատեգորիաների սիստեմ ևս։ Կատեգորիաների այդ սիստեմը լրացվում և հարստացվում է նոր հասարակության ծագման ու զարգացման պրոցեսում։*

(Շարունակությունը՝ հաջորդ համարում)



# ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՈՒԺԵՐԻ ՎԵՐԸՆԹԱՑԸ

Ս. Կ. ՊԱՊՅԱՆ

---

Համաշխարհային հասարակայնության ուշադրության կենտրոնում: Արդիականության քաղաքական ամենաազդեցիկ ուժը: Սոցիալիզմի պատմական հաղթանակները: ԱՄՆ-ը՝ միջազգային ժանդարմ: Կապիտալի դեմ մղվող դասակարգային սուր մարտերում: Արևելքի ժողովուրդների հավատարիմ բարեկամը: Միասնությունը հակաիմպերիալիստական պայքարի գլխավոր գործոնն է:

Լենինյան կուսակցության XXIV համագումարը կարևոր իրադարձություն է ո՛չ միայն մեր երկրի ժողովուրդների կյանքում, այլև ողջ առաջադեմ մարդկության, նրա ավանգարդ միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման, հեղափոխական բոլոր ուժերի համար։ ՍՄԿԿ XXIV համագումարի աշխատանքներին մասնակցեց աշխարհի 90 երկրների կոմունիստական, ազգային դեմոկրատական և ձախ սոցիալիստական կուսակցությունների 102 պատվիրակություն։ Սովետական կոմունիստների համաժողովին եղբայրական կուսակցությունների պատվիրակությունների մասնակցությունը վկայում է ՍՄԿԿ գործունեության միջազգային նշանակությունը։

«Համագումարը ՍՄԿԿ Կենտկոմին հանձնարարում է,— նշված է կուսակցության XXIV համագումարի բանաձևում,— այսուհետև ևս անշեղորեն պայքարել կոմունիստական շարժման համախմբվածության, ամբողջ հակաիմպերիալիստական պայքարում նրա դերի բարձրացման համար, հասնել կոմունիստական շարժման քաղաքական ավելի ու ավելի ամուր համախմբման և նրա գաղափարական մարքս-լենինյան միասնության»։

Մեր օրերում իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում միավորվում են արդիականության երեք հեղափոխական մեծ ուժ՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, միջազգային բանվոր դասակարգը և ազգային-ազատագրական շարժումը։ Հեղափոխական և առաջադիմական մյուս ուժերի ծավալումն ընթանում է իմպերիալիզմի, վերջինիս ագրեսիվ քաղաքականության ակտիվացման պայմաններում։ Ստեղծված իրադրությունը պահանջում է կոմունիստների, բոլոր հակաիմպերիալիստական ուժերի գործողությունների միասնություն,



հետևողական պայքար միջազգային իմպերիալիզմի ոտնձգությունների դեմ։

Չնայած դասակարգային թշնամիների սիստեմատիկ հետապնդումներին և գաղափարական-քաղաքական դավերին, մարքս-լենինյան կուսակցությունների շարքերը շարունակում են մշտապես աճել։ Ներկայումս աշխարհում կան 89 կոմունիստական ու բանվորական կուսակցություն, որոնց շարքերում են ավելի քան 50 միլիոն կոմունիստ։ 1960 թվականից հետո աշխարհի կոմունիստների թիվը մեծացավ մոտ 15 միլիոնով։ Սակայն կոմունիստական շարժման ուժն ու ազդեցությունը չեն չափվում միայն նրա մասնակիցների թվով։ Այստեղ էական նշանակություն ունի կոմունիստական ու բանվորական կուսակցությունների քաղաքական և գաղափարական ներգործությունը՝ աշխատավորական լայն զանգվածների վրա։

Կառավարող մարքսիստական-լենինյան կուսակցությունների հեղափոխական գործունեության հիմնական բովանդակությունը սոցիալիզմի և կոմունիզմի կառուցումն է։ Կոմունիստական շարժման այդ ջոկատի հաջողությունների չափանիշը, առաջին հերթին, սոցիալիստական երկրների ժողովուրդների ստեղծագործ աշխատանքի արդյունքներն են։

ՍՄԿԿ ստեղծագործաբար է վճռում կոմունիստական շինարարության հասունացած հարցերը։ Դրա վառ օրինակն է կուսակցության XXIV համագումարը, որտեղ մեծ ուժով դրսևորվեց ՍՄԿԿ քաղաքականության գիտական հիմնավորվածությունը։ Արգասաբեր են նաև սոցիալիստական մյուս երկրների նվաճումները։ Բավական է ասել, որ վերջին հինգ տարիների ընթացքում համաշխարհային սոցիալիստական սիստեմի երկրներում արդյունաբերական արտադրանքի արտադրությունն աճեց 43 տոկոսով։ «Համաշխարհային սոցիալիստական սիստեմի կազմվելն ու ամրապնդումը,— նշում է Լ. Ի. Բրեժնևը,— հանդիսացան պատմական առաջադիմության հզոր արագացուցիչ, որի սկիզբը դրեց մեծ Հոկտեմբերը։ Նոր հեռանկարներ բացվեցին ամբողջ աշխարհում սոցիալիզմի հաղթանակի համար»։

Կյանքը հաստատում է կոմունիստական ու բանվորական կուսակցությունների 1969 թվականի միջազգային խորհրդակցության այն հետևությունը, որ «սոցիալիզմի համաշխարհային սիստեմը հակաիմպերիալիստական պայքարի վճռական ուժն է»։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը հաղթահարելով բազմաթիվ դժվարություններ, շարունակում է իր արագ զարգացումը։ Նա կշարունակի զարգանալ նաև այն ժամանակ, երբ այս կամ այն երկիրը որոշ ժամանակամիջոցում ինքնամեկուսանա, հրաժարվի սոցիալիզմի մյուս երկրների հետ համագործակցելուց։ Սրա անխուսափելի հետևանքները կլինեն լրացուցիչ դժվարությունները, հասարակական առաջընթացի ոչնչով չարդարացվող դանդաղումը, առանձին սոցիալիստական երկրների զարգացման տեմպերի թուլացումը։ Նման կուրսը միայն միջազգային ռեակցիային է ձեռնտու։

Չին ղեկավարները, ինչպես հայտնի է, միջազգային կյանքի և համաշխարհային կոմունիստական շարժման հիմնական հարցերում հանդես եկան իրենց հատուկ, լենինիզմի հետ անհամատեղելի գաղափարա-քաղաքական պլատֆորմով, պահանջելով հրաժարվել ՍՄԿԿ XX պատմական համագումարի լենինյան գծից։ Նրանք թշնամական պրոպագանդա ծավալեցին մեր կուսակցության ու երկրի դեմ։ Միջազգային ասպարեզում Պեկինի պարագլուխները մի շարք երկրներում անցան, այսպես կոչված՝ «մարքս-լենինյան կուսակցու-

թյունների» մակնիշով՝ պառակտչական խմբավորումների ստեղծմանը, բացահայտորեն ձգտելով միավորել դրանք և հակադրել միջազգային կոմունիստական շարժմանը: Ուստի, հարկ եղավ համախմբել եղբայրական կուսակցությունների ուժերը պառակտիչների դեմ մղվող պայքարում, ապահովել հեղափոխական շարքերի միասնությունն ու համախմբվածությունը:

Ի դեմս սոցիալիստական երկրների համագործակցության, աշխարհի ժո-
ղովուրդներն իրավացիորեն տեսնում են իրենց դարավոր սպասումների, պատ-
մական իդեալի մարմնացումը, իրենց ապագան: Համաշխարհային հեղափո-
խական պրոցեսի վրա սոցիալիզմի սիստեմն ազդում է շատ ուղղություննե-
րով, ուր առաջնակարգ նշանակություն ունի տնտեսական գործոնը: Վերջին 15
տարիների ընթացքում սոցիալիզմի երկրներում արդյունաբերական արտա-
դրանքի տարեկան միջին տեմպերը կազմել են 11,7 տոկոս, կապիտալիստա-
կան երկրների 5,5 տոկոսի համեմատությամբ: Դրա շնորհիվ սոցիալիստական
երկրների բաժինը համաշխարհային արդյունաբերական արտադրանքում 1950
թվականի 20 տոկոսից ներկայումս կազմում է 40 տոկոս: Առանձնապես արագ
տեմպերով է զարգանում տնտեսական փոխօգնության խորհրդի երկրների էկո-
նոմիկան, որն անցած հնգամյակում աճեց 49 տոկոսով:

«Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը,— ասված է Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— հսկայական ավանդ է մուծում բոլոր ժողովուրդների համար կենսականորեն կարևոր այնպիսի խնդրի լուծման գործում, ինչպիսին է նոր համաշխարհային պատերազմի կանխումը: Կարելի է լիակատար վստահությամբ հայտարարել, որ իմպերիալիստական ագրեսորների բազում պլաններ վիժեցվել են այն բանի շնորհիվ, որ գոյություն ունի և ակտիվորեն գործում է համաշխարհային սոցիալիստական սիստեմը»: Ժողովուրդները բարձր են գնահատում խաղաղության բարիքները, որոնք կոմունիստների իմաստուն քաղաքականության արգասիքն են:

Սոցիալիստական երկրների գոյությունը և հաջողությունները լուրջ ազդեցություն են գործում քաղաքական ուժերի հարաբերակցության վրա նաև համաշխարհային կապիտալիզմի ներսում, ստիպում են բուրժուական երկրների կառավարող շրջաններին ավելի հաճախ զիջումներ անել աշխատավորությանը: Ոչ-սոցիալիստական երկրներում ներկայումս կա ավելի քան 6 միլիոն կոմունիստ: Այստեղ գործում է 75 կոմունիստական կուսակցություն, որի մոտ կեսը՝ 32-ը, գործում է ընդհատակում: Հետևյալ տվյալներից պարզ երևում է, թե վերջին 30 տարվա ընթացքում ինչպես է աճել կոմունիստական շարժումը և կոմունիստների թիվը՝ աշխարհի տարբեր մայրցամաքների ոչ-սոցիալիստական երկրներում:

| | 1939 թ. | 1957 թ. | 1961 թ. | 1970 թ. |
|---|---|---|---|---|
| Եվրոպա | 500 հազար | 2,3 միլիոն | 2,4 միլիոն | 2,5 միլիոն |
| Ասիա | 20 » | 1,7 » | 2,3 » | 4 » |
| Ամերիկա | 180 » | 215 հազար | 250 հազար | 343 հազար |
| Աֆրիկա | 5 » | 20 » | 40 » | 60 » |
| Ավստրալիա և Օվկիանիա | 5 » | 6 » | 7 » | 11 » |

Ջնայած բուրժուական գաղափարախոսների՝ կոմունիստներին զրպարտելու, աշխատավոր մասսաներից նրանց մեկուսացնելու ճիգերին, ռեակցիային



չի հաջողվում տապալել մարքսիստական-լենինյան կուսակցությունների հեղինակությունը: Մի շարք զարգացած կապիտալիստական երկրներում, մասնավորապես, Ֆրանսիայում, Իտալիայում, Ֆինլանդիայում կոմունիստական կուսակցությունները դարձել են մասսայական և ազգային մասշտաբով մեծ ազդեցություն են գործում իրենց երկրների հասարակական-քաղաքական կյանքի վրա: Նրանք ո՛չ միայն իրենց հետևից են տանում միլիոնավոր բանվորների, այլև զգալի ազդեցություն ունեն աշխատավոր ժողովրդի բոլոր խավերի, մտավորականության առաջավոր մասի շրջանում: Աշխատավոր մասսաների վրա իրենց ազդեցությունն ուժեղացրել են նաև Ավստրիայի, Հունաստանի, Իսպանիայի, Հնդկաստանի, Ճապոնիայի, Վենեսուելայի, Բոլիվիայի, Արգենտինայի, Ուրուգվայի կոմունիստական կուսակցությունները: Մի շարք երկրներում (Ֆինլանդիա, Սիրիա, Չիլի) կոմունիստները մտնում են կոալիցիոն, դեմոկրատական կառավարությունների կազմի մեջ: Այդ տեսակետից, մանավանդ, հիանալի հաջողությունների հասավ Չիլիի կոմկուսը, որը, ինչպես հայտարարեց նրա կոմկուսի գլխավոր քարտուղար ընկեր Լուիս Կորվալանը ՍՄԿԿ XXIV համագումարում, երկրի մյուս ձախ ուժերի հետ միասին փաստորեն դարձել է կառավարող կուսակցություն:

Մասսաների հետ հետզհետե ամրապնդվող կապերի, կոմունիստների քաղաքական ուժի արտահայտություն է նրանց հաջողությունը ընտրությունների ժամանակ: Օրինակ, Իտալիայում, Ֆրանսիայում, Ֆինլանդիայում, Չիլիում կոմունիստների օգտին քվեարկում է յուրաքանչյուր չորրորդ-հինգերորդ ընտրողը: Ֆրանսիայի կոմունիստական կուսակցությունը պառլամենտում ունի 55 ներկայացուցիչ: Ֆրանսիայում մոտ 1100 կոմունիստ քաղաքներում և գյուղերում գլխավորում են մունիցիպալիտետները, իսկ 16 հազարը՝ խորհրդականներ են: Լուրջ հաջողությունների է հասել Իտալիայի կոմունիստական կուսակցությունը: 1968 թվականի ընտրություններին նա ստացավ մոտ 8 և կես միլիոն ձայն (ընտրողների համարյա 27 տոկոսը), մոտ մեկ միլիոնով ավելի, քան նախորդ ընտրություններին: Վերջերս իտալական կոմունիստները նոր, խոշոր հաջողություն ձեռք բերին մունիցիպալիտետի մասնակի ընտրություններում: Ֆինլանդիայի պառլամենտի ամենախոշոր ֆրակցիան ժողովրդի դեմոկրատական միությունն է (ՖԺԴՄ), որի ղեկավար ուժը կոմկուսն է: Բելգիայի, Իսլանդիայի, Լյուքսեմբուրգի, Շվեյցարիայի, Իսրայելի, Հնդկաստանի, Ցեյլոնի, Ճապոնիայի, Պանամայի, Ուրուգվայի, Վենեսուելայի և այլ կոմունիստական կուսակցություններ ներկայացված են իրենց երկրների պառլամենտներում: 1968—1970 թվականներին տեղի ունեցած պառլամենտական ընտրություններին ոչ-սոցիալիստական երկրների կոմունիստներն ընդհանուր առմամբ ստացան ավելի քան 50 միլիոն ձայն:

Մի շարք երկրներում կոմունիստական կուսակցությունները դեռևս մասսայական չեն: Սակայն նույնիսկ այդտեղ նրանց ազդեցությունը շատ հարցերում մեծ է: Մեծ Բրիտանիայի, Բելգիայի, Ավստրիայի, Դանիայի, Հնդկաստանի, Բիրմայի, Ճապոնիայի, Սուդանի, Մարոկոյի և մյուս երկրների կոմունիստները ամրապնդում են իրենց կապերը մասսաների հետ, հանդես են գալիս իբրև աշխատավորության շահերի ամենահետևողական պաշտպաններ, գտնում դասակարգային պայքարի նոր ուղիներ ու ձևեր, որի գլխավոր պայմանը գործողությունների միասնությունն է:

Հասարակության կյանքում բանվոր դասակարգի դերի աճի կարևորագույն

ցուցանիշը գործադուլային շարժման ուժեղացումն է, որը Լենինը կապիտալիստական հարստահարման դեմ «կռվի դպրոց է» անվանել (տե՛ս Երկեր, հ. 4, էջ 405)։ Եթե, ըստ Աշխատանքի միջազգային կազմակերպության տվյալների, միջպատերազմական շրջանում, 1919—1939 թթ., զարգացած կապիտալիստական երկրներում տեղի է ունեցել 165 հազար գործադուլ, որին մասնակցել է 74 միլիոն գործադուլավոր, ապա 1948—1968 թվականներին գործադուլների թիվը հասել է ավելի քան 320 հազարի, իսկ գործադուլավորներինը՝ անցել է 260 միլիոնից։ Հետպատերազմյան շրջանում գործադուլավորների միջին տարեկան թիվն աճել է 3,5 անգամ։

Ինչպես նշվեց կուսակցության XXIV համագումարում, այնպիսի երկրներում, ինչպիսիք են՝ Ֆրանսիան և Իտալիան, ուր ավելի են զարգացած դասակարգային պայքարի ավանդույթները և ակտիվ գործում են կոմունիստական կուսակցությունները, աշխատավորությունը, բանվոր դասակարգի գլխավորությամբ, ճնշում գործադրեց կապիտալիստների ո՛չ միայն առանձին խմբերի, այլև պետական մոնոպոլիստական գերիշխանության ողջ սիստեմի վրա։ Անգլիայում գործադուլային պայքարը լայն ծավալ է ընդունել և իր նշանակությամբ համազոր է 1926 թվականի համընդհանուր գործադուլին։ ԱՄՆ-ում հուժկու թափ են ստացել բանվոր դասակարգի ելույթները մոնոպոլիստների դեմ, արտակարգ սրվել է նեգր ժողովրդի պայքարը՝ հանուն իրավահավասարության, երիտասարդության շրջանում բացահայտ են դարձել հակապատերազմական տրամադրությունները։ Ուժեղանում է մասսայական բանվորական շարժումը ԳՖՀ-ում։ Բազում տասնամյակների ընթացքում առաջին անգամ դասակարգային բախումներ են տեղի ունենում Սկանդինավյան երկրներում, Հոլանդիայում։ Շարունակում է սրվել սոցիալ-քաղաքական ճգնաժամը Իսպանիայում, Պորտուգալիայում, Հունաստանում։ Ճապոնիայի աշխատավորներն անցյալ տարի աշխարհում առաջին անգամ կազմակերպեցին բողոքի մասսայական գործադուլ՝ ընդդեմ Վիետնամում ամերիկյան ագրեսիայի։ Այդ գործադուլին, որը տեղի ունեցավ հոկտեմբերի 21-ին, մասնակցեց 1.660 հազար մարդ։ Պաշտոնական տվյալներով 1969 թվականին ԱՄՆ-ում տեղի են ունեցել ավելի շատ գործադուլներ, քան 1955 թվականից հետո։ Հունաստանում և Արևմտյան Գերմանիայում գործադուլային պայքարին մասնակցում են միլիոնավոր աշխատավորներ։

Կոմունիստների պայքարը կապիտալի աշխարհում հանդիպում է դասակարգային հակառակորդի ուժեղ դիմադրության։ Արդեն շատ տարիներ անլեգալ են գործում Իսպանիայի, Պորտուգալիայի, Հունաստանի, Տաիլանդի, Ֆիլիպինների, Ինդոնեզիայի, Գվատեմալայի, Հարավ-Աֆրիկյան Հանրապետության և մի շարք այլ երկրների կոմունիստական կուսակցությունները։ Դժվարին պայմաններում է մարտնչում ԱՄՆ-ի կոմունիստական կուսակցությունը։ «Մենք երբեք չենք մոռանա այն մեծագույն զոհաբերությունները, որ կատարվել են պայքարում,— նշեց Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXIV համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ։— Կոմունիստական շարժման հերոսների անունները, արիության և բանվոր դասակարգի գործին հավատարմության օրինակները միշտ սրբություն կմնան բոլոր իսկական հեղափոխականների համար»։

Իմպերիալիզմի դեմ մղվող լարված պայքարի պայմաններում չի կարելի աչքաթող անել, այսպես կոչված՝ ռազմա-արդյունաբերական կոմպլեքսի՝ խո-



զորագույն մոնոպոլիաների և պետական ապարատի ու զինվորականության դաշինքի ազդեցության մեծացումը։ Վերջինս մեծ ազդեցություն ունի ԱՄՆ-ի, Արևմտյան Գերմանիայի, Անգլիայի, Ճապոնիայի և իմպերիալիստական այլ պետությունների պաշտոնական քաղաքականության վրա։ Այնտեղ, ուր շահագործողներն ի վիճակի չեն իրենց համար անհրաժեշտ «կարգ» ապահովելու բուրժուական դեմոկրատիայի շրջանակներում, պետական հեղաշրջումների միջոցով հաստատվում են ռեակցիոն վարչակարգեր։ Դեմոկրատական ինստիտուտները ոտնահարված են Իսպանիայում, Պորտուգալիայում, Հունաստանում, Տաիլանդում, Հարավ-Աֆրիկյան Հանրապետությունում, Հարավային Ռոդեզիայում, Պարագվայում և այլ երկրներում։

Վերջին տարիների միջազգային իրադարձությունների ընթացքը վկայում է, որ ամերիկյան իմպերիալիզմը համաշխարհային ռեակցիայի գլխավոր հենարանն է։ Քննադատելով ամերիկյան իմպերիալիզմի ռեակցիոն դերը, Վ. Ի. Լենինը ժամանակին ընդգծել է, որ ԱՄՆ-ի իմպերիալիստները միշտ հանդես են եկել որպես ազգային ազատագրական շարժումների դահիճներ ու խեղդողներ, միջազգային ժանդարմ։

Կապիտալիստական բոլոր երկրներից ամենից շատ ԱՄՆ-ն են մեծ հարստություններ կորզում Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրներից, կասեցնելով նրանց զարգացումը։ Ուժեղանում է ամերիկյան կապիտալի ներթափանցումը Աֆրիկա։ Ամերիկյան «օգնություն» ստացող երկիրը հարկադրված է մտնել ագրեսիվ բլոկների մեջ, իր տերիտորիան տրամադրել ռազմական բազաների ստեղծմանը։ Տնտեսական տեսակետից մոնոպոլիաների համար շատ շահավետ է նման «օգնությունը», քանի որ նրանց նպատակների իրականացման համար հատկացված գումարների մոտ 85—90 տոկոսը ծախսվում է մոնոպոլիաներին տրված պատվերների վճարման վրա։ Ինչպես ցույց են տալիս փաստերը, ագրեսիվ բլոկների մեջ ներքաշված թույլ զարգացած երկրների մասնակցությունը սպառազինությունների մրցավազքին, նրանց դրել է խիստ ծանր տնտեսական դրության մեջ։ Եվ ԱՄՆ-ի օգնությունը ամենևին նրանց չի փրկում տնտեսական հարաճուն դժվարություններից։ Այնպիսի երկրներում, ինչպիսիք են՝ Թուրքիան, Պակիստանը, Տաիլանդը, Ֆիլիպինները, պետական բյուջեի մեծ մասը ծախսվում է ռազմական կարիքների վրա։ Օրինակ, Տաիլանդում ռազմական նպատակներով ծախսվում է պետական բյուջեի բոլոր միջոցների 83 տոկոսը։

Իմպերիալիզմն է պատճառը, որ բազմամիլիոն մարդկանց աշխատանքը, տաղանդը ի սպաս են դրվում ո՛չ թե հասարակության առաջադիմության, այլ ընդդեմ կյանքի, մարդկության։ Վերջին հինգ տարիների ընթացքում (1966—1970 թթ.) միայն ԱՄՆ-ի ռազմական ծախսերը կազմեցին դրեթե 400 մլրդ դոլար, այսինքն՝ 30 տոկոսով ավելի, քան երկրորդ համաշխարհային պատերազմի բոլոր տարիներին։

Արկածախնդրական քաղաքականությունը, մասսայական բնաջնջման զենքի պաշարների կուտակման փաստի զուգորդմամբ, արդի իմպերիալիզմը դարձնում է մշտական սպառնալիք համայն աշխարհի խաղաղության համար։ Այդ պատճառով մեծագույն սխալ կլիներ թերագնահատել իմպերիալիզմի, առաջին հերթին, համաշխարհային ռեակցիայի գլխավոր ուժի՝ ԱՄՆ-ի իմպերիալիզմի ստեղծած ռազմական վտանգը։ Կոմունիստները հեղափոխական մյուս ուժերի հետ միասին ձգտում են հասնել այն բանին, որ միլիոնավոր

մարդիկ հասկանան, թե ժողովուրդներին ինչ են բերում համաշխարհային պա- տերազմի սանձազերծման իմպերիալիստական քաղաքականությունը, ագրե- սիվ բլոկների գոյությունը, ստեղծված պետական սահմանները վերանայելու կուրսը, սոցիալիզմի երկրների և ազգային երիտասարդ պետությունների առա- ջադիմական վարչակարգերի դեմ ծավալված քայքայիչ գործունեությունը։

Պատերազմները, ագրեսիայի և բռնության ակտերը, ժողովուրդների ազա- տության նկատմամբ ոտնձգությունները, այս ամենը բխում են իմպերիալիզ- մի քաղաքականությունից։ Այդ իմպերիալիզմն է և, առաջին հերթին, ամե- րիկյան իմպերիալիզմը, որն արագացնում է սպառազինությունների մրցա- վազքը, ուժեղացնում միջազգային լարվածությունը, երկրագնդի տարբեր անկյուններում կոնֆլիկտներ ու տեղական պատերազմներ հրահրում։ Ավելի քան վեց տարվա ընթացքում ամերիկյան իմպերիալիզմը Վիետնամում ագրե- սիվ պատերազմ է մղում, կիրառելով ամենաբարբարոսական միջոցներ։ Արա- բական ժողովուրդների դեմ իմպերիալիստական ագրեսիայի հետևանքով Մեր- ձավոր Արևելքում և Միջերկրական ծովի շրջանում պահպանվում է լարվածու- թյան վտանգավոր օջախը, որն ամեն րոպե կարող է համընդհանուր պատե- րազմի հրդեհ առաջացնել։ Եվրոպայի կենտրոնում ուժեղանում է արևմտագեր- մանական ռազմատենչ իմպերիալիզմը, գլուխ է բարձրացնում նեոնացիզմը։

«ՍՄԿԿ-ն անշեղորեն հավատարիմ է ազգային և սոցիալական ազատա- գրության համար պայքարող ժողովուրդների հետ համերաշխության լենինյան սկզբունքին,— ընդգծվում է ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկույ- ցի մասին ՍՄԿԿ XXIV համագումարի բանաձևում։— Ինչպես որ մեր կուսակցության ևս մենք, մեր լիակատար աջակցությունը կարող են ակնկալել մնացած գաղու- թային վարչակարգերի դեմ պայքարող մարտիկները։ Համագումարը առանձ- նահատուկ նշանակություն է տալիս սոցիալիստական կողմնորոշում ունեցող երկրների հետ համագործակցության ընդլայնմանը»։

Ինտերնացիոնալ պարտքին հավատարիմ, Սովետական Միությունը մըշ- տապես վճռականորեն աջակցել է ազատագրական պայքարին։ ՍՍՀՄ-ը և սո- ցիալիստական մյուս երկրներն օգնում են Արևելքի երիտասարդ պետություն- ներին դուրս գալու քաղաքական մեկուսացումից, նրանց բարենպաստ հնա- րավորություն ընձեռում իրենց անկախությունն ամրապնդելու համար։

Ազատագրված երկրներին սոցիալիստական պետությունների ցույց տված տնտեսական և գիտատեխնիկական օգնությունը մեծ ավանդ է նրանց ազգային էկոնոմիկայի զարգացման գործում։ Ներկայումս Սովետական Միության աջակ- ցությամբ Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրներում (չհաշ- ված սոցիալիստական) կառուցված է և կառուցվում է 480 արդյունաբերական ձեռնարկություն և այլ օբյեկտներ, որոնք առաջնահերթ նշանակություն ունեն այդ երկրների ինքնուրույն տնտեսական զարգացման համար։ Դրանց թվում են սև և գունավոր մետալուրգիայի 34, ավելի քան 30 մեքենաշինական և մե- տաղամշակման ձեռնարկություն, 20-ից ավելի քիմիական ու նավթամշակման գործարան, շինանյութերի արտադրության 20 ձեռնարկություն, 20 էլեկտրա- կայան և այլն։ Գործող ձեռնարկություններից են Բհիլայի մետալուրգիական կոմբինատը և Անկլեշվարի նավթահանքը՝ Հնդկաստանում, ավտոնորոգման գործարանը, գետային նավահանգիստը և հացակոմբինատը՝ Աֆղանստանում, ծովային նավահանգիստը՝ Եմենում, տեխնոլոգիական ինստիտուտը և հիվան- դանոցը՝ Բիրմայում, ռադիոկայանը՝ Գվինեայում և շատ այլ օբյեկտներ։



Բարեկամական համագործակցության կենդանի և բեղմնավոր օրինակ է Սովետական Միության տնտեսական և տեխնիկական համագործակցությունը Արաբական Միացյալ Հանրապետության հետ։

Սովետական Միությունը երիտասարդ սուվերեն պետություններին բազ- մակողմանի օգնություն է ցույց տալիս ազգային կադրերի պատրաստման գործում։ ՍՍՀՄ աջակցությամբ ստեղծվող կառույցները վերածվում են որակ- յալ բանվորների նախապատրաստման իսկական դարբնոցների։

Իրական ավանդ են ներդնում հակաիմպերիալիստական պայքարում ոչ- կապիտալիստական զարգացման ուղին բռնած պետությունները։ Իհարկե, այդպիսի պետությունների թիվը դեռևս քիչ է՝ Եգիպտոս, Սուդան, Լիբիա, Ալ- ժիր, Գվինեա, Մալի, Բիրմա, Կոնգո (Բրազավիլ), Սիրիա, Զիլի։ Մի կողմ թողնելով պահպանվող ներքին լուրջ պրոբլեմները, չի կարելի մոռանալ, որ Աֆրիկայի ու Ասիայի առաջադիմական պետությունների դեմ է ուղղված իմ- պերիալիզմի քայքայիչ գործունեությունն այդ մայր ցամաքներում։ Սակայն ոբևէ դժվարություն չի կարող նսեմացնել գլխավոր փաստը։ Եվ որքան հաջո- ղությամբ զարգանան այդ երկրների էկոնոմիկան, կուլտուրան, որքան լիա- կատար բացահայտվեն ոչ-կապիտալիստական ուղու առավելությունները, այնքան համոզիչ կլինի դրանց օրինակը։

Իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում պետք է միավորվեն սոցիալիս- տական երկրների ժողովուրդները, կապիտալիզմի երկրների պրոլետարները, ազգային-ազատագրական շարժման ուժերը։

ՍՄԿԿ XXIV համագումարն ավելի բարձրացրեց պրոլետարական ինտեր- նացիոնալիզմի դրոշը։ Եղբայրական կուսակցությունների ներկայացուցիչները միշտ բարձր են գնահատել ՍՄԿԿ պայքարը՝ հանուն միջազգային կոմունիս- տական շարժման միասնության ամրապնդման։ Համագումարում գոհունակու- թյամբ ընդունվեց Հունգարիայի սոցիալիստական բանվորական կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար Յանոշ Կադարի հայտարարությունը, որ «Ին- տերնացիոնալիզմի փորձաքարը միշտ եղել և այժմ շարունակում է մնալ Սո- վետական Միության նկատմամբ սկզբունքային, ընկերական վերաբերմունքը։ Հակասովետական կոմունիզմ չի եղել, չկա և երբեք չի լինի» և Վիետնամի աշ- խատավորների կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար Լե Զուանի հայտարարությունը «մեզ՝ վիետնամական կոմունիստներիս համար երկու հայրենիք գոյություն ունի, մեկը՝ Վիետնամը, մյուսը՝ հաղթանակած սոցիա- լիզմի առաջին երկիրը՝ Սովետական Միությունը»։

Կոմունիստական և բանվորական կուսակցություններն իրենց գործու- նեության մեջ ոչ միայն հաշվի են առնում յուրաքանչյուր երկրի հեղափոխա- կան շարժման կոնկրետ առանձնահատկությունները, այլև ղեկավարվում են հեղափոխական պայքարի ընդհանուր օրինաչափություններով։ Ընդհանուր պայքարում նման համատեղ գործողությունները հատկապես անհրաժեշտ են ներկայումս, երբ ամերիկյան իմպերիալիզմը վարում է արկածախնդրական քաղաքականություն։

ՍՄԿԿ XXIV համագումարը նշանավորեց մարքս-լենինյան ուսմունքի զար- գացման նոր փուլ, բարձր պահեց հողագնդի հեղափոխական ուժերի համա- խմբման դրոշը։



# ՄԵՐ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉՆ ՈՒ ՈԳԵՇՆՉՈՂԸ


Վ. Ա. ՄՈՒՐԱԴՅԱՆ

*Պատմական գիտությունների դոկտոր*


Երեսուն տարի է անցել այն օրից, երբ սկսվեց սովետական ժողովրդի Հայրենական մեծ պատերազմը գերմանա-ֆաշիստական հրոսակների դեմ: Ավելի քան քառորդ դար է անցել այն պահից, երբ դադարեցին երկրորդ համաշխարհային պատերազմի համազարկերը: Քիչ չեն հրապարակվել անցած պատերազմի մասնակից պետությունների գաղտնի փաստաթղթերից: Համաշխարհային հասարակայնությանը հայտնի է դարձել ֆաշիստական Գերմանիայի ստրատեգիան ՍՍՀ Միության դեմ մղված պատերազմում. հրապարակվել են հիտլերյան հրամանատարության փաստաթղթերն ու նյութերը: Այժմ արդեն կան բոլոր հնարավորությունները՝ միանգամայն օբյեկտիվ, գիտականորեն բացահայտելու երկրորդ համաշխարհային պատերազմի ծագման պատճառները, հակահիտլերյան կոալիցիայի պետություններից յուրաքանչյուրի դերը ֆաշիստական Գերմանիայի և իմպերիալիստական Ճապոնիայի ջախջախման գործում:

Սակայն, դժբախտաբար, Արևմուտքում դեռ քիչ չեն այնպիսի պատմաբանները, որոնք ծառայում են ոչ թե ճշմարտությանը, այլ իմպերիալիստներին և, ելնելով նրանց շահերից, կեղծում են պատմությունը: ԱՄՆ-ում, Անգլիայում, ԳՖՀ-ում, Ֆրանսիայում հրատարակվում են երկրորդ համաշխարհային պատերազմի պատմության վերաբերյալ բազմաթիվ գրքեր: Շատ հեղինակներ, ամեն կերպ աղավաղելով այդ պատերազմի պատմությունը, ձգտում են մեղադրել Սովետական Միությանը, նվաստացնել նրա վճռական դերը ֆաշիստական Գերմանիայի դեմ ձեռք բերված հաղթանակում:

ՍՍՀ Միության և սոցիալիզմի մյուս երկրների դեմ իմպերիալիստական ռեակցիայի գաղափարական դիվերսիայում հատուկ տեղ են տրվում Սովետական Միության կոմունիստական կուսակցության վրա կատարվող հարձակումներին, պատերազմի ժամանակ վարած նրա քաղաքականության խեղաթյուրմանը: Սակայն ողջ աշխարհը գիտե, որ սովետական ժողովրդի հաղթանակն անցած պատերազմում ձեռք է բերվել Լենինի մեծ կուսակցության ղեկավարությամբ, և բուրժուական կեղծարարների ջանքերն ի վիճակի չեն նսեմացնելու կոմունիստական կուսակցության տիտանական գործունեությունը ֆաշիստական Գերմանիայի և իմպերիալիստական Ճապոնիայի նկատմամբ սովետական ժողովրդի հաղթանակն ապահովելու գործում:

Սովետական Միության կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի ձեռք բերած հաղթանակը թե՛ իր նշանակությամբ, թե՛ իր հետևանքներով խոշոր երևույթ է համաշխարհային պատմության մեջ, երևույթ, որը որոշել է սերունդների ճակատագիրը: Եվ այդ բանը երախտագիտությամբ ընդունում է առաջադեմ մարդկությունը:

## I

Վ. Ի. Լենինը բազմիցս ընդգծել է, որ երկրի ռազմական հզորության ամրապնդումը պետք է գտնվի կուսակցության, ամբողջ սովետական ժողովրդի ուշադրության կենտրոնում: «Հենց այն պատճառով, որ մենք կողմնակից ենք հայրենիքի պաշտպանությանը, մենք պահանջում ենք *լուրջ* վերաբերվել երկրի պաշտպանունակությանն ու մարտական պատրաստությանը» (Երկեր, հ. 27, էջ 57): Ջեռնամուխ լինելով խաղաղ շինարարությանը՝ Լենինն զգուշացնում էր. «Զգաստ եղեք, աչքի լույսի պես պահպանեցեք մեր երկրի և մեր կարմիր բանակի մարտունակությունը...» (ПСС, т. 44, стр. 300):

Անշեղորեն ղեկավարվելով սոցիալիստական հայրենիքի պաշտպանության վերաբերյալ մեծ Լենինի ցուցումներով՝ մեր կուսակցությունը վիթխարի միջոցառումներ իրականացրեց սովետական երկրի տնտեսական ու ռազմական հզորության հետագա ամրապնդման համար: Երրորդ հնգամյակի միայն երեք ու կես տարում գործարկվեցին 2.900 նոր գործարաններ ու ֆաբրիկաներ: Բարձր տեմպերով զարգացավ ինքնաթիռների, տանկերի արտադրությունը, ընդլայնվեցին հրաձգա-հրետանային զենք ու ռազմամթերք թողարկող ձեռնարկությունները: Միջոցներ ձեռնարկվեցին կարմիր բանակն ու նավատորմը կազմակերպորեն ամրապնդելու համար: Նախապատերազմյան երկու և կես տարում լրացուցիչ ձևավորվեց 125 դիվիզիա: Մեր զինված ուժերի անձնակազմի թիվն այդ ժամանակամիջոցում աճել էր ավելի քան երեք անգամ: ՀամԿ(բ)Կ Կենտկոմը, հատուկ ուշադրություն նվիրելով զորքերում կուսակցական ազդեցության ուժեղացմանը, բանակ էր ուղարկում կոմունիստներին:

Երկրի ինդուստրացումը, կոլտնտեսային կարգերի հաղթանակը, ՍՍՀ Միության ժողովուրդների բարոյա-քաղաքական միասնությունն ու բարեկամությունը, սովետական մարդկանց ջերմ հայրենասիրությունը և նրանց անսահման նվիրվածությունը կոմունիստական կուսակցությանը, կայուն հիմք ստեղծեցին սոցիալիստական տերության տնտեսական ու ռազմական հզորության համար և վճռական դեր խաղացին ֆաշիզմի նկատմամբ հաղթանակի ապահովման գործում:

Պատերազմի առաջին իսկ օրերից կուսակցությունը մշակեց մարտական գործողությունների ծրագիր՝ նրա հիմքում դնելով սոցիալիստական հայրենիքի պաշտպանության վերաբերյալ մեծ Լենինի գաղափարները: Այն շարադրված էր ՍՍՀՄ Ժողկոմխորհի և ՀամԿ(բ)Կ Կենտկոմի 1941 թվականի հունիսի 29-ի դիրեկտիվներում՝ «Ճակատամերձ մարզերի կուսակցական և սովետա-

կան կազմակերպություններին» (КПСС о Вооруженных Силах Советского Союза, М., Воениздат, 1969, стр. 291):

Դիրեկտիվը պահանջում էր թշնամու դեմ մղվող անողոք կռվում պաշտպանել յուրաքանչյուր թիզ սովետական հողը, հանուն մեր քաղաքների ու գյուղերի՝ կռվել մինչև արյան վերջին կաթիլը, ցուցաբերել խիզախություն, նախաձեռնություն, հնարամտություն, որոնք հատուկ են մեր ժողովրդին, կազմակերպել բազմակողմանի օգնություն գործող բանակին, ամրապնդել կարմիր բանակի թիկունքը՝ ռազմաճակատի շահերին ենթարկելով երկրի ողջ կյանքը (տե՛ս նույն տեղը, էջ 300): Այս դիրեկտիվի բովանդակությունը կուսակցությանը, յուրաքանչյուր սովետական մարդու պարզաբանելու համար՝ 1941 թվականի հուլիսի 3-ին ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Քաղբյուրոյի հանձնարարությամբ հանդես եկավ Ի. Վ. Ստալինը:

Ռազմաճակատի ու թիկունքի ջանքերը մոբիլիզացնելու և միավորելու նպատակով ստեղծվեց պաշտպանության պետական կոմիտե՝ ՀամԿ(բ)Կ Կենտկոմի գլխավոր քարտուղար Ի. Վ. Ստալինի գլխավորությամբ: Պաշտպանության պետական կոմիտեն և Գերագույն գլխավոր հրամանատարության ռազմակայանը այն օրգաններն էին, որոնց միջոցով կուսակցությունն իրականացնում էր իր ղեկավարությունը սովետական ժողովրդի ողջ զինված պայքարում:

Կուսակցության կոչով երկրի բոլոր ժողովուրդները մեկ մարդու պես ոտքի ելան պաշտպանելու հայրենիքը: Ռազմաճակատներում ու թիկունքում հերոսական պայքար ծավալվեց հանուն սոցիալիստական հայրենիքի ազատության և անկախության:

Մեր երկրի համար բացառիկ բարդ ու դժվարին իրադրության մեջ կոմունիստական կուսակցությունը համոզիչ կերպով վերստին ցույց տվեց, որ ինքն ունակ է ո՛չ միայն ժողովուրդներին ոտքի հանելու սոցիալիզմի կառուցման համար և ղեկավարելու նրանց ստեղծարար մեծ գործունեությունը, այլև կազմակերպելու սոցիալիստական հայրենիքի ռազմական պաշտպանությունը: Հանդես գալով որպես մարտնչող կուսակցություն՝ նա իր գլխավոր ուժերը կենտրոնացրել էր գործող բանակում: Արդեն 1941 թվականի վերջերին սովետական զինված ուժերի շարքերում էին գտնվում 1.300 հազար կոմունիստներ, իսկ պատերազմի վերջին՝ կուսակցության 3,5 միլիոն անդամներ ու թեկնածուներ կամ կուսակցության ողջ կազմի գրեթե 60 տոկոսը:

Ուկրաինայի, Բելոռուսիայի ճակատամերձ շրջանների, ՌՍՖՍՀ արևմտյան մարզերի կուսակցական կազմակերպությունները գրեթե ամբողջովին ընդգրկվել էին կարմիր բանակի շարքերը, իսկ մնացած կոմունիստները ձեռնամուխ էին լինում ընդհատակյա կազմակերպությունների և պարտիզանական ջոկատների ստեղծմանը: Ուկրաինայի կոմկուսակցությունն այն ժամանակ իր շարքերում ուներ 565 հազար կոմունիստ: Պատերազմի հենց սկզբից նրանց գրեթե երկու երրորդը կանչվել էր կարմիր բանակ (տե՛ս «Очерки истории Коммунистической партии Украины», Киев, Политиздат Украины, 1964, стр. 501—502): Ուկրաինայի ավելի քան 38 հազար կոմունիստներ մնացել էին օկուպացված տերիտորիայում՝ ընդհատակյա աշխատանքի և պարտիզանական պայքարի համար (տե՛ս նույն տեղը, էջ 512):

Կուսակցության մոբիլիզացմամբ ռազմաճակատ մեկնեց Բելոռուսիայի կոմունիստների մեծ մասը: Միայն պարտիզանական ջոկատներում հանրա-



պետության կոմունիստների թիվը հասնում էր մոտ 25 հազարի (տե՛ս Формирование социалистических наций в СССР, Политиздат, 1962, стр. 159): Պատերազմի առաջին հինգ ամիսներին Մոսկվայի և Մերձմոսկովյան կուսկազմակերպությունները գործող բանակ էին ուղարկել 100 հազար կոմունիստների: Տուլայի մարզային կուսկազմակերպության 40 հազար կոմունիստներից գրեթե 32 հազարը այդ օրերին մարտնչում էր կարմիր բանակի շարքերում և պարտիզանական ջոկատներում (տե՛ս «Коммунист», М., 1966, № 17, стр. 68): Պատերազմի միայն առաջին տարում ռազմաճակատ մեկնեցին Ղազախստանի մոտ 50 հազար կոմունիստներ կամ հանրապետության կուսկազմակերպության կազմի 40 տոկոսը (տե՛ս Очерки истории Коммунистической партии Казахстана, Алма-Ата, 1963, стр. 410): Պատերազմի առաջին վեց ամիսներին 39 հազար կոմունիստների ռազմաճակատ ուղարկեց Ադրբեջանի կուսակցական կազմակերպությունը (տե՛ս Г. Мадатов. Азербайджан в Великой Отечественной войне Советского Союза (1941—1945 гг.), Баку, 1965, стр. 18): 1941—1943 թթ. ռազմաճակատ էր մեկնել Հայաստանի կոմունիստների ավելի քան 54 տոկոսը (տե՛ս Հայաստանի կոմունիստական կուսակցության պատմության ուրվագծեր, Երևան, 1967, էջ 401):

Այդպես էին գործում հանրապետությունների, երկրամասերի, մարզերի կուսկազմակերպությունները: Սերտորեն համախմբված մեր կուսակցության լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը՝ նրանք հանդես էին գալիս որպես գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղվող պայքարի ոգեշնչողներ ու կազմակերպիչներ: Կուսակցության ռազմա-մոբիլիզացիոն, ռազմա-տնտեսական և գաղափարական-քաղաքական ողջ աշխատանքն ուղղված էր մի նպատակի՝ երկիրը դարձնել միասնական մարտական ճամբար, մոբիլիզացնելով ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների տնտեսական, ֆիզիկական ու հոգևոր ողջ ուժերը, ապահովել մեր հաղթանակը ֆաշիստական Գերմանիայի նկատմամբ:

Հետաքրքրական է նշել, որ գերմանական գլխավոր շտաբը, ՍՍՀ Միության դեմ պատերազմը պլանավորելիս, գտնում էր, որ սովետական հրամանատարությունն ի վիճակի կլինի կես տարվա ընթացքում լրացուցիչ ռազմադաշտ դուրս բերել ամենաշատը 59 դիվիզիա: Այնինչ պատերազմի առաջին վեց ամիսներին, բացի գործող սովետական զորքերից, ռազմաճակատ էր ուղարկվել մոտ 350 նոր դիվիզիա: Մինչդեռ Ամերիկայի Միացյալ Նահանգներին, որոնց տերիտորիայում ռազմական գործողություններ չկային, 36 նոր դիվիզիաներ ձևավորելու համար պահանջվեց երկու տարի:

Սովետական Միության կոմկուսակցության ռազմա-մոբիլիզացիոն աշխատանքի թափի մասին է վկայում նաև այն փաստը, որ պատերազմի տարիներին մեզ մոտ պատրաստվել էին մոտ 2 միլիոն հրամանատարներ ու քաղաշխատողներ:

Ռազմա-մոբիլիզացիոն աշխատանքը գտնվում էր Սովետական Միության կոմկուսակցության բոլոր ազգային ջոկատների ուշադրության կենտրոնում: Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի 1941 թվականի հոկտեմբերի վերջերին տեղի ունեցած VIII պլենումն ընդգծեց. «Ժամանակին և լրիվ կատարվել են հանրապետության մոբիլիզացիոն պլանի բոլոր առաջադրանքները՝ կարմիր բանակին ինչպես մարդկային կոնտինգենտի, այնպես էլ մյուս ռեսուրսների մատա-

կարարման գծով»[1]: Կ(բ)Կ Կենտկոմի հաշորդ՝ X պլենումը (1941 թ. նոյեմ-
բեր), ճնճարկելով Կենտկոմի առաջին fարտուղար Գ. Ա. Հարությունյանի
զեկուցումը՝ ՀամԿ(բ)Կ Կենտկոմի պաշտպանության պետական կոմիտեի առա-
ջադրած խնդիրների իրականացման գծով հանրապետության կուսակցական,
սովետական ու տնտեսական կազմակերպությունների գործունեության մասին,
նույնպես նշեց, որ ռազմական գերատեսչության բոլոր կարգադրությունները
լրիվ և ժամանակին կատարվել են[2]:
Թշնամուն ռազմական հակահարված տալու համար կոմունիստական կու-
սակցության և սովետական կառավարության ձեռնարկած միջոցներն արդեն
շոշափելի արդյունfներ էին տալիս: Չնայած առաջին անհաջողություններին՝
սովետական ռազմիկները չէին ընկճվել ու չէին կորցրել հավատը հաղթա-
նակի հանդեպ: Արիություն ու տոկունություն, մասսայական հերոսություն
մարտադաշտում— ահա թե ինչ էին ցուցաբերում սոցիալիստական հայրենի-
fի պաշտպանները պատերազմի առաջին իսկ օրերից: Սակայն այն պահին
մեծ էր հակառակորդի գերակշռությունը կենդանի ուժով ու տեխնիկայով: Նրա
բանակն ուներ 190 դիվիզիա՝ 5,5 միլիոն զինվոր ու սպա: Այն սպառազինված
էր 47.260 հրանոթներով ու ականանետներով, 3.712 տանկերով, 4.950 մար-
տական ինfնաթիռներով: Համեմատության համար հիշատակենf 1941 թ. հու-
նիսի տվյալները կարմիր բանակի գործող զորfերի կազմի մասին: Զորամա-
սերն ունեին 2,9 միլիոն մարդ, 34.695 հրանոթ ու ականանետ, 1.800 տանկ
(ծանր ու միջին), 1.540 մարտական ինfնաթիռ (տե՛ս 50-лет Вооруженных
Сил СССР, стр. 459):
Գերմանական բանակն ուներ արդի պատերազմ վարելու երկու տարվա
փորձ. նա հաղթական երթով անցել էր եվրոպական պետությունների շատ
մայրաfաղաfներով: Հենվելով գրեթե ողջ Եվրոպայի ռազմական և արդյունա-
բերական վիթխարի հզորության վրա և արբենալով արևմուտfում տարած
իրենց դյուրին հաղթանակներով՝ ֆաշիստական Գերմանիայի տիրակալները
ենթադրում էին «Բարբարոսա» պլանի (այդպես էր կոչվում ՍՍՀ Միության
դեմ պատերազմի պլանը) իրականացումն ավարտել կայծակնային արագու-
թյամբ, մի fանի շաբաթում: Բայց թշնամին չարաչար սխալվեց: Բրեստի ամ-
րոցի, Լենինգրադի, Կիևի, Օդեսայի, Սևաստոպոլի, Սմոլենսկի և Մոսկվայի
համար մղած հերոսական մարտերում կարմիր բանակը ցույց տվեց, որ ձա-
խողման է մատնված հիտլերականների ռազմական ավանտյուրան: Մոսկվայի
մատույցներում գերմանացիների ջախջախումը պատերազմի ընթացfի արմա-
տական շրջադարձի սկիզբը եղավ: Հերfվեց հիտլերյան բանակի անպարտե-
լիության կեղծ լեգենդը: Դա է՛լ ավելի բևավորեց սովետական ժողովրդին և
նրա fաջակորով զինված ուժերին:

## II

Ռազմաճակատներում կարմիր բանակի հաղթանակները զուգորդվում էին
կարգավորված ռազմական տնտեսություն ստեղծելու համար թիկունfի աշ-
խատավորների ձեռf բերած խոշոր հաջողությունների հետ:
Վ. Ի. Լենինը սովորեցնում էր. «...fանի որ գործը հասել է պատերազմի,
ապա ամեն ինչ պետf է ենթարկել պատերազմի շահերին, երկրի ողջ ներfին

1 *ՄԼԻ-ի Հայկական ֆիլիալի կուսարխիվ, ֆ. 1, ց. 30, գ. 17, թ. 8:*
2 *Նույն տեղը, գ. 18, թ. 10:*



կյանfը պետf է ենթարկել պատերազմին, այդ առթիվ փոfրագույն տատա-
նումն անգամ անթույլատրելի է» (Երկեր, հ. 31, էջ 150): Պատերազմի առա-
ջին իսկ օրերից սովետական ժողովրդի կյանfի անխախտ օրենfը դարձավ կու-
սակցության լոզունգը՝ «Ամեն ինչ ռազմաճակատի, ամեն ինչ հաղթանակի
համար»: Ռազմական զորեղ տնտեսություն ստեղծելու նպատակով մեր կու-
սակցությունը պետf է հաղթահարեր անասելի դժվարություններ: Ճակատա-
մերձ շրջաններից հիմնական նյութական արժեfների էվակուացումը դարձել էր
կուսակցության գլխավոր խնդիրներից մեկը: Երկրի արևելյան շրջանները տե-
ղափոխվեցին բազմաթիվ գործարանների ու ֆաբրիկաների, ինչպես նաև մե-
fենա-տրակտորային կայանների սարfավորումը, միլիոնավոր գլուխ անա-
սուններ, մեծ fանակությամբ գյուղատնտեսական մթերfներ: Պաշտպանական
կարևորագույն օբյեկտների վերաբազավորման մասշտաբների մասին է վկա-
յում այն, որ միայն 1941 թվականի հուլիս-նոյեմբեր ամիսներին արևելf էին
տեղափոխվել 1.523 արդյունաբերական ձեռնարկություններ, էվակուացվել էին
ավելի fան 10 միլիոն բանվոր-ծառայողներ՝ իրենց ընտանիfներով:
Էվակուացված ձեռնարկությունների հիմնական մասը տեղաբաշխված էր
Ուրալում, Սիբիրում, Ղազախստանում ու Միջին Ասիայում: Ռուսաստանյան
ֆեդերացիայի արևելյան ու հարավ-արևելյան շրջանները, Միջին Ասիայի հան-
րապետությունները և Ղազախստանը դարձան մի զորեղ զինանոց, որը տան-
կեր, ինfնաթիռներ, հրետանային ու հրաձգային սպառազինություն, պարեն
ու համազգեստ էր մատակարարում բանակին:
Ռազմական զորեղ էկոնոմիկա էր ստեղծվել սովետական մյուս արևելյան
հանրապետություններում: Օրինակ, Ադրբեջանում, Հայաստանում ու Վրաս-
տանում կազմակերպվել էր ականանետների, ավտոմատների, հրացանների,
ռազմամթերfների արտադրություն, ընդլայնվել էին տանկերի և այլ մարտա-
կան տեխնիկայի նորոգման բազաները: Պատերազմի ժամանակ միայն Հա-
յաստանում գործարկվեցին 30 նոր ձեռնարկություններ, 110 արտադրամասեր,
որոնf կատարում էին ռազմական պատվերներ[1]: Հայաստանի ձեռնարկություն-
ներում յուրացվել էին մոտ 300 նոր արտադրատեսակներ, այդ թվում՝ ռազ-
մամթերfների մոտ 100 տեսակներ, կապի միջոցներ, հրետանային, ինժենե-
րական և այլ տեսակների գույf[2]:
Սովետական Միության կոմկուսակցության և նրա ազգային ջոկատների
կազմակերպչական ու ռազմա-տնտեսական վիթխարի գործունեության, եղ-
բայրական ժողովուրդների հերոսական աշխատանfի շնորհիվ արդեն 1942
թվականի կեսերին ավարտվել էր ժողովրդական տնտեսության ռազմական
վերակառուցումը. երկրում ստեղծվել էր կարգավորված ռազմական տնտեսու-
թյուն, որը ձեռնամուխ էր եղել մեծ fանակությամբ տանկերի և ինfնաթիռ-
ների, հրանոթների ու ականանետների և զենfի այլ տեսակների արտադրու-
թյանը:

## III

Ռազմաճակատի ու թիկունfի ջանfերի մոբիլիզացման և միավորման հա-
մար Սովետական Միության կոմկուսակցության ծավալած գործունեությունը
տվեց իր աննախադեպ արդյունfը. բարձրացավ կարմիր բանակի ռազմական

1 *Հայկական ՍՍՀ ԿՊԱ, ֆ. 113, ց. 33, գ. 354, թ. 33—34:*
2 *Նույն տեղը, թ. 34:*

կատարելագործվեց
հզորությունը, բարելավվեց զորքերի ղեկավարությունը,
նրանց կառուցվածքը, ստեղծվեցին հրետանային, տանկային և ավիացիոն զո-
րեղ միավորումներ:
Կուսակցության Կենտկոմը կոնկրետ միջոցներ մշակեց՝ զորքերի մեջ
Կուսակցության Կենտկոմը կոնկրետ միջոցներ մշակեց՝ զորքերի մեջ
տարվող կուսակցական-քաղաքական աշխատանքի բարելավման, բազմամի-
լիոն ու բազմազգ զինված ուժերի հայրենասիրական և ինտերնացիոնալ միա-
ձուլման համար: Ֆաշիզմի դեմ մարտնչում էին ՍՍՀՄ ավելի քան 100 ժողո-
վուրդների և ազգությունների զավակներ ու դուստրեր:
1942 թ. հունիսի 12-ին ՀամԿ(բ)Կ Կենտկոմը, քննության առնելով կար-
միր բանակում տարվող կուսակցական-քաղաքական աշխատանքի վիճակը,
նշեց այն արմատապես բարելավելու ուղիները: Կենտկոմն ամրապնդեց գլխա-
վոր քաղաքական վարչության ղեկավարությունը: Նրա պետ նշանակվեց
ՀամԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, Կենտկոմի քար-
տուղար Ա. Ս. Շչերբակովը: 1942 թ. սեպտեմբերի 17-ին ԲԳԿԲ գլխավոր քա-
ղաքական վարչությունը Կենտկոմի ցուցումով հրապարակեց հատուկ դիրեկ-
տիվ՝ «Ոչ ռուս ազգության կարմիրբանակայինների և կրտսեր հրամանատար-
ների հետ տարվող դաստիարակչական աշխատանքի մասին»[1]: Այն դարձավ
զորքերի ինտերնացիոնալ համախմբվածության հետագա ուժեղացման մար-
տական ծրագիրը:
Այդ գործում մեծ դեր խաղաց նաև ոչ ռուս ազգության մարտիկների
շրջանում աշխատող ռազմաճակատային ագիտատորների համաբանակային
խավաքը, որը տեղի ունեցավ 1943 թ. հուլիսի վերջերին-օգոստոսի սկզբներին:
Սեմինարի մասնակիցների առջև հանդես եկան ՀամԿ(բ)Կ Կենտկոմի քաղ-
բյուրոյի անդամ, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Մ. Ի.
Կալինինը, ԲԳԿԲ գլխավոր քաղվարչության պետ Ա. Ս. Շչերբակովը, կուսակ-
ցության մի շարք ականավոր պրոպագանդիստներ, միութենական հանրապե-
տությունների ներկայացուցիչներ[2]:
Պատերազմի առաջին շրջանի համեմատությամբ զգալիորեն ուժեղացան
կուսակցական ուժերը բանակում: Դրան մեծ չափով նպաստեց ՀամԿ(բ)Կ
Կենտկոմի որոշումը՝ գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղվող մար-
տերում աչքի ընկած զինծառայողների համար կուսակցության մեջ ընդունվե-
լու արտոնյալ պայմանների մասին: Մեկ տարում բանակային կուսկազմակեր-
պությունները աճեցին գրեթե երկու անգամ: 1942 թ. վերջերին կարմիր բա-
նակում ու նավատորմում կար 1.939.227 կոմունիստ (տե՛ս «Вопросы исто-
рии», 1970, № 5, стр. 22): 1943 թվականի մայիսին ՀամԿ(բ)Կ Կենտկոմը
որոշում ընդունեց «Կարմիր բանակում կուսակցական ու կոմերիտական կազ-
մակերպությունները վերակառուցելու և ռազմաճակատային, բանակային ու
դիվիզիաների թերթերն ուժեղացնելու մասին» (КПСС о Вооруженных
Силах Советского Союза. Документы 1917—1968 г.г., Воениздат,
М., 1969, стр. 323), որը մեծ դեր խաղաց անմիջականորեն վաշտերում ու
գումարտակներում կուսակցական ազդեցության ուժեղացման գործում:
Բանակը վերազինելու, նորագույն տեխնիկայով հագեցնելու, հրամանա-
տարական կադրերն ամրապնդելու, ողջ անձնակազմի ռազմական վարպե-
տությունը կատարելագործելու համար կուսակցության մշակած միջոցառումների

[1] Архив МО СССР. ф. 224. оп. 358, д. 115, л. 51.
[2] ЦПА ИМЛ при ЦК КПСС, ф. 88, оп. 1, д. 967, л. 1—12.



մեծ
մասշտաբների ու թափի միջոցառումները, կուսակցական-քաղաքական
աշխատանքի զուգակցությամբ, էապես բարձրացրին սովետական զինված
ուժերի մարտական հզորությունը: Այն փայլուն կերպով ցուցադրվեց Ստա-
լինգրադի շրջանում սկսված կարմիր բանակի խոշոր հակահարձակման ըն-
թացքում, որն ավարտվեց հակառակորդի 330 հազարանոց զորախմբավորման
ջախջախմամբ: Սովետական զինված ուժերը նոր ջախջախիչ հարվածներ հաս-
ցրին հակառակորդին Կուրսկի աղեղում և Դնեպր գետի մոտ՝ դրանով իսկ ա-
վարտելով պատերազմի ընթացքի արմատական բեկումը և վերջնականապես
իրենց ձեռքը վերցնելով մարտական գործողությունների նախաձեռնությունը:
1942 թ. նոյեմբերից սկսած մինչև 1943 թ. դեկտեմբերը կարմիր բանակն
ազատագրեց ֆաշիստական զավթիչների կողմից օկուպացված Սովետական
Միության տերիտորիայի կեսից ավելին: Մինչև պատերազմը 46 միլիոն մարդ
էր բնակվում ազատագրված սովետական տերիտորիայում:
Սովետական զորքերի առաջխաղացմանը մեծ օգնություն էին ցույց տա-
լիս թշնամու թիկունքում գործող պարտիզանական ջոկատներն ու միավորում-
ները, կուսակցական և կոմերիտական ընդհատակյա կազմակերպությունները:
Մինչև 1944 թ. հոկտեմբերը օկուպանտներից լրիվին ազատագրելով սո-
վետական հողերը՝ մեր զորքերը մարտական գործողությունները տեղափոխե-
ցին Սովետական Միության սահմաններից դուրս: Կոմունիստական կուսակ-
ցության կողմից պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակ-
ված սովետական ռազմիկները պատվով կատարեցին ազատագրական իրենց
մեծ առաքելությունը: Օգնության եղբայրական ձեռք մեկնելով Եվրոպայի
ֆաշիստների դեմ մարտնչող ժողովուրդներին, սովետական զինված ուժերը
նրանց օգնեցին՝ թոթափելու հիտլերիզմի լուծը և սկսելու նոր կյանքի կառու-
ցումը: Սովետական զորքերի հետ մեկտեղ ընդհանուր թշնամու դեմ հերոսա-
բար մարտնչում էին բարեկամական Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Հարավ-
սլավիայի՝ ազատագրական պայքարին հարած զորքերը, իսկ պատերազմի
եզրափակիչ շրջանում իրենց զենքը ֆաշիստական Գերմանիայի դեմ ուղղեցին
նաև Բուլղարիայի ու Ռումինիայի զորքերը:

## IV

Ֆաշիստական Գերմանիայի նկատմամբ Սովետական Միության տարած
հաղթանակը մի սխրագործություն էր, որի համասարը չի եղել աշխարհի
պատմության մեջ: Համաշխարհային-պատմական մեր հաղթանակի ոգեշըն-
չողն ու կազմակերպիչը եղել է կոմունիստների լենինյան մեծ կուսակցությու-
նը: Ողջ պատերազմի ընթացքում նա խելամտորեն դրել և հաջողությամբ լու-
ծել է ռազմական քաղաքականության և ռազմական շինարարության կենսա-
կանորեն կարևոր բոլոր խնդիրները:
Հայրենական մեծ պատերազմի շրջանում կուսակցության Կենտրոնական
կոմիտեն պատերազմող մեր երկրի մարտական շտաբն էր: Երկիրը ղեկավա-
րելու և պատերազմը վարելու կարևորագույն հարցերը լուծում էին Կենտկոմը
և նրա մարմինները: Մարդկային ռեսուրսների մոբիլիզացման, ռազմական էկո-
նոմիկայի ստեղծման, կարմիր բանակի ամրապնդման հետ կապված շատ
հարցեր քննարկվում էին Կենտկոմի քաղբյուրոյի և պաշտպանության պե-
տական կոմիտեի համատեղ նիստերում, որոնց նախապատրաստմանն անմի-
ջականորեն մասնակցում էին Կենտկոմի անդամները և անդամության թեկ-

նածուները: Որպես կանոն, Կենտկոմի քաղբյուրոյի և Գերագույն գլխավոր հրամանատարության ռազմակայանի համատեղ նիստերում քննարկվում էին պատերազմական գործողությունների ղեկավարման հետ կապված կարևորագույն հարցերը:

Կուսակցության Կենտրոնական կոմիտեն և բոլոր կուսկազմակերպությունները, կոմունիստները ռազմաճակատում ու թիկունքում հանդես էին գալիս որպես գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղվող պայքարի ոգեշնչող ու կազմակերպիչ, ճիշտ էին օտագործում եղբայրական ժողովուրդների քաղաքական, տնտեսական ու ռազմական համագործակցության պատերազմի ընթացքում ստեղծված ձևերն ու մեթոդները:

Կուսակցության բարձր հեղինակության մասին է վկայում այն, որ պատերազմի տարիներին նրա շարքերն ընդունվեց 5 միլիոն մարդ: Ռազմաճակատներում մարտնչում էր կուսակցականների 60 տոկոսը: Կոմունիստները գտնվում էին պատերազմի ամենավտանգավոր ու վճռական տեղամասերում, իրենց անձնական օրինակով ոգեշնչում էին մյուսներին: Սովետական Միության հերոսի բարձր կոչմանն արժանացած 11.603 մարդուց 74 տոկոսը կոմունիստներ էին: Ամբողջ պատերազմի ընթացքում մեր կուսակցությունը, իրոք, մարտնչող, կազմակերպող և ուղղություն տվող կուսակցություն էր:

* * *

Անցած պատերազմում Սովետական Միության ձեռք բերած հաղթանակը համաշխարհային-պատմական նշանակություն ունի: Բարենպաստ պայմաններ ստեղծվեցին Եվրոպայի և Ասիայի երկրներում սոցիալիստական հեղափոխության զարգացման ու հաղթանակի, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի գոյավորման, գաղութային և կախյալ երկրներում ազգային-ազատագրական շարժման լայն ծավալման համար: Այդ ամենը լրջորեն թուլացրել է կապիտալիզմի համաշխարհային սիստեմը:

Հայրենական մեծ պատերազմի արդյունքները անհեղ նախազգուշացում են իմպերիալիստական ագրեսորների համար: Իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականությանը Սովետական Միությունը հակադրում է խաղաղության ակտիվ պաշտպանության և միջազգային անվտանգության ամրապնդման քաղաքականությունը:

«...Մենք ոչ ոքի չենք սպառնում և մտադիր չենք որևէ մեկի վրա հարձակվելու,— ասել է Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXIV համագումարին տրված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ.— մենք կողմնակից ենք բոլոր ժողովուրդների ազատ ու անկախ զարգացմանը: Բայց թող մեզ հետ էլ ոչ ոք չփորձի խոսել ուլտիմատումների և ուժի լեզվով:

Մենք ունենք անհրաժեշտ ամեն ինչ՝ թե՛ խաղաղության ազնիվ քաղաքականություն, թե՛ ռազմական հզորություն, թե՛ սովետական ժողովրդի համախմբվածություն, որպեսզի մեր սահմանների անձեռնմխելիությունն ապահովենք ամեն մի ոտնձգությունից և պաշտպանենք սոցիալիզմի նվաճումները»:

Սովետական Միության կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության լենինյան իմաստուն քաղաքականությունն արժանանում է ամբողջ սովետական ժողովրդի միահամուռ պաշտպանությանը և առաջադեմ համայն մարդկության ջերմ հավանությանը:

# ԿԱՊԻՏԱԼԻԶՄԸ ՀԱՄԱԿԵՐՊՎՈՒՄ Է

Բ. Վ. ՄԵՀՐԱԲՅԱՆ

Կապիտալիզմը՝ մարդկանց վարձու աշխատանքի վրա հիմնված հասարակարգը, XX դարի անցած տասնամյակների ընթացքում էական փոփոխությունների չի ենթարկվել: Սակայն այնուամենայնիվ այն ձևափոխվել է և այդ պայմանավորված է այժմ տեղի ունեցող սոցիալ-քաղաքական տեղաշարժերով:

Հատկանշական է այն հանգամանքը, որ իմպերիալիստական կապիտալիզմի «ինքնակարգավորման» օբյեկտիվ հնարավորությունների անշեղ սահմանափակմամբ, միաժամանակ առավել ցցուն են դրսևորվում իմպերիալիստական տերությունների կառավարող շրջանների սուբյեկտիվ ջանքերը: Ստեղծված իրավիճակին հարմարվելու տեսությունները նպատակ են հետապնդում կապիտալիզմին ներարկել գոյատևելու միջոցներ, ճկունացնելու վերջինիս կարծրացած օրգանիզմը: Այդ գաղափարների և գործողությունների որոշ դրական արդյունքները դրանց ստեղծողների շրջանում հարուցում են «մեծ բիզնեսի» իշխանությունն ամրապնդելու, նույնիսկ՝ հավերժացնելու հնարավորության պատրանք: Դա նպաստում է այնպիսի ծայրահեղ ըմբռնումների ձևավորմանը, որոնք բովանդակում են հակամարդկային գաղափարներ:

Իմպերիալիզմի ձևափոխումը փոփոխություններ է հարուցում վերջինիս գործելակերպում, որին բնորոշ են սուբյեկտիվիզմը, արկածախնդրությունը: Իմպերիալիզմի ստրատեգիային ու տակտիկային հակադրվում ու հակազդում են աշխարհի դեմոկրատական ու սոցիալիստական ուժերը, որոնց ծրագրային նպատակներն անհարիր են ապրելակերպի չափանիշներին:

XX դարի իմպերիալիզմի էվոլյուցիան դրսևորվում է բուրժուական հարաբերությունների տիրապետության բարձրագույն ստադիային հատուկ կերպափոխություններում: Չփոփոխելով կապիտալիստական հարաբերությունների հիմքերը, իմպերիալիստական տերությունների կառավարող շրջանները հասարակական բարդ օրգանիզմի կենսագործունեության տարբեր կողմերի կարգավորման միջոցով ներազդում են նրա զարգացման ընթացքի վրա: Միաժամանակ այդ պրոցեսը դրսևորվում է իմպերիալիզմի էկոնոմիկայում, քաղաքականության, գաղափարախոսության, տակտիկայի մեջ:

Արտադրության և կապիտալի համակենտրոնացումը դարասկզբից ծնեց

մոնոպոլիաներ. արդի փուլում այդ պրոցեսի ինտենսիվացումը նշանավորվեց նոր հատկանիշների ու առանձնահատկությունների առաջացմամբ։ Տեղաշարժեր են կատարվել մոնոպոլիաների կառուցվածքում. ստեղծվել են կոնգլոմերատ-գերմոնոպոլիաներ, խոշոր կորպորացիաներ, որոնք ներառնում են արտադրության և սպասարկման տարբեր, օրգանապես չմիակցվող բնագավառներ։ Իմպերիալիզմի առավել զարգացած երկրներում կազմավորվում են նոր տիպի կամպանիաներ, որոնց բաղադրամասերի կապը ոչ միայն ֆինանսական է, այլև տեխնոլոգիական, արտադրության բուն պրոցեսի տեսակետից՝ էական։ Տարբեր երկրների մոնոպոլիստական միությունների միջև կապերը միջազգային մասշտաբով ինտեգրացվել են և խոր ներգործություն ունեն ոչ միայն միջպետական հարաբերությունների, այլև հասարակության կյանքի բոլոր կողմերի վրա։

Կոնգլոմերատ-գերմոնոպոլիաների ստեղծման պրոցեսը փոփոխվող պայմաններին իմպերիալիզմի հարմարվելու արտահայտությունն է։ Դրա հիմքը կապիտալիստական արտադրության հետագա համակենտրոնացումն է։ Զարգացող արտադրության պահանջները բավարարելու նպատակով առավել հզոր կամպանիաները կլանում են արդյունաբերության, սպասարկման, տրանսպորտի ամենաբազմազան ճյուղերի, ձեռնարկությունների, գիտա-տեխնիկական մտքի նվաճումները։ Հասարակական արտադրության վիթխարի աճը և մասշտաբները անհրաժեշտ են դարձնում կարգավորելու արտադրապրոցեսը։ Հետպատերազմյան շրջանում եռապատկվել է կապիտալիստական երկրների արդյունաբերական արտադրանքը։ Նման ծավալը պահանջում է արտադրության դրականապես նոր կառավարում։ Դրան է նպաստում նոր արտադրագործիքների, տրանսպորտի և կապի միջոցների կիրառումը։ Ուշագրավ է այն երևույթը, որ զարգացած կապիտալիստական երկրների աշխատուժի կեսից ավելին կենտրոնացած է արդյունաբերության այնպիսի ճյուղերում, որոնք դարասկզբին ամենևին գոյություն չեն ունեցել։ Գիտական և ինժեներական մտքի նվաճումների հիման վրա տեխնիկապես անընդհատ վերակառուցվում է արտադրությունը, գիտելիքներ և ինֆորմացիա արտադրող ճյուղերը դառնում են էկոնոմիկայի տիրապետող ոլորտը՝ էական տեղաշարժեր հարուցելով աշխատանքի արտադրողականության մարզում։

Իրականացվող գիտա-տեխնիկական հեղափոխությունն զգալի չափով նպաստում է արտադրության համակենտրոնացմանն ու կապիտալի կենտրոնացմանը։ Վերջինս նույնպես ներգործում է գիտա-տեխնիկական հեղափոխության ընթացքի վրա։ Գիտական նպատակների համար կատարվող հսկայական ծախսերը հետազոտական աշխատանքների ընթացքում, արտադրության մեջ, հայտնագործությունների արմատավորման շրջանում կարող էին իրականացնել միայն հզոր կորպորացիաները։ Ավելին, վերջիններս են հիմնականում ունակ օգտագործելու արդի գիտատեխնիկական առավել նշանակալի նվաճումները։ Բանն այն է, որ դրանց գերակշռող մասը շահութաբեր է միայն այն դեպքում, երբ կիրառվում է լայն տեխնիկական կոմպլեքսը։

Բաղկացած լինելով նշված գործոններից, կոնգլոմերատ-գերմոնոպոլիաները փոփոխվող ներքին և արտաքին պայմաններին հարմարվելու միջոցներ են ստեղծում։ Դրանով է բացատրվում դրանց բուռն աճը, «կոնգլոմերացիայի պայթյունը», որը տեղի ունեցավ վերջին երկու—երեք տարում։ ԱՄՆ-ում, օրինակ, «միլիարդատերերի խմբակը» միայն 1969 թվականին համալրվեց



տասնմեկ նոր մասնակիցներով, 1970 թ. նախօրեին հասավ 115,, իսկ անցած տարում՝ դրա մեջ մտան ևս 15 կոմպանիաներ։

Այնուամենայնիվ, կոնգլոմերատ-գերմոնոպոլիաների ինտենսիվ աճը էական փոփոխություններ չառաջացրեց իմպերիալիստական երկրների էկոնոմիկայում։ Դրանց կազմավորումն ու հզորացումը ֆինանսական-տնտեսական ոլորտից դուրս մղեց մոնոպոլիաների մյուս միավորումները։ Կոնգլոմերատ-մոնոպոլիաները չվերացրին մրցակցային պայքարն ու շուկայի տարերքը, չպահովեցին ազգային էկոնոմիկայի սահմաններում որևէ չափով լիակատար կարգավորում, արտադրական գործունեության կայունություն և էկոնոմիկայի հաստատուն աճ։ Եթե զարգացած կապիտալիստական երկրների տնտեսական կյանքում արտաքնապես ակնհայտ են կոնգլոմերացիայի որոշ դրական արդյունքները, այնուամենայնիվ դրանք չեն վերափոխում եղելության էությունը։ Կոնգլոմերատ-մոնոպոլիաները՝ իմպերիալիստական ներհակությունների այդ անմիջական կրողները, խորացնում են կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը, տնտեսական ցնցումները, վալյուտային-ֆինանսական ճգնաժամը, գործազրկությունը, միջիմպերիալիստական բախումները։

Արդի կապիտալիզմի էկոնոմիկայի էվոլյուցիան բնութագրող և նրա համար հարմարվողական նշանակություն ունեցող նորագույն երևույթների շարքին է դասվում կոմպանիաների նոր տիպի առաջացումը, որի մասերի միջև գոյություն ունեցող կապը ոչ միայն ֆինանսական է, այլև տեխնոլոգիական։ Այդ երևույթը նոր է և զարգանում է այն փոփոխությունների հունով, որոնք կյանքի են կոչվում թե՛ արտադրության տեխնոլոգիական պահանջմունքներով, թե՛ գիտա-տեխնիկական հեղափոխության սոցիալական հետևանքներով։ Մոնոպոլիստական նոր միավորումները, փոխարինելով նախորդներին, հենց կազմավորման շրջանում դրսևորում են իրենց արատները։

Նոր տիպի կորպորացիաները լայնորեն օգտագործում են ոչ միայն կոմպանիաների ֆինանսական միավորման առավելությունները, այլև արտադրության կազմակերպման, կառավարման սիստեմի հետ առնչվող հարցեր։ Վերջինի դերը հսկայական է։ Ավելի է բարդանում պայքարը «սեփական» արտադրանքի պահանջարկի բարձրացման, վաճառքի աճի ասպարեզում։ Կոմպանիաների ու կորպորացիաների գործունեությունը մեծապես պայմանավորվում է արտադրանքի որակի բարձրացմամբ, նոր արտադրատեսակների արմատավորմամբ։ Այստեղ անխուսափելի են մի շարք խոչընդոտներ՝ դժվարություններ, կապված տեխնիկական հայտնագործությունների կենսագործման հետ, որակյալ կադրերի սուր պակասը, ճկունության բացակայությունն արտադրական ստորաբաժանումներում և այլն։ Ուստի, առաջնահերթ նշանակություն են ստանում կառավարման արդիական սիստեմների միջոցով արտադրության լավագույն համահարաբերակցության պրոբլեմները։ Արտադրության, դրա զարգացման պահանջներն առաջ են բերում նոր տիպի կոմպանիաներ, որոնք ծագելով որոշ սահմաններում, նույնիսկ հաղթահարում են դրանց ծնող բացասական երևույթները։

Այս առումով հատկանշական է ամերիկյան «Լիտոն ինդուստրիս ինկորպորեյտիդ» կոմպանիայի պատմությունը, որը գրավեց ոչ միայն գործարար մարդկանց, այլև համաշխարհային մամուլի ուշադրությունը։ Այդ կոմպանիայի զարգացումն աննախադեպ է նույնիսկ ամերիկյան բիզնեսի տարեգրության մեջ։ 15 տարվա ընթացքում, ներառյալ 1970 թվականի շեմը, «Լիտոնը» կլանեց

ավելի քան հարյուր արդյունաբերական կոմպանիաներ, իր մասնաճյուղերն
ստեղծելով 14 արտասահմանյան երկրներում: Նրա չափազանց լայն անվա-
նացուցակի (10000 անուն) արտադրանքն իրացվում է 90 երկրներում: Այդ
կոմպանիան ընդամենը տասնհինգ տարվա ընթացքում դարձավ ԱՄՆ-ի խո-
շոր կորպորացիաներից մեկը, վաճառքի ծավալը մեծացնելով մոտ 600 անգամ:
Մոնոպոլիստական կապիտալիզմի պատմության մեջ նման արդյունաբե-
րական-ֆինանսական զարգացման գաղտնիքը պարփակված է, հիմնականում,
երկու ոլորտում: Նախ, կորպորացիաների կողմից արտադրության կառավար-
ման նորագույն մեթոդների կիրառում, ապա կորպորացիաների կողմնորոշումը
գիտության ու տեխնիկայի նվաճումներն արմատավորելու ոլորտում: Այս
ամենն, իհարկե, չի վերացնում մյուս այն պատճառները, որոնք ֆիրմայի
պատմության զանազան փուլերում նպաստել են դրա վերընթաց զարգացմա-
նը: Նկատենք, որ ֆիրման այժմ ևս իր գործարար կապերով դասվում է ԱՄՆ-ի
ռազմաարդյունաբերողների կոմպլեքսի շարքը: 1970 թ. ամռանը այդ ֆիր-
ման ռազմա-ծովային գերատեսչության հետ կնքեց 2 միլիարդ արժողությամբ
30 ականակիրների կառուցման պայմանագիր— ամենախոշոր պայմանագիրը,
որ խաղաղ պայմաններում երբևէ կնքվել է զինվորական գերատեսչության և
քաղաքացիական կապալառուի միջև:

Այսպիսով, «Լիտոն» ֆիրման առաջինն էր, որ ամբողջ ծավալով ձեռնար-
կեց բազմաճյուղ տեխնոլոգիական կոմպանիայի հիմնադրումը, որի
խնդիրն է յուրացնել այսօրվա ամենաբազմազան տեխնոլոգիական պրոցես-
ները և, առևտրական տեսակետից օգտակար արտադրանքներ թողարկելու
նպատակով, այդ պրոցեսների կիրառման ուղիներ գտնել: Այստեղ գերակշռողը
«Լիտոն»-ի աջակցություն ստացող կոմպանիաների աճման տենդենցն է:

Սակայն վերջինս հնարավոր է միայն գիտատեխնիկական առաջընթացի
արդյունքների լայն կիրառմամբ, ընդ որին՝ արդյունաբերության սոսկ այն
ճյուղերում, որտեղ նորագույն տեխնոլոգիան կարող է առավել չափով արդյու-
նավետ լինել: Այստեղից և սկիզբ է առնում այն բազմաճյուղ ֆիրմայի
գաղափարը, որն ունի արտադրության ռիթմիկ զարգացման, թողարկվող ար-
տադրանքի անընդհատ և արագ թարմացման համար բավականաչափ «լայն
ընդգրկում և հաստատուն լինելու պաշար»:

«Բազմաճյուղ տեխնոլոգիական կոմպանիայի» կոնցեպցիան «Լիտոն
ինդուստրիս»-ում պատճառաբանվում է նաև նրանով, որ այդպիսի արտա-
դրական կառուցվածքը հնարավոր է դարձնում «տեխնոլոգիայի խաչաձև փո-
շոտումը»: Նոր տիպի կորպորացիաներում ինֆորմացիոն ծառայություն մշա-
կելու շնորհիվ արտադրամասերն արդյունավետ են դառնում: Այդ ծառայու-
թյունն արտադրության կառավարման յուրաքանչյուր օղակին հաղորդում է
ֆիրմայի տեխնոլոգիական հնարավորություններին վերաբերող մաքսիմում և,
միևնույն ժամանակ, օպտիմում ինֆորմացիա: Դեռ ավելին, հավաքելով օտար,
այդ թվում միջազգային ինֆորմացիայի «ծաղկահյութը», «Լիտոն»-ի ինֆոր-
մացիայի ծառայությունն արտադրության կառավարման յուրաքանչյուր ա-
ռանձին օղակի սնուցում է գիտության ու տեխնիկայի վերջին խոսքով: Դրանով
ընդլայնվում է կորպորացիայի հարմարվելու, անգամ՝ ինքնահաստատվելու
հնարավորությունը:

Նոր տիպի կորպորացիային բնորոշ է հետևողական մոտեցում արտադրու-
թյան զարգացման, արտադրապրոցեսի հարցերի նկատմամբ: Կառավարման



նման եղանակը նույնիսկ առանձին, տեղական օղակների ղեկավարներին հնա-
րավորություն է ընձեռում ավելի լայնորեն քննելու կոնկրետ պրոբլեմների լու-
ծումը, կողմնորոշվելու ո՛չ միայն «սեփական» մասերի, այլև ամբողջությամբ
վերցրած արտադրության շահերին համապատասխան: Արտադրության կա-
ռավարման սիստեմների կատարելագործման բնագավառում զարգացնելով այդ
ուղղությունը, «Լիտոն»-ը հասել է օգտակար գործակից ունեցող «մեծ սիս-
տեմների» մշակման, որը գերազանցում է սովորական մշակումը:

Կորպորացիաների նոր տիպն արդի աշխարհի զարգացող պայմաններին
հարմարվելու մոնոպոլիստական կապիտալիզմի ամենանորագույն տարբե-
րակն է: Այն, ինչպես նաև կոնգլոմերացիայի նախորդող ձևերը, չեն լուծում
կապիտալիզմին ներհատուկ և ոչ մի արմատական պրոբլեմ: Մոնոպոլիաների
կազմակերպման մեջ բոլոր կառուցվածքային տեղաշարժերն ընդհանրապես
որևէ չափով արմատական փոփոխություն չեն մտցրել արդի կապիտալիստա-
կան արտադրության սիստեմում: Կապիտալիզմի հարմարվողական մեխա-
նիզմների գործողությամբ չեն հաղթահարվել կապիտալիստական տնտեսու-
թյան տարրերի օրինաչափությունները, դրանց քայքայող խռացիոնալ ազդե-
ցությունը: Այժմեական է Լենինի այն միտքը, թե «կապիտալիստական ամբողջ
արտադրության քաոսայնությունից «անտեղի կորչում է անհատակ աշխա-
տանքը»: Իսկ «անտեղի» կորչող աշխատանքի չափերը ֆանտաստիկորեն
աճում են: XX դարի ընթացքում ուղղակի կորուստների կամ իմպերիալիս-
տական կապիտալիզմի տիրապետության հետ անմիջականորեն կապված
պատճառներով (տնտեսական ճգնաժամեր, արտադրաուժերի խրոնիկական
թերբեռնվածություն, նյութական արտադրության ոլորտում զբաղվածության
կրճատում, կորցրած հնարավորությունները) հանցագործության, պորտաբու-
ծության ծավալման, սպառազինման և պատերազմի կապակցությամբ արված
ծախսերն արտահայտվում են ցնորամիտ թվերով՝ 11,000 միլիարդ դոլար գու-
մարով: Ընդ որում, ոչ մի նշան չկա, թե այդ երևույթը գնալով անհետանում
է: Ընդհակառակը. այն զարգանալով դրսևորում է հակասությունների առկա-
յությունը կապիտալիստական արտադրության տարբեր մասերի միջև, ինչպես
և այդ հակասությունների անլուծելիությունը:

Արդի աշխարհում փոփոխվող իրադրության մեջ, իմպերիալիստական կա-
պիտալիզմի հարմարվելու կառուցվածքային տեղաշարժերի թվում, նշանակա-
լից է տնտեսական միջազգայնացման տենդենցը, նրա նոր աստիճանը՝ ինտե-
գրացումը: Հատկանշական է նաև արտադրության և կապիտալի կենտրոնաց-
ման ու համակենտրոնացման տենդենցը, որն իրագործվում է յուրօրինակ
եղանակով:

Այսպես, կապիտալիստական բարձր զարգացած երկրների միջև հաս-
տատված ֆինանսա-տեխնիկական կապերը նպատակ ունեն կոորդինացնելու
տարբեր երկրների արտադրա-ֆինանսական գործունեությունը, որոնք իմպե-
րիալիստական տիրապետությունը միջազգային փոփոխվող պայմաններին
հարմարեցնելու միջոց են: Այսպիսով, ինտեգրացումը միջազգային մասշտա-
բով ծառայում է մոնոպոլիաների ինչպես անմիջական, այնպես էլ ստրատե-
գիական շահերին: Բայց տարբեր երկրների կառավարող շրջանների շահերի ու
խնդիրների թվացող միասնությունը չի վերացնում հակասությունները իմպե-
րիալիստական ալյանսների կողմերի միջև: Այդպիսի կողմերի փոխհարաբե-
րություններում հավասար սկզբունքներով գործակցություն չկա: Որքանով որ

կապիտալիզմի օրոք սոցիալական կողմերի ուժերի ու կարողությունների նույ-
նություն չի եղել և լինել չի կարող, այնքանով էլ բացառվում է հավասար
գործակցությունը նրանց միջև։ Իսկ դա այդպես է, քանի որ կապիտալիզմի
օրոք տարբեր սոցիալական կառուցվածքների միջև հարաբերությունների միակ
իրական չափանիշը ուժն է։ Այստեղից էլ՝ հարաբերությունները երկրների միջև
թեև իրավահավասար են թվում, ըստ էության մնում են անհավասար։

Այստեղից պարզ է դառնում, որ ժամանակավոր են ինտեգրացման միջո-
ցով զանազան մոնոպոլիաների, կամ մոնոպոլիաների խմբերի ձեռք բերած
անմիջական շահերը։ Այլ է պատկերը ստրատեգիական առումով։ Խորացնե-
լով միջիմպերիալիստական հակասությունները, ինտեգրացումը բազմապատ-
կում է կապիտալիզմի բոլոր հակասությունները, քայքայում այդ սիստեմը։

Ինտեգրացման մյուս կողմը իմպերիալիստական պետությունների և
զարգացող երկրների միջև ստեղծված տնտեսական կապերն են։ Այդ
սիստեմում հարաբերությունները խարսխվում են ամենախոր հակասու-
թյունների վրա։ Իմպերիալիստական տիրապետության երկրների համար
նախկին գաղութային աշխարհի հետ տնտեսական, գործարար կապերը հար-
մար ուղի են ստեղծում բացահայտ գաղութարարությունից շահավետ կերպով
դրա քողարկված ձևին անցնելու համար։ Զարգացող երկրների համար՝ ին-
դուստրիալ պետությունների հետ կապերի հնարավորությունը նպատակ է հե-
տապնդում զարգացնելու ազգային՝ սովերեն, էկոնոմիկա։ Այստեղ բացար-
ձակ է կողմերի շահերի հարաբերական միասնության ակնհայտ լինելը, բայց
նույնքան էլ բացարձակ է պայքարը հակադիր կողմերի միջև։ Նրանց միջև կա-
պերն իրականացվում են պայքարի միջոցով, պայքարի ընթացքում։

Ինտեգրացման եղանակները համաշխարհային կապիտալիստական տըն-
տեսության մեջ դրսևորվում են ինչպես պետական կապիտալի, այնպես էլ
մասնավոր կապիտալի արտահանման ոլորտներում։ Հետպատերազմյան տա-
րիներին այդ ասպարեզում ձևավորվել է երկու գիծ. պետական կապիտալի ար-
տահանման գերազանցումը մասնավոր կապիտալի արտահանման համեմա-
տությամբ։ Այդ կապակցությամբ տնտեսական ինտեգրացման քաղաքական գե-
րը՝ առաջատար իմպերիալիստական տերությունների պետական կապիտալի
տեղաշարժերը Արևմտյան Եվրոպայից դեպի Ասիայի և Աֆրիկայի երկրներ։
Վերջիններիս ազգային ռեակցիոն ուժերը դասակարգային էգոիզմի ճնշման
տակ համագործակցում են օտարերկրյա կապիտալի հետ։

Սակայն ինտեգրացումն անսահման հնարավորություններ չի ստեղծում։
Հեղափոխականորեն վերափոխվող աշխարհին հարմարվելու կապիտալիզմի
հնարավորությունները սահմանափակ են։ Իր սոցիալ-տնտեսական կառուց-
վածքով լինելով հակասական, կապիտալիզմն ուժեղացնում է ապաինտեգրաց-
ման տենդենցի գործողությունը, որը քայքայում է համաշխարհային կապի-
տալիստական սիստեմի հիմքերը։

Այդ պայմաններում աճում է սուբյեկտիվ գործոնի դերը, որն անհրաժեշ-
տություն է հարուցում վերլուծելու ո՛չ միայն տնտեսական, այլև կապիտալիզ-
մի՝ համակերպվելու քաղաքական, գաղափարական և մյուս ասպեկտները։

(Շարունակելի)



# ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒՄԸ ԵՎ ԿԻԲԵՌՆԵՏԻԿԱՆ

Ա. Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՀՍՍՀ ԳԱ տնտեսագիտության ինստիտուտի մաթեմատիկական
մեթոդների բաժնի վարիչ

ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում ասված է. նոր հնգամյակում ըստ ամենայնի զարգացնել ֆունդամենտալ և կիրառական գիտական հետազոտությունները և դրանց արդյունքներն ավելի արագ արմատավորել ժողովրդական տնտեսության մեջ։ Սակայն այս ամենը չեն կարող ապահովել ցանկալի տնտեսական արդյունք, եթե այն չի զուգակցվում ժողովրդական տնտեսության ղեկավարման և պլանավորման աշխատանքների մակարդակի բարձրացման հետ։ Այդ կապակցությամբ իններորդ հնգամյակի դիրեկտիվներում առանձնահատուկ տեղ է հատկացվում ժողովրդական տնտեսության կառավարման և պլանավորման սիստեմի հետագա կատարելագործման բնագավառում մաթեմատիկական մեթոդների և էլեկտրոնային հաշվիչ մեքենաների կիրառմանը։

Վերջին տարիներին ժողովրդական տնտեսության և գիտության բնագավառներում լայնորեն կիրառվում են մաթեմատիկական մեթոդները և էլեկտրոնային հաշվիչ մեքենաները։ Դա պայմանավորված է ո՛չ միայն էլեկտրոնային հաշվիչ մեքենաների զարգացմամբ, այլև ժողովրդական տնտեսության առջև ծառացած բարդ ու բազմազան խնդիրներով։ Արդի պայմաններում պահանջվում է ավելի մեծ ճկունություն և օպերատիվություն արտադրության կառավարման և պլանավորման գործում։ Չափազանց կարևոր է՝ ժամանակին հաշվի առնել փոփոխվող տնտեսական իրադրությունը, մանրել, արտադրության կոնկրետ պայմաններում գտնել տնտեսական խնդիրների լուծման լավագույն եղանակներ։ Բայց նմանօրինակ շատ հարցերում դրսևորվող գործոնների ընդհանուր քանակը, դրանց միջև գոյություն ունեցող կապակցությունները հանգեցնում են այնպիսի դրության, որ մարդն ի վիճակի չէ պահանջվող ժամկետում գտնելու իր առջև դրված խնդրի պատասխանը։ Այդ հարցերը մաթեմատիկական մեթոդներով և ժամանակակից էլեկտրոնային հաշվիչ մեքենաների օգտագործմամբ լուծվում են շատ կարճ ժամանակամիջոցում՝ բավարար ճշտությամբ։ Առանձնապես ներկայումս, երբ տնտեսության բոլոր օղակներում լուրջ աշխատանքներ են տարվում նյութական խթանման ու պլանավորման նոր սիստեմին անցնելու նպատակով, ավելի ակնառու են դառնում ինչպես տնտեսագիտության մեջ գիտության ու տեխնիկայի նորագույն նվա-

ռումների արմատավորման, այնպես էլ տնտեսագիտական հետազոտություններում և արտադրության ղեկավարման ու պլանավորման աշխատանքներում մաթեմատիկական մեթոդների կիրառման անհրաժեշտությունը։

Ղեկավարման և պլանավորման աշխատանքներն արտադրության պահանջներին համապատասխանեցնելու նպատակով անհրաժեշտ է ապահովել ղեկավար օրգանների աշխատանքի արտադրողականության աճի ավելի արագ տեմպ։ Վերջին հարյուրամյակում աշխատանքի արտադրողականությունն արտադրության ոլորտում աճել է ավելի քան 16, իսկ վարչական ապարատում՝ միայն 2 անգամ։ Օրինակ, ԱՄՆ-ում արտադրության անարխիայի պայմաններում 1870—1960 թթ. գրասենյակային աշխատողների թիվն աճել է 30, իսկ արտադրությունում աշխատողներինը՝ ընդամենը 5,2 անգամ, չնայած առանձին ձեռնարկությունների և մոնոպոլիստական միավորումների սահմաններում արտադրության պլանային կազմակերպման բնագավառում լայն չափով կիրառվում են էլեկտրոնային հաշվիչ մեքենաները։ Սիլիվանի էլեկտրատեխնիկական կոնցեռնում Յունիվակ էլեկտրոնային հաշվիչ մեքենայի օգնությամբ (վայրկյանում կատարում է 25 հազար գործողություն), կենտրոնացված է ամբողջ հաշվարկումը. այդ մեքենան սպասարկում է 118 կազմակերպությունների և ձեռնարկությունների, որոնք գտնվում են 61 տարբեր քաղաքներում։ Կազմված բոլոր փաստաթղթերը (հաշվետվությունը, հաշվարկամփոփումները, աշխատավարձի ցուցակը և այլն) էլեկտրոնային հաշվիչ մեքենայի միջոցով մշակվելուց հետո հեռագրական կապով հաղորդվում են ձեռնարկության և կոնցեռնի ղեկավարությանը։

Սոցիալիստական հասարակության շահերը ժողովրդական տնտեսության կառավարող և պլանավորող օրգաններից պահանջում են բազմակողմանի ուսումնասիրել ու վերլուծել ողջ երկրի տերիտորիայով տարածված բնական, աշխատանքային ռեսուրսները, արտադրական կարողությունների ու տնտեսական տարբեր շրջաններն իրար հետ կապող տրանսպորտի միջոցների հնարավորությունները, դրանց միջև գոյություն ունեցող փոխադարձ կապերը և ճիշտ գնահատել որակական ու քաղաքական այն փոփոխությունները, որոնք տեղի կունենան այս կամ այն տնտեսական միջոցառման շնորհիվ, ընտրել ժողովրդական տնտեսության զարգացման այնպիսի ընթացք, որն ապահովի հասարակական արտադրության մաքսիմալ արդյունավետություն։

Ժողովրդական տնտեսության պլանավորման խնդիրները տարեցտարի ավելի են բարդանում։ Արտադրության մասշտաբների անընդհատ աճի հետ մեկտեղ փոխվում է նաև նրա կառուցվածքը, երևան են գալիս արտադրության նոր ճյուղեր, համալրվում և մեծանում է հին ճյուղերում արտադրվող արդյունքների տեսակացանկը։ Դրա շնորհիվ ավելանում է պլանում առկա, համաձայնեցվող տարրերի թիվը, և փոխվում է համամասնությունների ողջ սիստեմը։

Ժողովրդական տնտեսության ընթացիկ և հեռանկարային պլաններ կազմելիս այդ համամասնությունների ապահովման հարցը կապված է ծավալուն հաշվարկներ պահանջող հսկայական աշխատանքի հետ։ Տնտեսության զարգացման ներկա էտապում հաշվեկշռված ժողովրդատնտեսական պլանը կազմելու համար տարեկան կպահանջվի մոտ $10^{16}$ գործողություն։ Ավտոմատ արիֆմոմետրի վրա հաշվարկումները կազմակերպելու դեպքում $10^{16}$ գործողություն կատարելու համար կպահանջվի երեսուն միլիարդ մարդ-տարի։



«Գիտությունը լրջորեն հարստացրել է պլանավորման տեսական զինանոցները,— ասաց ՍՄԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXIV համագումարում տված զեկուցումում,— մշակելով տնտեսագիտական-մաթեմատիկական մոդելավորման, համակարգային վերլուծության մեթոդները և այլն։ Անհրաժեշտ է ավելի լայնորեն օգտագործել այդ մեթոդները, ավելի արագորեն ստեղծել կառավարման ճյուղային ավտոմատացված սիստեմներ, նկատի ունենալով, որ ապագայում մենք ստեղծելու ենք ինֆորմացիայի հավաքման ու մշակման համապետական ավտոմատացված սիստեմ»։

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը մեծ նշանակություն են տալիս ժողովրդական տնտեսության պլանավորման և կառավարման բնագավառում ժամանակակից մաթեմատիկական մեթոդների օգտագործմանն ու պլանային-տնտեսական ապարատը էլեկտրոնային հաշվիչ մեքենաներով զինելուն։ Ահա թե ինչու ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում ասված է. Ստեղծել հաշվողական կենտրոնների միասնական ցանց, որը կոչված կլինի իրականացնելու ամբողջ ժողովրդական տնտեսության ինֆորմացիայի ստացումը, մշակումն ու հաղորդումը։ Հաշվողական կենտրոնների միասնական ցանցի առաջնահերթ նպատակը կլինի մեր երկրում հասարակական արտադրության ղեկավարման աշխատանքների կոմպլեքսային ավտոմատացման ապահովումը։

Ինչպես տեխնիկական առաջադիմության ամեն մի նվաճում, այնպես էլ տնտեսագիտական մաթեմատիկական մեթոդների ԷՀՄ-երի միջոցով պլանավորման և կառավարման ավտոմատացված սիստեմի ստեղծման համար պահանջվում է որոշակի ժամանակ։ Առաջին հերթին, անհրաժեշտ է որոշել, թե ինչպիսի աստիճաններ պետք է ունենա հաշվողական կենտրոնների միասնական ցանցը, ինչպիսի ֆունկցիոնալ կապի մեջ պետք է լինեն այդ կենտրոններն իրար և երկրի ղեկավար ու պլանավորող օրգանների հետ։ Տնտեսության իրավիճակը յուրաքանչյուր մոմենտին ճիշտ իմանալու, նրա առջև կանգնած խնդիրները արագ, ժամանակին և պահանջվող ճշտությամբ լուծելու համար անհրաժեշտ է հիմնովին վերանայել սկզբնական ինֆորմացիան, խիստ սիստեմավորել այն ու բարձրացնել ճշտության աստիճանը, առավելագույն չափով ավտոմատացնել այդ տվյալների հավաքման, մշակման և հաղորդման աշխատանքները։

Մյուս կողմից, անհրաժեշտ է, ըստ իս, ա). ժողովրդական տնտեսության և նրա առանձին օղակների համար մշակել օպտիմալ պլանավորման և ղեկավարման էկոնոմիկա-մաթեմատիկական մոդելներ, որոնք հնարավորություն կընձեռեն տնտեսության առանձին օղակների միջև գոյություն ունեցող կապերը լավագույն ձևով զուգակցելու տնտեսության ընթացիկ ու հեռանկարային պլանավորման և ՍՍՀՄ-ում հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման խնդիրներին. բ). ստեղծել տնտեսագիտական հաշվարկների համար էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ, որոնք հնարավորություն կունենան արագ ընդունելու, մշակելու, պահպանելու և հաղորդելու մեծածավալի ինֆորմացիա ո՛չ թե կոդավորված, այլ որպես պատրաստի փաստաթուղթ, որը հնարավոր կլինի միանգամից օգտագործել։

Հաշվողական կենտրոնների միասնական ցանցը երկրում հասարակական արտադրության պլանավորման և կառավարման աշխատանքների կոմպլեքս

ավտոմատացման հետ միաժամանակ հնարավորություն կտա մի քանի անգամ
կրճատելու փաստաթղթերի հոսքը. բազմաթիվ մասնագետների, որոնք զբաղ-
ված են տնտեսագիտական ինֆորմացիայի ստացման, պահպանման, մշակ-
ման և հաղորդման միօրինակ ու ձանձրալի գործունեությամբ, տեղափոխելու
ստեղծագործական աշխատանքի. հաշվարկելու ինչպես ժողովրդական տնտե-
սության, այնպես էլ նրա առանձին օղակների գործունեության տարեկան
և հեռանկարային օպտիմալ պլաններ. ժամանակի յուրաքանչյուր հատվածում
(օր, շաբաթ, տասնօրյակ և այլն) վերլուծելու ամբողջ ժողովրդական տնտե-
սության և դրա առանձին օղակների վիճակը, դրանց գործունեության ընթաց-
քում և ամեն մի կոլեկտիվին հասցնելու հետագա արդյունավետ գործունեու-
թյան ճշգրիտ ինֆորմացիա, անմիջական կապ ստեղծելու երկրի ղեկավար և
պլանավորող օրգանների ու տնտեսության արտադրական օղակների (տնտե-
սական շրջանների, արդյունաբերության ճյուղերի, ձեռնարկությունների և
կազմակերպությունների) միջև։

Այդ հաշվողական կենտրոնների միասնական ինֆորմացիոն ցանցը միա-
ժամանակ կհանդիսանա տնտեսագիտական հետազոտությունների և ինժենե-
րական մտքի առաջավոր կենտրոն։ Վերջին տարիներին հանրապետության
ղեկավարման և պլանավորման օրգաններում, գիտահետազոտական մի շարք
հիմնարկություններում ստեղծվեցին բաժիններ, որոնց նպատակն է զբաղվել
մաթեմատիկական մեթոդները և ԷՀՄ-երը ժողովրդական տնտեսության մեջ
ներդնելու պրոբլեմի առանձին խնդիրներով։

1967 թ. ՀՍՍՀ ԳԱ նախագահության որոշմամբ ստեղծվեց ՍՍՀՄ-ում
ժողովրդական տնտեսության օպտիմալ պլանավորման և կառավարման
կոմպլեքսային պրոբլեմի գիտական սովետի հայկական բաժանմունքը, հան-
րապետության ժողովրդական տնտեսության մեջ կիբեռնետիկական մեթոդ-
ների ներդրման բնագավառում կատարվող գիտա-հետազոտական աշխա-
տանքների ղեկավարման և կոորդինացման համար։ Գիտական խորհրդի հայ-
կական բաժանմունքի առաջնահերթ խնդիրն է՝ այդ աշխատանքները ծառա-
յեցնել մեկ ընդհանուր նպատակի՝ հանրապետության հասարակական արտա-
դրության պլանավորման և ղեկավարման ավտոմատացված սիստեմի ստեղծ-
մանը, որն իրենից կներկայացնի ՍՍՀՄ-ում ստեղծվող պետական հաշվողա-
կան կենտրոնների միասնական ցանցի մի մասը։ Այդ նպատակներով միութե-
նական խորհրդի նման բաժանմունքներ ստեղծվեցին Միության մնացած բո-
լոր հանրապետություններում։

Հայկական ՍՍՀ ԳԱ տնտեսագիտության ինստիտուտում մշակվեց ար-
դյունաբերական ձեռնարկությունների օպտիմալ պլանավորման, տեխարդ-
ֆինպլանի կազմման և արտադրական պլանը փոքր ժամանակամիջոցների օպ-
տիմալ ձևով բաշխման մեթոդիկա։ Այդ մեթոդիկան հնարավորություն կըն-
ձեռի մաթեմատիկական մեթոդների և ԷՀՄ-ի օգտագործմամբ որոշելու արդյու-
նաբերական ձեռնարկությունների գործունեության տարեկան օպտիմալ պլա-
նը։ Տրված են սկզբնական անհրաժեշտ ինֆորմացիա և դրա ներկայացման ձե-
վերը։ Այդ ինֆորմացիայի հիման վրա որոշվում է ձեռնարկության օպտիմալ
արտադրական ծրագիրը, հաշվի առնելով արտադրական կարողությունների
նյութական և աշխատանքային ռեսուրսների, նոր տեխնիկայի ու տեխնոլո-
գիայի ներդրման, ձեռնարկության կողմից թողարկվող արտադրանքի իրաց-
ման հնարավորությունները։ Միաժամանակ ԷՀՄ-ի միջոցով որոշվում են ձեռ-



նարկության նյութա-տեխնիկական մատակարարման, ֆինանսական, աշխա-
տանքային և նյութական ռեսուրսների, ինքնարժեքի հիմնական ֆոնդերի ու
շրջանառու միջոցների օպտիմալ օգտագործման պլանը, նոր տեխնիկայի և
տեխնոլոգիայի արդյունավետ ներդրման կոնկրետ ուղիները։ Ձեռնարկություն-
ների օպտիմալ պլանավորման մշակված մեթոդիկայի օգտագործմամբ «Հրազ-
դան—2» ԷՀՄ-ի միջոցով որոշվել է հանրապետության արդյունաբերության
էլեկտրատեխնիկական, հաստոցաշինական, կահույքի, կոշիկի, մեքենաշինա-
կան և շինանյութերի մի շարք ձեռնարկությունների գործունեության օպտիմալ
ծրագիր՝ նյութական խթանման և պլանավորման նոր սիստեմի պայմաններ-
րում։

Հաշվարկման արդյունքները ցույց տվեցին, որ տարբեր ձեռնարկություն-
ներում արտադրական ռեզերվների օգտագործման հնարավորությունները և
դրանց օգտագործումից ստացվող արդյունքները տարբեր են։ Այդ պայմանա-
վորված է ձեռնարկությունների արտադրական տեղամասերի կարողություննե-
րի համապատասխանության աստիճանով, հիմնական ֆոնդերի կառուցվածք-
քով, ըստ ֆոնդերի տեսակների թողարկվող արտադրանքի ֆոնդատարությամբ,
ժողովրդական տնտեսության կողմից այդ արտադրանքների նկատմամբ
պահանջարկի աստիճանով և այլն։ Այդ է պատճառը, որ ուսումնասիրված
ձեռնարկություններում իրացվող պլանի և շահույթի աճը, ըստ օպտիմալ պլա-
նի, համապատասխանաբար, կազմում է 8—25 և 6—20 տոկոս։

Հանրապետության ԳԱ տնտեսագիտության ինստիտուտում մշակվեց
արդյունաբերության առանձին ճյուղերի և ճյուղերի խմբի օպտիմալ պլանա-
վորման տնտեսագիտական-մաթեմատիկական մոդել։ Առանձին ճյուղերի օպ-
տիմալ պլանավորման տնտեսագիտական մաթեմատիկական մոդելի հիման
վրա հաշվարկումներ կատարվեցին հանրապետության արդյունաբերության մե-
քենաշինության, հաստոցաշինության ճյուղերի տվյալներով։ Մեքենաշինու-
թյան ճյուղի համար հաշվարկումներ կատարվեցին ՍՍՀՄ ԳԱ հաշվողական
կենտրոնում «БЭСМ—2» ԷՀՄ-ի վրա, իսկ հաստոցաշինական ճյուղինը՝
ՍՍՀՄ պետպլանի գլխավոր հաշվողական կենտրոնում «Ուրալ—4» ԷՀՄ-ի մի-
ջոցով։ «Ուրալ—4» մեքենան քննարկեց պլանի 400-ից ավելի տարբերակներ
և հաջորդաբար բարելավելով ընտրեց լավագույնը։ Ընդ որում, պլանի յուրա-
քանչյուր տարբերակի քննարկման վրա մեքենան կորցնում էր 5 ժամ, այն
դեպքում, երբ դրա արագությունը հասնում է վայրկյանում 5—9 հազար գոր-
ծողության (կախված լուծվող խնդրի բարդությունից)։ Պլանի օպտիմալ տար-
բերակով ստացված միջոցառումների իրականացումը հնարավորություն կտա,
օրինակ, հաստոցաշինության արտադրանքի ծավալը, պլանայինի նկատմամբ,
ավելացնելու 91,4 տոկոսով, միաժամանակ ապահովելով 260,7 հազար ռուբլու
լրացուցիչ շահույթ։

Եթե ձեռնարկությունների գործունեության օպտիմալ պլանավորման տըն-
տեսագիտական մաթեմատիկական մոդելներում հաշվի են առնվում միայն
ձեռնարկության տարբեր տեղամասերի միջև եղած տնտեսական, տեխնոլոգիա-
կան և այլ կապերը, ապա ճյուղային մոդելներում այդ կապերի հետ միաժա-
մանակ հաշվի են առնվում ճյուղի ձեռնարկությունների միջև գոյություն ունե-
ցող տեխնիկա-տնտեսական կապերը։ Պլանավորման և նյութական խթանման
նոր սիստեմի պայմաններում ճյուղային մոդելների օգտագործումն ավելի մեծ
արդյունք է տալիս։

Արդյունաբերության խումբ ճյուղերի օպտիմալ պլանավորման մոդելով հաշվարկներ են կատարվել հանրապետության մեքենաշինական, էլեկտրատեխնիկական ճյուղերի, շինանյութերի, կահույքի ու կոշիկի արդյունաբերության տվյալներով «Հրազդան—2» և «Հրազդան—3» էլեկտրոնային հաշվիչ մեքենաների վրա։ Այս մոդելը, նախորդների համեմատությամբ, այն առավելությունն ունի, որ հնարավորություն է ընձեռում ձեռնարկությունների և ճյուղերի օպտիմալ պլանների հաշվարկման ժամանակ հաշվի առնելու տնտեսության առանձին ճյուղերի միջև գոյություն ունեցող տեխնիկա-տնտեսական կապերը, դրանց փոփոխման հնարավորությունները և զարգացման առդյունավետ ուղիները։ Ստացված արդյունքները ցույց տվեցին, որ շինանյութերի տեղափոխման օպտիմալ պլանի օգտագործման դեպքում, հանրապետության շինանյութերի տեղափոխման փաստացի պլանի նկատմամբ, խնայողությունը կավելանա 12,25 տոկոսով, կահույքի արդյունաբերության իրացվող արտադրանքի ծավալը՝ 15,2, իսկ շահույթը՝ 10,3 տոկոսով։ 1965 թվականին տնտեսագիտության ինստիտուտում հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թթ. ճյուղային կտրվածքով պլանը կազմելու համար օգտագործվեց «Հրազդան—2» էլեկտրոնային հաշվիչ մեքենան, որը ստուգելով պլանի 33122 տարբերակներ՝ ընտրեց 18 լավագույնը, ծախսելով 1,5 մեքենայական ժամ, կատարվեց 27 միլիոն գործողություն։ Այդ աշխատանքըն ավտոմատ արիֆմոմետրի վրա կատարելու համար կպահանջվեր ավելի քան 90 մարդ տարի։

ՍՍՀՄ ԳԱ կենտրոնական տնտեսագիտական մաթեմատիկական ինստիտուտի հետ միասին ՀՍՍՀ ԳԱ տնտեսագիտության ինստիտուտում ավարտվեց հանրապետության ժողովրդական տնտեսության հեռանկարային զարգացման պլանի որոշման առաջին էտապը։ Այն քննարկվեց ՀՍՍՀ ԳԱ նախագահության և ՍՍՀՄ ԳԱ օպտիմալ պլանավորման և կառավարման սովետի կողմից և արժանացավ բարձր գնահատականի։ Ընթացիկ տարում կավարտվի այդ աշխատանքի երկրորդ էտապը, որ իր մեջ ընդգրկում է հանրապետության ժողովրդական տնտեսության խոշորացված ցուցանիշների հաշվարկումն արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության ճյուղերի կտրվածքով հեռանկարում։

Բացի դրանից, ինստիտուտում աշխատանքներ են կատարվում մաթեմատիկական ծրագրավորման կիրառման օգնությամբ որոշելու հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման ամենահավանական միջակայքը հեռանկարում։ Այդ հարցի լուծումը հանգեցվել է ստոխաստիկ ծրագրավորման խնդրին, որի լուծումից ստացվում է ժողովրդական տնտեսության այն հիմնական ցուցանիշների միջակայքը, որոնք ապահովում են հանրային արտադրության մաքսիմալ արդյունավետություն։ Հաշվարկման արդյունքում ստանում ենք.

1. Ժողովրդական տնտեսության ճյուղերի համախառն և վերջնական արտադրանքների, ներդրվող հիմնական ֆոնդերի այնպիսի ծավալներ, որոնք ապահովում են հասարակական արտադրության օպտիմալ աճ։ 2. Ժողովրդական տնտեսության մեջ աշխատանքային, նյութական, ֆինանսական և բնական ռեսուրսների պահանջարկը և դրանց օպտիմալ օգտագործումն ըստ ճյուղերի։ 3. Կապիտալ ներդրումների գոյացման աղբյուրները և դրանց օպտիմալ օգտագործումն ըստ ճյուղերի։



Այդ մեծությունների որոշման ժամանակ հաշվի են առնվում հանրապետությունում արտադրության մեջ ստեղծված իրավիճակը և դրա փոփոխության հնարավորությունները, ժողովրդական տնտեսության զարգացման հաշվեկշռվածության պայմանը, հանրապետության ժողովրդական տնտեսության կապերն այլ տնտեսական շրջանների հետ, ժողովրդական տնտեսության մեջ առկա հիմնական ֆոնդերի, բնական և աշխատանքային ռեսուրսների ծավալը, դրանց օգտագործման մակարդակը և հետագա փոփոխման հնարավորությունները, վերջնական արտադրանքի արտադրության ու ընթացիկ ծախսումների միջև եղած կապը, կապիտալ ներդրումների օգտագործման մակարդակը և այլն։

Ներկայումս աշխատանքներ են տարվում որոշելու հանրապետության ժողովրդական տնտեսության հեռանկարային զարգացման պլանը՝ 27 ճյուղի կտրվածքով, ըստ մշակված մոդելի։ Բացի դրանից, ինստիտուտը բավական աշխատանքներ է կատարում արդյունաբերական ձեռնարկությունների համար։ 1966—1970 թթ. միայն մաթեմատիկական բաժնի մշակած աշխատանքներից յոթը կիրառվել են հանրապետության կոշիկի, շինանյութերի և մեքենաշինության ձեռնարկություններում։ Այսպես, հանրապետության կոշիկի «Մասիս» ֆիրմայի պահանջով 1970 թ. մշակվել է կոշտ կաշվի օպտիմալ օգտագործման տարբերակի ընտրության տնտեսագիտական մաթեմատիկական մոդելը։ Մշակված մոդելի համապատասխան (օրական, տասնօրյակի, ամսվա և տարեկան), թողարկվող 280-ից ավելի ասորտիմենտից և պահեստում եղած 52 տեսակ կաշվի պլանավորման ժամանակահատվածում եղած ծավալից որոշվել է կոշտ կաշվի օգտագործման այնպիսի պլան, որն ապահովի պահանջվող ասորտիմենտի թողարկումն ըստ տեխնոլոգիայի և կոշտ կաշվի ընդհանուր ծախսը հասցնի մինիմումի։ Հաշվումները ցույց են տվել, որ միայն 1970 թ. օպտիմալ պլանի ներդրումը կտար 400 հազար ռուբլու կոշտ կաշվի խնայողություն։ Ընթացիկ տարում բաժինը մաթեմատիկական մեթոդների օգնությամբ «Հրազդան—2» ԷՀՄ-ի միջոցով հանրապետության գունավոր մետալուրգիայի ինստիտուտի պահանջով հաշվումներ է կատարում՝ որոշելու ինչպես գունավոր մետաղների առանձին հանքավայրերի, այնպես էլ գունավոր մետալուրգիայի զարգացումը հանրապետությունում մինչև 1985 թվականը։ Բացի դրանից, Հայպետնախագծի պատվերով «Հրազդան—2» ԷՀՄ-ի միջոցով հաշվումներ են կատարվում հանրապետության տարբեր շրջաններում բարձրահարկ շենքերի կառուցման արդյունավետությունը և սեյսմոկայունությունը որոշելու համար։

ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում հատուկ տեղ է հատկացվում ժողովրդական տնտեսության համար բարձր որակավորում ունեցող մաթեմատիկոս, ինժեներ և տնտեսագետ կիբեռնետիկների պատրաստմանը։ Սակայն, պետական համալսարանի մեխանիկա-մաթեմատիկական ֆակուլտետի կիբեռնետիկայի բաժինն ավարտողների մակարդակը չի համապատասխանում ժողովրդական տնտեսության կողմից առաջադրվող նույնիսկ նվազագույն պահանջներին։

Տնտեսագիտական հետազոտություններում, ժողովրդական տնտեսության կառավարման և արտադրության պրակտիկայում կիբեռնետիկական մեթոդների կիրառումն ավելի արդյունավետ դարձնելու համար անհրաժեշտ է հանրապետության բարձրագույն ուսումնական հաստատություններում ավելի մեծ

տեղ հատկացվի կիբեռնետիկայի և տնտեսագիտության նորագույն նվաճումների ավանդմանը: Այն հնարավորություն կընձեռի բարձրացնելու մաթեմատիկոսների, ֆիզիկոսների և ինժեներների տնտեսագիտական, իսկ տնտեսագետների՝ մաթեմատիկական պատրաստականությունը, քանի որ նրանց համատեղ աշխատանքի դեպքում միայն կարելի է հասնել ցանկալի արդյունքի:

Բավական աշխատանքներ են կատարվել Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի համապատասխան ամբիոններում և պետական համալսարանի տրնտեսագիտական ֆակուլտետի կիբեռնետիկայի ամբիոնում (վարիչ՝ Վ. Կարաբեգով) գիտության նորագույն նվաճումների ավանդումը Միության առաջավոր բուհերի մակարդակին հասցնելու նպատակով: Սակայն նույնը չի կարելի ասել ֆիզիկայի ֆակուլտետի բարձրագույն մաթեմատիկայի ամբիոնի (վարիչ՝ Հ. Ներսիսյան) ու մեխանիկա-մաթեմատիկական ֆակուլտետի հաշվողական մաթեմատիկայի և կիբեռնետիկայի ամբիոնի (վարիչ՝ Ռ. Տոնոյան) աշխատանքների մասին: Այդ ամբիոնների առաջնահերթ խնդիրն է՝ ուսանողներին զինել հաշվողական մաթեմատիկայի, հաշվողական տեխնիկայի և գիտության այլ բնագավառներում ձեռք բերված նվաճումներով՝ օգտագործելով վերջին տարիներին լույս տեսած հայրենական հարուստ գրականությունը:

Կիբեռնետիկան գիտություն է օպտիմալ ղեկավարման մասին: Այն մեծ ապագա ունի: Ինչպես նկատում է ակադեմիկոս Ա. Ի. Բերգը, մենք կկառուցենք կոմունիզմ էլեկտրոնային հաշվիչ մեքենաների բազմակողմանի օգտագործման բազայի վրա, որոնք ժամանակի փոքր հատվածում մշակում են միծաքանակ արտադրական, տնտեսական և բիոլոգիական ինֆորմացիա:



# Վ. Ի. ԼԵՆԻՆԸ՝ ԻՐԱՎԱԲԱՆ

(Թռուցիկ ակնարկ)

Գ. Հ. ՂԱՐԱԽԱՆՅԱՆ

Իրավաբանական գիտությունների թեկնածու

Վլադիմիր Իլյիչ Լենինն իր հասարակական-քաղաքական գործունեության սկզբնավորման շրջանում զբաղվել է նաև փաստաբանական պրակտիկայով:

Առաջնորդի կենսագրությունից հայտնի է, որ տակավին 1887 թվականին, ոսկե մեդալով ավարտելով Սիմբիրսկի գիմնազիան, Վ. Ուլյանովը մտածում է ընտրել այնպիսի մասնագիտություն, որն իրեն լայն հնարավորություններ տար ավելի խոր ուսումնասիրելու աշխարհը, մասնավորապես ցարական ինքնակալության քաղաքական ու տնտեսական կյանքը: XIX դարի վերջում ցարական Ռուսաստանի բարձրագույն ուսումնական հաստատությունների միայն իրավաբանական և պատմության ֆակուլտետներում էին ուսումնասիրվում քաղաքական գիտություններ (ժողովուրդների, քաղաքական հոսանքների ու ուսմունքների պատմություն և այլն): Տասնյոթամյա Վլադիմիր Ուլյանովն անվարան ընտրում է իրավաբանի մասնագիտությունը, ընդունելության փայլուն քննություններ հանձնելուց հետո, 1887 թ., ընդունվում է Կազանի համալսարանի իրավաբանական ֆակուլտետը: Կազանի համալսարանում, սակյան, Լենինը սովորում է միայն երեք ամիս: Ուսանողական հեղափոխական շարժումներին ակտիվ մասնակցելու համար, դեկտեմբերի 4-ին, մի խումբ ընկերների հետ նա ձերբակալվում է և հեռացվում համալսարանից:

Հետագայում Լենինը շատ անգամ է դիմում ցարական կառավարությանն իրեն համալսարանում սովորելու հնարավորություն տալու խնդրով, բայց միշտ մերժվում է: Իր և մոր բազմաթիվ խնդրանքներից հետո միայն, 1890 թ. գարնանը, նրան հնարավորություն է ընձեռվում էքստեռն քննություններ հանձնելու Ս. Պետերբուրգի համալսարանի իրավաբանական ֆակուլտետում, որը փայլուն ավարտում է 1891 թ. հունվարին, ստանալով առաջին կարգի դիպլոմ:

1892 թ. սկզբներից Լենինն աշխատում է Սամարայի օկրուգային դատարանում, որպես երդվյալ հավատարմատարի օգնական: Այսպիսով, նրա իրավաբանական պրակտիկ գործունեությունն սկսվում է փաստաբանի աշխատանքով: Այդտեղ նրա կոլեգան էր հայտնի փաստաբան Ա. Խարդինը, որը Սամարայի նահանգային տեղական դատական վարչության նախագահի պոստից ա-

զատվել էր «անբարեհուսության» համար։ Խարդինը նկատում է երիտասարդ Ուլյանովի արտակարգ ընդունակությունները և նրան հանձնարարում պաշտպանական լուրջ գործեր։

Մեկ և կես տարի Սամարայում, ապա երկու տարի Պետերբուրգում Լենինն զբաղվում է փաստաբանական պրակտիկայով։ Նույնիսկ այն տարիներին, երբ Ուլյանովների ընտանիքը նյութական ծանր կացության մեջ էր, իրավաբանի աշխատանքը նրա հիմնական գործը չի դառնում։ Իր հուշերում Լենինի զինակից Ի. Լալայանցը գրել է. «Ծառայելով իբրև երդվյալ հավատարմատարի օգնական, Վլադիմիր Իլյիչը, սակայն, Սամարայում քիչ էր զբաղվում իրավաբանական պրակտիկայով. նրան գրավում էր ոչ թե այդ, այլ հեղափոխական աշխատանքը, հեղափոխական մարքսիզմի տեսության ու պրակտիկայի ասպարեզում աշխատելը» (Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին, գիրք 1, Երևան, 1957 թ., էջ 137—138)։

Չնայած փաստաբանական կարճատև գործունեության, Լենինը դրսևորեց բացառիկ հռետորական ունակություններ, համակողմանի գիտելիքներ։ Հայտնի է, որ նրա հռետորական և բանավիճելու ունակությունները երևան են եկել վաղ հասակից։ Այդ նկատել են ո՛չ միայն նրա համախոհները, այլև գաղափարական հակառակորդները։ 1892 թ. Սամարայում հայտնի նարոդնիկ ու ճանաչված հռետոր Ն. Կ. Միխայլովսկին բանավեճի է բռնվում տեղի մարքսիստների հետ՝ Ռուսաստանում սոցիալիզմի զարգացման ուղիների մասին։ Միխայլովսկու ընդդիմախոսն էր Վ. Ուլյանովը, որի տաղանդի ու գիտելիքների մասին նա հիացմունքով է արտահայտվել։ Նարոդնիկների լիդերը նկատել է, որ Վ. Ուլյանովը բացառիկ ընդունակ մարդ է, ուժեղ պոլեմիստ, օժտված մտքի պարզությամբ, տրամաբանությամբ, քննարկվող նյութի խոր ու բազմակողմանի իմացությամբ։

Աշխատանքը ցարական դատարանում Լենինին հնարավորություն ընձեռեց մոտիկից ուսումնասիրելու հասարակ մարդկանց կյանքը, նրանց փոխհարաբերությունները։ Այստեղ նրա համար ավելի ակնհայտ դարձավ ցարական դատարանի շահագործողական էությունը։

Բազմիցս երիտասարդ փաստաբան Վ. Ուլյանովը դատավարություններում հանդես է եկել քրեական ու քաղաքացիական գործերի առիթով։ Փաստաբանական գործունեության սկզբնական շրջանում նա ավելի շատ է մասնակցել դատավարություններին, քան հետագայում։

Առաջին անգամ Վ. Ի. Լենինը որպես փաստաբան հանդես է եկել 1892 թ. մարտի 5-ին, դերձակ Մուլենկովի գործով։ Մուլենկովը մեղադրվել է «աստծուն անարգելու» մեջ։ Նա «հայհոյել է աստծուն, աստվածամորը և սուրբ երրորդությանը», ապա նույն «պատվին» արժանացրել «միապետ կայսրին և նրա ժառանգներին», ասելով, թե՝ «միապետը ճիշտ չի կառավարում»։ Ցարական օրենքով ծանր պատիժ էր նախատեսվում նման արարքի համար, բայց Վ. Ուլյանովը հասնում է այն բանին, որ Մուլենկովն ազատազրկվում է ընդամենը մեկ տարի ժամանակով։

1893 թ. աշնանը Լենինը փոխադրվում է Պետերբուրգ՝ բանվորական շարժման կենտրոնը։ 1893 թ. սեպտեմբերի 3-ին նա երդվյալ հավատարմատարի օգնական է դառնում առաջադեմ հայտնի փաստաբան Մ. Ֆ. Վոլկենշտեյնի մոտ։ Վերջինս հատկապես քաղաքական դատավարություններում աչքի էր ընկնում իր ելույթներով։



Դժբախտաբար Լենինի փաստաբանական գործունեության պետերբուրգյան շրջանի գործերը նույնպես արխիվում չեն պահպանվել։ Սակայն ժամանակակիցների հուշերում հավաստի շատ փաստեր կան։

Օ. Լեպեշինսկայան իր հիշողություններում նկարագրել է, թե ինչպես 1894 թ. առաջին անգամ հանդիպել է Լենինին մի անլեգալ ժողովում, Ռուսաստանի «երիտասարդության ուսուցիչ» Պ. Ստրուվեի հետ բանավիճելիս։ Բանավեճից հետո հավաքվածներից լսվում էր նոր հռետորի անունը. «Դա Ուլյանովն է, երիտասարդ փաստաբանը» (Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին, գիրք 1, էջ 216)։

Այդ շրջանում Լենինը հիմնականում զբաղված էր «Բանվոր դասակարգի ազատագրման պայքարի միության» հիմնադրմամբ։ 1895 թ. դեկտեմբերին նա ձերբակալվում է իր զինակիցների հետ միասին։ Բայց նրա կոլեգաները՝ պետերբուրգյան փաստաբանները, համարձակ փորձեր են անում նրան ազատելու։ Չնայած Լենինը մեղադրվում էր «պետական հանցագործության» ծանր մեղադրանքով, բայց և այնպես պետերբուրգյան դատական պալատի երդվյալ հավատարմատարների խորհրդի նախագահ Վ. Ի. Լյուստրիխը նամակով դիմում է ոստիկանության դեպարտամենտի դիրեկտոր Զվոլյանսկուն, խնդրելով ազատել Վ. Ի. Ուլյանովին։ Այդ նամակով Լյուստրիխը հայտնում է, որ նույն կարծիքին են նաև մյուս փաստաբանները, իսկ փաստաբան Մ. Ֆ. Վոլկենշտեյնը պատրաստակամություն է հայտնում հանդես գալու որպես երաշխավոր։ Սակայն Զվոլյանսկին իր 1896 թ. հունիսի 12-ի նամակով մերժում է նրանց խնդիրքը, և 1897 թվականի հունվարի 29-ին Լենինն արտաքսվում է Սիբիր։

Իր հիշողություններում Ն. Կ. Կրուպսկայան գրում է, որ, նույնիսկ Սիբիրում, Լենինը կիրակի օրերը իր մոտ իրավաբանական կոնսուլտացիա էր հրավիրում։ «Նա, որպես իրավագետ, մեծ ժողովրդականություն էր վայելում, որովհետև ոսկեհանքերից քշված մի բանվորի օգնել էր ոսկի արդյունաբերողի դեմ հարուցած գործը շահելու» (Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին, գիրք 1, էջ 111)։ Այնուհետև, Ն. Կրուպսկայան հիշում է. «Գալիս էին գյուղացիներ, գեղջկուհիներ և իրենց ցավերը պատմում։ Վլադիմիր Իլյիչը ուշադիր լսում էր, թափանցում ամեն բանի խորքը և հետո խորհուրդներ տալիս։ Մի անգամ մի գյուղացի քսան վերստ ճանապարհ կտրելով՝ եկել էր խորհուրդ հարցնելու, թե ինչպե՞ս պատժի իր փեսային, որն իրեն չի կանչել հարսանիք, որտեղ լավ քեֆ են արել... Վլադիմիր Իլյիչը համարյա մի ժամ կորցրեց, որ այդ գյուղացուն համոզի փեսայի հետ հաշտվել»։ Այնուհետև՝ «Հաճախ բավական էր, որ տուժողը սպառնար, թե կգանգատվի Ուլյանովին, որպեսզի վիրավորողը զիջեր» (Նույն տեղը, էջ 111—112)։

Իր փաստաբանական գործունեության առաջին իսկ օրերից երիտասարդ Լենինն աչքի է ընկնում ցարական Ռուսաստանի օրենսդրության փայլուն իմացությամբ, իրեն վստահած վեճերի լուծման ժամանակ ցուցաբերվող բացառիկ օբյեկտիվությամբ։ Այդ էր պատճառը, որ նրան էին դիմում ընչազուրկ ու թշվառ մարդիկ— սևագործ բանվորներ, չքավոր գյուղացիներ, արհեստավորներ, մանր չինովնիկներ։ Լենինն ընչազուրկների իրավունքներն ու շահերը պաշտպանում էր անվճար։ Միաժամանակ, նա խուսափում էր մասնակցել այնպիսի գործերի, երբ մարդիկ մեղադրվում էին խարդախության, ինքնիրավչության կամ ստոր դրդումներով կատարված այլ հանցագործությունների մեջ։

Այս և նման հանգամանքները շուտով Լենինի համար ստեղծեցին մեծ հեղինակություն ու ժողովրդականություն՝ հատկապես Սամարայի բնակչության չունևոր մասի շրջանում։ Այս հանգամանքը չէր կարող չստվերել քաղաքի մյուս անվանի փաստաբաններին։ Եղել են դեպքեր, երբ ամբաստանյալները, նրանք, ովքեր մեղադրվել են այս կամ այն հանցագործությունների մեջ, վճռաբար հրաժարվել են դատարանի կողմից նշանակված անվանի դատապաշտպանների ծառայությունից և պահանջել, որպեսզի իրենց շահերը պաշտպանի «երիտասարդ օգնականը» (այսինքն՝ երիտասարդ փաստաբանը) և ոչ մեկ ուրիշը։ Այսպես են վարվել, օրինակ, յոթ գյուղացի, որոնց հանցանքը ծանր էր համարվում։ Լենինն այդ առթիվ հայտնել է՝ «Ամբաստանյալներ Տիշկինի, Զորինի, Ուժդինի, Զայցևի, Կրասիլնիկովի, Գայսկու, Մուլենկովի պաշտպանության պարտականությունները ինձ վրա վերցնելուն համաձայն եմ»։

Սևագործ բանվոր Մ. Բամբուկովին, 1892 թ. հունիսի 5 (17)-ին, Սամարայի օկրուգային դատարանը դատել է հագուստեղեն գողանալու համար։ Դատապաշտպան Ուլյանովը կարողանում է դատարանին համոզել, որ ամբաստանյալը հանցագործությունը կատարել է իրոք ծայրահեղ կարիքից դրդված, քանի որ ո՛չ միայն հագնելու, այլև սնվելու միջոցներ չի ունեցել։ Դատարանը կիրառում է պատժի մինիմալ չափը՝ Բամբուկովին տեղափոխում է ուղղիչ-կալանավորական բաժանմունք՝ մեկ տարի ժամանակով։

Մեկ ուրիշ գործ. բանվոր Վ. Սաղլուխը և տասներեքամյա մի անգրագետ պատանի՝ Ս. Ռեպինը, մեղադրվում են վաճառական Կորշունովից մոտ 9 ռուբլու զանազան իրեր գողանալու համար։ Համաձայնելով երդվյալ հավատարմատարի օգնական Վ. Ուլյանովի փաստարկների հետ, դատարանը որոշում է արդարացնել մեղադրյալներին։

Ինչպես հայտնի է, Լենինը չէր հանդուրժում վարչարարությունը և ինքնիրավությունը։ Նա բազմիցս նշել է, որ մեր ընդհանուր գործին շատ կարող է վնասել ամեն կարգի վարչարարություն, իշխանության ու լիազորությունների չարաշահում։

Սամարայի օկրուգային դատարանի երդվյալ հավատարմատարի օգնական քսաներկուամյա Լենինը, տեսնելով, որ հարուստ վաճառական Արեֆևը բացահայտ կամայականությամբ ու ինքնիրավությամբ է զբաղվում, կարողանում է մեկ ամսով բանտարկել տալ նրան։ Ինքնիրավության համար, Ռուսաստանում գործող օրենքով, նախատեսվում էր բանտարկություն՝ առանց տուգանքով փոխարինման։ Չնայած գործի բացարձակ պարզության, զեմստվոյի պետը, զանազան պատրվակներով, երկու անգամ հետաձգում է գործերի քննությունը։ Ապա այն նշանակում է Սիզրանից ոչ հեռու գտնվող մի ինչ-որ վայրում։ Չնայած խիստ ցրտերին, Սիզրան հասնելու անտանելի դժվարություններին, մոր հորդորներին՝ «Ձեռք քաշելու այդ վաճառականից», Վ. Ի. Լենինն առարկում է, ասելով. «Ո՛չ, քանի որ գործն արդեն սկսել եմ, պետք է հասցնեմ մինչև վերջ»։ Ինչպես վկայում է Դ. Ուլյանովը, զեմստվոյի պետին չի հաջողվում երրորդ անգամ հետաձգել գործի լուծումը և, կամա թե՛ ակամա, հարկադրված է լինում պատժել Արեֆևին։

Այդ, իր ժամանակին չլսված-չտեսնված միջադեպը հիացնում է ո՛չ միայն Սամարայի բնակիչներին։

Տիրապետելով օրենսդրությանը, Լենինը քրեական և քաղաքացիական դատավարություններում վարպետորեն վեր էր հանում ճշմարտությունը և միաժամանակ բացահայտում ցարական օրենսդրության արատավոր կողմերը։ Լենինի չորսամյա փաստաբանական պրակտիկան զգալիորեն նպաստեց նրա հետագա հեղափոխական գործունեությանը։



Հետհոկտեմբերյան շրջանում սովետական առաջին սահմանադրությունները, դեկրետները և առաջին օրենսգրքերը կազմվել են Լենինի անմիջական ղեկավարությամբ ու մասնակցությամբ։ Կառավարության նախագահը մշակել ու խմբագրել է բազմաթիվ օրինագծերի ու օրենսգրքերի նախագծերը, հանդես գալով որպես խոշոր իրավագետ։

ՌՍՖՍՀ արդժողկոմ Դ. Ի. Կուրսկուն ուղարկած նամակներում և գրություններում, Լենինն այնպիսի դիտողություններ ու առաջարկություններ է արել հանրապետության քաղաքացիական, աշխատանքային, քրեական, ամուսնա-ընտանեկան օրենսգրքերի նախագծերի առթիվ, որպիսին կարող էր անել միայն պրոլետարական պետության և հեղափոխական օրինականության ու իրավունքի մեծ գիտակը։ Միութենական հանրապետությունների գործող քաղաքացիական օրենսգրքերում գրեթե նույնությամբ արտացոլվել է 1922 թ. ՌՍՖՍՀ առաջին քաղաքացիական օրենսգրքի նախագծի 30-րդ հոդվածի՝ Լենինի սահմանած նորմը, որ պետք է անվավեր համարել բոլոր այն քաղաքացիական-իրավական գործարքները, որոնք կնքվում են սոցիալիստական պետության ու հասարակության շահերին ակնհայտ հակասող նպատակներով։ Բազմաթիվ են նաև Լենինի անմիջական դիտողությունները մյուս օրենսգրքերի նախագծերի, ինչպես նաև սովետական դատարանի ու դատախազության կազմակերպական գործունեության առթիվ։

1922 թ. կուսակցության քաղբյուրոյին ուղարկած իր հայտնի նամակում՝ ««Երկակի» ենթակայության և օրինականության մասին», Վ. Ի. Լենինն ուղղակի նշել է. «Օրինականությունը չի կարող լինել Կալուգայի և Կազանի, այլ պետք է լինի միասնական համառուսաստանյան և նույնիսկ միասնական՝ սովետական հանրապետությունների ողջ ֆեդերացիայի համար»։

Սովետական դատարանն ու դատախազությունը կազմել և գործում են լենինյան հանճարեղ նախանշումների հիման վրա։ Սովետական օրենսդրությունն ու իրավական գիտությունը զարգանում, կատարելագործվում են՝ ելակետ ունենալով լենինյան գաղափարներն ու դրույթները սոցիալիստական պետության և իրավունքի վերաբերյալ։



# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՆՅՈՒԹԵՐԻՆ ՆՎԻՐՎԱԾ ԴԱՍԱԽՈՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ, ԶԵԿՈՒՅՑՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՕՐԻՆԱԿԵԼԻ ԹԵՄԱՏԻԿԱ

ՍՄԿԿ XXIV համագումարը պատմական ուղենիշ է կոմունիզմի ճանապարհին.

ՍՄԿԿ XXIV համագումարը ՍՍՀՄ միջազգային դրության և ՍՄԿԿ արտաքին քաղաքականության մասին.

Սովետական Միության պայքարը խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար, իմպերիալիստական ագրեսիայի քաղաքականության դեմ.

Սոցիալիզմի միջազգային սիստեմի հաղթանակների համաշխարհային-պատմական նշանակությունը.

ՍՄԿԿ XXIV համագումարը՝ սոցիալիստական միջպետական կապերի մասին.

Սոցիալիստական երկրների տնտեսական ինտեգրացիան որպես համաշխարհային սոցիալիստական սիստեմի հետագա ամրապնդման կարևոր ուղի.

Սոցիալիզմի երկրների բազմակողմանի համագործակցությունը և դրա նշանակությունը ժամանակակից պայմաններում.

Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի ժամանակակից էտապը և համաշխարհային հեղափոխական պրոցեսը.

Հակաիմպերիալիստական պայքարն արդի էտապում.

Միջազգային իմպերիալիզմը ժողովուրդների ու առաջադիմության թշնամին է.

Ժամանակակից ազգային-ազատագրական շարժման դերն ու տեղը հակաիմպերիալիստական պայքարում.

Սովետական Միության քաղաքական և տնտեսական կապերի ընդլայնումը երիտասարդ ազգային պետությունների հետ.

ՍՄԿԿ պայքարը համաշխարհային սոցիալիստական և բանվորական շարժման միասնության և համախմբվածության ամրապնդման համար.

Հակակոմունիզմի և հակասովետիզմի դեմ մղվող պայքարը համաշխարհային հեղափոխական շարժման հրատապ խնդիրն է արդի էտապում.

ՍՄԿԿ XXIV համագումարը ռևիզիոնիզմի և նացիոնալիզմի դեմ մղվող պայքարի ուժեղացման անհրաժեշտության մասին.

ՍՄԿԿ պայքարը չինական ղեկավարների հակասովետական, քայքայիչ կուրսի դեմ.

ՍՄԿԿ XXIV համագումարի կողմից առաջ քաշված ծրագիրը հանուն խաղաղության և միջազգային համագործակցության.

ՍՍՀՄ-ում կոմունիզմի կառուցումը մեր ժողովրդի ինտերնացիոնալ մեծ պարտքն է.

Սովետական հասարակության զարգացման հիմնական արդյունքները ՍՄԿԿ XXIII և XXIV համագումարների միջև ընկած ժամանակամիջոցում.

Երկրի տնտեսական զարգացման արդի էտապի առանձնահատկությունները և իններորդ հնգամյակի հիմնական խնդիրները.

ՍՄԿԿ XXIV համագումարը՝ իններորդ հնգամյակի գլխավոր խնդրի մասին.

Սովետական ժողովրդի բարեկեցության աճը կուսակցության տնտեսական քաղաքականության բարձրագույն նպատակն է.

Ծանր ինդուստրիան երկրի տնտեսական հզորության, ժողովրդի բարեկեցության հետագա աճի հիմքն է.

ՍՄԿԿ XXIV համագումարը գյուղատնտեսության հետագա զարգացման մասին.

ՍՄԿԿ XXIV համագումարը սպառման ապրանքների արտադրության աճի մասին.

Հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը երկրի տնտեսական զարգացման հիմնական հարցն է.

Աշխատանքի արտադրողականության աճի արագացումը հնգամյակի կարևոր խնդիրն է.

Ժողովրդական տնտեսության կառավարման կատարելագործումը կուսակցության տնտեսական քաղաքականության հանգուցային հարցերից մեկն է.

Արտադրության ռեզերվների օգտագործման բարելավումը և տնտեսական ռեժիմի ուժեղացումը համաժողովրդական կարևորագույն խնդիր են.

ՍՄԿԿ XXIV համագումարը արտադրության կառավարմանը աշխատավորների մասնակցության ընդլայնման մասին.

ՍՄԿԿ XXIV համագումարը սոցիալիստական մրցության և աշխատավորների ստեղծագործական ակտիվության մասին.

Սովետական հասարակության սոցիալ-քաղաքական զարգացման հիմնական արդյունքները և կուսակցության հերթական խնդիրները.

ՍՄԿԿ XXIV համագումարը սովետական հասարակության սոցիալական միասնության ամրապնդման մասին.

ՍՄԿԿ XXIV համագումարը ազգային հարաբերությունների ասպարեզում կուսակցության խնդիրների մասին.

ՍՄԿԿ XXIV համագումարը սովետական ժողովրդի՝ որպես մարդկանց նոր, պատմական ընդհանրության մասին.

Կուսակցության և ժողովրդի միասնությունը սովետական հասարակության անխորտակելի ուժի աղբյուրն է.

ՍՄԿԿ XXIV համագումարը սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման ուղիների մասին.

ՍՄԿԿ XXIV համագումարը կոմունիզմի կառուցման գործում աշխատավորների դեպուտատների սովետների դերի բարձրացման մասին.

Սովետական օրենսդրության կատարելագործումը և սոցիալիստական օրինականության ամրապնդումը սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման կարևոր պայմանն են.

ՍՄԿԿ XXIV համագումարը երկրի հասարակական-քաղաքական կյանքում կոմերիտմիության դերի մասին.

Սոցիալիստական դեմոկրատիայի սիստեմում արհմիությունները կարևոր օղակ են.

ՍՄԿԿ հոգատարությունը երկրի պաշտպանունակության ամրապնդման նկատմամբ.

Կոմունիզմի կառուցման ընթացքում նոր մարդու ձևավորումը կուսակցության գլխավոր խնդիրներից մեկն է.

ՍՄԿԿ XXIV համագումարը կուսակցության գաղափարական աշխատանքի մասին.

Աշխատավոր մասսաների գաղափարական համոզվածության ամրապնդումը կուսակցության գաղափարախոսական աշխատանքի հիմնական ուղղությունն է.

Աշխատանքի և հասարակական սեփականության նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի արմատավորումը գաղափարական-քաղաքական աշխատանքի կարևորագույն բաղկացուցիչ մասն է.

ՍՄԿԿ XXIV համագումարը հասարակական-քաղաքական կյանքում, մարդկանց կոմունիստական դաստիարակության ասպարեզում աշխատանքային կոլեկտիվի դերի մասին.

ՍՄԿԿ XXIV համագումարը տնտեսական-կազմակերպական և գաղափարական-դաստիարակչական աշխատանքի միասնության մասին.

ՍՄԿԿ XXIV համագումարը կոմունիզմի կառուցման գործում գիտության դերի մասին.

ՍՄԿԿ XXIV համագումարը կուսակցական շինարարության խնդիրների մասին.

ՍՄԿԿ XXIV համագումարը ներկուսակցական դեմոկրատիայի զարգացման և կոմունիստների հասարակական-քաղաքական ակտիվության աճի մասին.

Գիտական կոմունիզմի ուսմունքի զարգացումը ՍՄԿԿ XXIV համագումարի կողմից.

Կուսակցության մասին լենինյան ուսմունքի զարգացումը ՍՄԿԿ XXIV համագումարի կողմից.

ՍՄԿԿ ղեկավար դերի աճը կոմունիզմի կառուցման գործում.

ՍՄԿԿ XXIV համագումարի միջազգային նշանակությունը:

**«Партийная жизнь»**, № 8, апрель, 1971 г.

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹՅԱՆ ՈԳՈՎ

Ս. Գ. ՍԱՂԱԹԵԼՅԱՆ

*Ժամանակակից պայմաններում, երբ աշխարհում ավելի է սրվում սոցիալիզմի և իմպերիալիզմի միջև մղվող գաղափարական պայքարը, Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը մեծ նշանակություն է տալիս սոցիալիստական հայրենիքի պաշտպանական հզորության ամրապնդմանը, սովետական մարդկանց հայրենասիրության ոգով դաստիարակմանը։*

*Անդրադառնալով այդ հարցին՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXIV համագումարում ասաց. «Վերջին տարիներս մեզանում զգալի աշխատանք է տարվել սովետական մարդկանց մեջ իրենց հայրենիքի, իրենց ժողովրդի համար, նրա վիթխարի մեծագործությունների համար հպարտության զգացմունք, իրենց երկրի անցյալի արժանավոր էջերի նկատմամբ հարգանքի զգացմունք դաստիարակելու ասպարեզում»։*

*Հայաստանի կուսակցական կազմակերպությունները ևս իրենց ամենօրյա գաղափարական-քաղաքական գործունեության մեջ լուրջ ուշադրություն են նվիրում այդ կարևոր բնագավառին։ Յուրաքանչյուր քաղաքացու հայրենասիրական զգացմունքը, կոմունիստական համոզվածությունն ամրապնդելու համար նրանք գործի են դնում գաղափարական-քաղաքական աշխատանքի արդյունավետ նոր ձևեր ու միջոցներ։*

*ՀԿԿ Երևանի, Լենինականի, Կիրովականի քաղաքային կոմիտեները, Անիի, Իջևանի, Արտաշատի, Սիսիանի, Թումանյանի, Արթիկի, Ստեփանավանի, Էջմիածնի և մի շարք այլ շրջկոմներ մշտապես ուշադրության կենտրոնում են պահում աշխատավորների հայրենասիրական դաստիարակության գործը։ Պլենումների, բյուրոների նիստերում նրանք քննարկում են դրա հետ կապված հարցեր, կիրառում տարբեր միջոցառումներ։*

*Հերոսական գործերի պրոպագանդումը երիտասարդության շրջանում սեր է պատվաստում այն մարդկանց հանդեպ, ովքեր իրենց կյանքն անմնացորդ նվիրաբերել են սոցիալիստական կարգերի ստեղծմանն ու ամրապնդմանը, մեր հայրենիքի ազատության ու անկախության, մեր երկրի բարգավաճման վեհ ու սրբազան գործին։ Այն արտահայտվում է Հոկտեմբերյան հեղափոխության, քաղաքացիական կռիվների ու Հայրենական մեծ պատերազմի հերոսական օրերի դրվագներն արտացոլող նյութերի պրոպագանդմամբ։ Այդ տեսակետից կարևոր դեր են խաղում հասարակական հիմունքներով գործող թանգարաններն ու ակումբները։ Միայն վերջին մի քանի տարիներին հանրապետության արտադրական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում և սովխոզներում, ուսումնական հաստատություններում ստեղծվել են հեղափոխական, մարտական, աշխատանքային փառքի, ինտերնացիոնալ բարեկամության ավելի քան հազար թանգարան, լենինյան սենյակ և անկյուն։ Դրանց հարուստ նյութերը լայնորեն օգտագործվում են թեմատիկ երեկոներ կազմակերպելիս։ Նորօրյա այս օջախներում հանդիսավոր պայմաններում աշակերտներին ընդունում են պիոներական կազմակերպության շարքերը, երիտասարդներին հանձնում կոմերիտական տոմսեր, անցկացնում կոմերիտական ժողովներ, կազմակերպում հերոսական իրադարձություններին, նշանավոր տարեթվերին նվիրված երեկոներ։*

*ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ «Հավանության են արժանի մեր երիտասարդության այնպիսի նախաձեռնություններ, ինչպիսիք են մասսայական արշավների անցկացումը հեղափոխական, մարտական ու աշխատանքային փառքի վայրերով...»։ Կուսակցության կողմից արժեքավորված նման նախաձեռնություններ են ծնվել նաև մեր հանրապետությունում։ Հայաստանի կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները պարբերաբար կազմակերպում են երիտասարդական արշավներ դեպի սովետական ժողովրդի հեղափոխական, մարտական և աշխատանքային փառքի վայրերը։ Ավելի քան 150 հազար երիտասարդներ անցել են հեղափոխական և մարտական փառքի երթուղիներով։ Նրանք եղել են այն վայրերում, որտեղ Մայիսյան ապստամբության մասնակիցները հերոսաբար մարտնչել են սովետական կարգերի համար։ Երիտասարդական ջոկատներն անցել են 11-րդ կարմիր բանակի, կարմիր պարտիզանների հետքերով, այցելել այն քաղաքներն ու գյուղերը, որտեղ մարտնչել են 89-րդ Թամանյան դիվիզիայի մարտիկները։ Այդ արշավների նշանաբանն էր՝ «Ոչ ոք չի մոռացվում, ոչինչ չի մոռացվում»։*

*Դաստիարակչական մեծ նշանակություն ունի մարտական փառքի երեկոների անցկացումը։ Դա խանդավառություն է առաջացնում երիտասարդության շրջանում, բորբոքում նրանց հայրենասիրության զգացումը։ Խոշոր իրադարձություն էր սովետական բանակի կենտրոնական թանգարանից վեց մարտական դրոշներ Հայաստան բերելը։ Դրանք կապված են հայ ժողովրդի ազատագրության համար մղված մարտերին մասնակցած ստորաբաժանումների անվան ու պատվի հետ։ Դրոշները ցուցադրվեցին հանրապետության գրեթե բոլոր քաղաքներում ու շրջկենտրոններում անցկացված մարտական փառքի երեկոներում, որտեղ հուշերով հանդես եկան քաղաքացիական և Հայրենական մեծ պատերազմի վետերանները, մեծ թվով երիտասարդների հանդիսավոր կերպով հանձնվեցին կոմերիտական տոմսեր։ Այդ երեկոներին մասնակցեց ավելի քան 40 հազար երիտասարդ։ Բնական է, որ նման միջոցառումները կնպաստեն սովետական մարդկանց, հատկապես երիտասարդության, հայրենասիրական դաստիարակությանը, նրանց կմղեն աշխատանքային ու մարտական խիզախումների։*

*Սովետական կարգերի ստեղծման, մեր հայրենիքի պաշտպանության համար մղված մարտերում իրենց անունները փառքով պսակված մարդիկ լուսավոր հետք են թողել սերունդների սրտերում։ Մեր երկրում նրանց հիշա-*

տակը հավերժացվում են զանազան ձևերով։ Նրանց անունները ոգեշնչման աղբյուր են աշխատավորների համար։ Երևանի, Լենինականի, Կիրովականի արդյունաբերական ձեռնարկություններում լայն տարածում է գտել կոլեկտիվների մրցությունը հեղափոխության ականավոր գործիչների, քաղաքացիական և Հայրենական մեծ պատերազմի, սոցիալիստական աշխատանքի հերոսների անվամբ կոչվելու համար։ Այսպես, Երևանի ալյումինի գործարանի դիրեկցիան, կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները, կոլեկտիվի անդամներին ոգևորելու և մոբիլիզացնելու նպատակով, հիմնական արտադրամասերի հերթափոխությունները կոչել են Սովետական Միության ականավոր գործիչների, զորավարների, հերոսների անուններով։ Աշխատավորները սիրով ուսումնասիրում են այն գործչի, հերոսի կենսագրությունը, որի անունով կոչվում է իրենց կոլեկտիվը։ Օրինակ, էլեկտրոլիզի արտադրամասի 15 հերթափոխություն արժանացել են Վ. Ի. Լենինի, Կամոյի, Նելսոն Ստեփանյանի, Յու. Գագարինի, Մ. Ազիզբեկովի, Գայի, Ս. Օրջոնիկիձեի և ուրիշների անուններին։ Յուրաքանչյուր հերթափոխությունում փակցված են տվյալ գործչի նկարը, համառոտ կենսագրությունը։ Այս երևույթը գնալով ավելի մեծ տարածում է գտնում և մեծ նշանակություն ստանում։

Լենինականի մայիսյան ապստամբության անվան Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր տեքստիլ կոմբինատում, կուսկոմիտեի նախաձեռնությամբ, ստեղծվել է հանձնաժողով, որն զբաղվում է երիտասարդության ռազմա-հայրենասիրական դաստիարակության հարցերով։ Հանձնաժողովը նյութեր, տեղեկություններ է հավաքել կոմբինատի այն աշխատողների մասին, ովքեր, կրծքով պաշտպանելով հայրենիքը, զոհվել են Հայրենական մեծ պատերազմում։ Գործվածքային ֆաբրիկայի նախկին ենթավարպետ Արամայիս Պողոսյանը հերոսի մահով ընկել է Դնեպրի մատույցներում։ Աշխատանքային ընկերները և նոր սերունդը նրան չեն մոռացել։ Նրա բրոնզափայլ դիմանկարով մարմարե հուշատախտակը դրված է բոցման-ոլորման արտադրամասում։ Այստեղ Միհրան Ստեփանյանի ղեկավարած կոմունիստական աշխատանքի բրիգադան կոչվել է հերոսի անունով։

Հանրապետության դպրոցների պիոներական դրուժինաների ջոկատները պայքարում են նշանավոր մարդկանց, հերոսների անվան արժանանալու համար։ Պիոներները նշում են հերոսների ծննդյան օրերը, երդվում հավատարիմ մնալ նրանց անմահ գործին։

Պարզ է, որ աշխատավորներն ու դպրոցականները կատարում են նշանավոր մարդկանց անվանն արժանի լավ գործեր, ձգտում կյանքում ու աշխատանքում նմանվել նրանց, գործել նրանց օրինակով։

Երիտասարդության ռազմա-հայրենասիրական դաստիարակության գործում կարևոր նշանակություն ունեն հանդիպումները սովետական բանակի մարտիկների, նշանավոր զորավարների հետ։ Հայրենասիրության դաստիարակության գործը մեծապես կշահի, եթե կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունները պարբերաբար կազմակերպեն նման միջոցառումներ և դրանց տան նոր բովանդակություն։ Այս տեսակետից ուսանելի փորձ են կուտակել նաև հանրապետության կուսկազմակերպությունները։ «Մենք հայրենիքի, կուսակցության որդիներն ենք», «Մենք հայրենիքին, կուսակցությանն ենք հավատարիմ», «Եթե սիրում ես քո հայրենիքը», «Սերունդների հետքերով» և այլ թեմաներով երիտասարդության և սովետական բանակի մարտիկ-



ների հանդիպման երեկոներ են տեղի ունեցել հանրապետության մի շարք վայրերում։

Արարատի կուսշրջկոմն անց է կացրել մարտական փառքի շաբաթ, որին հրավիրվել են Սովետական Միության կրկնակի հերոս Դ. Լելյուշենկոն, Սովետական Միության հերոս Ի. Լիսինը և պահեստի բարձրաստիճան սպաներ։ Նրանք աշխատավորներին պատմել են Հայրենական մեծ պատերազմի տարիներին սովետական մարդկանց անօրինակ սխրագործությունների մասին։ Պահեստի փոխգնդապետ, վոլգոգրադցի Լ. Սամսոնովը շրջանի աշխատավորների ներկայացուցիչներին հանձնել է Մամաև-Կուրգանից բերված սրբազան հողը։ Շրջկենտրոնում տեղի է ունեցել նաև զինակոչիկների հավաք։

Անտարակույս, այս հանդիպումներն ու հավաքները խոր հետք կթողնեն նրանց մասնակիցների սրտերում, կուժեղացնեն սերը հայրենիքի նկատմամբ։ Չէ՞ որ նման միջոցառումների ժամանակ միշտ էլ մեծ ուշադրություն է նվիրվում սոցիալիստական հայրենիքի պաշտպանության մասին լենինյան դրույթների ուսումնասիրությանը, ցայտուն օրինակներով ցույց են տրվում սովետական հայրենասիրության և ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության ուժը, կոմունիզմի գաղափարներին սովետական մարդկանց հավատարմությունը, հիտլերյան ֆաշիզմի դեմ տարած հաղթանակի գործում կոմունիստական կուսակցության խաղացած մեծ ու անգնահատելի դերը։ Դրանք նպաստում են երիտասարդության ռազմա-հայրենասիրական դաստիարակությանը, օգնում խորությամբ հասկանալու սովետական հասարակարգի անպարտելիության ուժի աղբյուրները, ֆաշիստական զավթիչների դեմ տարած մեծ հաղթանակի նշանակությունը, սովետական մարդկանց դաստիարակում կոմունիստական համոզվածության, գաղափարական կայունության, զենքը ձեռքին մեր մեծ հայրենիքի նվաճումները պաշտպանելու պատրաստակամության ոգով։

ՍՄԿԿ XXIV համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Սովետական բանակը մեր ժողովրդի մի մասն է, որը նրա հետ ապրում է միևնույն կյանքով։ Մեզանում զինվորական ծառայությունը մարտական վարպետության դպրոց չէ միայն։ Դա միաժամանակ գաղափարական ու ֆիզիկական կոփման, կարգապահության և կազմակերպվածության լավ դպրոց է»։ Կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունների պարտքը պետք է լինի՝ այդ դպրոցին տալ լավագույն սաներ, նրանց բազմակողմանիորեն նախապատրաստել զինվորական ծառայության։ Խրախուսելի է, որ կուսակցական ու կոմերիտական շատ կազմակերպություններ երիտասարդությանը հանդիսավոր ճանապարհում են սովետական բանակ, մշտական կապ պահպանում նրա հետ, օգնում զինվորական ուսումնարաններում ընդգրկելու լավագույն կոմերիտականների։

Զորակոչային երիտասարդության հետ տարվող աշխատանքում դրական փորձ են կուտակել կուսակցության Թումանյանի շրջկոմը և զինկոմիսարիատը։ Այստեղ երիտասարդներին բանակ ճանապարհելը կատարվում է հանդիսավոր պայմաններում։ Այդ օրը նրանց հանձնվում է «Զորակոչիկի օրագիր», ուր պատմվում է Հայրենական մեծ պատերազմին շրջանի մարդկանց մասնակցության, նրանց սխրանքների մասին։ Օրագիրը դառնում է մի նվիրական հուշ, որը պարտավորեցնում է անձնվիրաբար ծառայել հայրենիքին, դառնալ ավագ սերնդի փառավոր գործերի արժանի հետնորդն ու շարունակողը։

Բանակ մեկնողների հետ աշխատանքը, սակայն, դրանով չպետք է ավարտվի։ Շատ օգտավետ կլինի, եթե կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները նամակագրական կապ պահպանեն նրանց հետ, սովետական բանակի տոների առթիվ ԼԿԵՄ քաղկոմ-շրջկոմները պատվոգրեր ուղարկեն այն զորամասերը, որտեղ ծառայում են իրենց նախկին ակտիվիստները, արտադրության առաջավորները, հանդիպումներ կազմակերպեն արձակուրդ եկած բանակայինների հետ և այլն։ Զինվորական ծառայության մեջ գտնվողների հետ ունեցած կենդանի, աշխույժ կապը երիտասարդությանը հայրենասիրության ոգով դաստիարակելու, նրանց ոգեշնչելու լավագույն միջոց է։ Պակաս կարևոր նշանակություն չունեն նաև դպրոցներում, կուլտուր-լուսավորական հիմնարկություններում պատրաստված «Նրանք ծառայում են հայրենիքին» վերտառությամբ լուսանկարային վահանակները։ Դրանք նվիրված են տվյալ քաղաքից կամ շրջանից սովետական բանակ մեկնածներին։ Երիտասարդները հայրենիքին ծառայում են ազնվորեն, բարեխղճորեն կատարում իրենց զինվորական պարտքը։ Այդ են վկայում զորամասերի հրամանատարներից ստացված բազմաթիվ շնորհակալական նամակները։

ՍՄԿԿ XXIV համագումարը, մեծ նշանակություն տալով երիտասարդության հայրենիքի պաշտպանությանը նախապատրաստելու գործին, այդ առումով առանձնակի ընդգծում է կոմերիտմիության, ԴՕՍԱԱՖ-ի, դպրոցների և մարզական ընկերությունների դերը։ Դպրոցների կուսակցական, կոմերիտական ու պիոներական կազմակերպությունները պետք է սիստեմատիկաբար զբաղվեն պատանի հետախույզների և ռազմա-պատմական խմբակների գործունեությամբ, որը նույնպես նպաստում է ռազմա-հայրենասիրական դաստիարակությանը։

Բազմաթիվ հետաքրքրական էջեր է ամփոփում Լենինականի Կրուպսկայայի անվան դպրոցի պատանի հետախույզների «Կայծ» ակումբի տարեգրությունը։ Պատանիները եղել են Բրեստի հերոս ամրոցում, կտրել անցել են Կովկասյան լեռները, հետիոտն արշավել հայկական Թամանյան 89-րդ հրաձգային դիվիզիայի, ինչպես նաև Հայրենական պատերազմի այլ զորամիավորումների մարտական ուղիներով։ Այդ արշավների ընթացքում նրանք հայտնաբերել են պատերազմում անհայտ կորած մարտիկների շիրիմներ ու դրանց մասին հաղորդել զոհվածների հարազատներին։ Արշավի մասնակիցները կինոնկարահանումներ են արել, բազմաթիվ արժեքավոր նյութեր հավաքել Հայրենական պատերազմում քաջաբար կռված հայորդիների մասին։

Ելնելով միջազգային բարդ իրադրությունից՝ մեր երկրում մեծ աշխատանք է կատարվում նրա ռազմական հզորությունն ամրապնդելու ասպարեզում. երիտասարդության կողմից նորագույն, բարդ տեխնիկային տիրապետելու համար պետք են համառ ու տևական ջանքեր։ Այդ տեսակետից ևս կարևոր է զինվորական ստորաբաժանումների և ուսումնական հաստատությունների կապի ամրապնդումը։ Ուրախությամբ պետք է նշել, որ հանրապետության զինվորական, կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունները հատուկ ուշադրություն են նվիրում աշակերտների շրջանում տարվող պաշտպանական-մասսայական աշխատանքներին։ Վերջին ժամանակներս սովորողների ռազմա-հայրենասիրական դաստիարակության ոլորտում կիրառվում են զանազան ձևեր։ Արդյունավետ է «Սովետական բանակի պատանի բարեկամներ» ջոկատների ստեղծումը։ Այստեղ դպրոցականներն ուսումնասիրում



են սովետական զինված ուժերի մարտական ուղին, մասնակցում ռազմականացված խաղերին, ռազմա-հայրենասիրական դասերին։ Այդպիսի ջոկատներ ստեղծվել են հանրապետության գրեթե բոլոր սահմանամերձ շրջաններում։ Զինվորական զորամասերը վերցրել են հանրապետության մոտ 82 դպրոցների և ուսումնարանների սովորողների ռազմական դաստիարակության շեֆությունը։

Երիտասարդության ռազմա-հայրենասիրական դաստիարակության ասպարեզում մեծ խնդիրներ են դրված բարձրագույն ուսումնական հաստատությունների առջև։ Չէ՞ որ այստեղ պատանիները, ավարտելով հաստատությունը, ստանում են նաև զինվորական կոչում։ Ապագա սպայի ռազմա-հայրենասիրական դաստիարակությունն այս առումով մեծ նշանակություն է ստանում։ Այդ առանձին հոգածության առարկա է դարձել Երևանի Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր պետական համալսարանում, գյուղատնտեսական, պոլիտեխնիկական, Աբովյանի անվան հայկական պետական մանկավարժական ինստիտուտներում և այլուր։ Օրինակ, Երևանի պետական համալսարանի կուսակցական և կոմերիտական կոմիտեները հայրենասիրական թեմաներով պարբերաբար կազմակերպում են հավաքույթ, դասախոսություն, զեկուցում, զրույց, հարց ու պատասխանի երեկո, հանդիպում քաղաքացիական և Հայրենական պատերազմի վետերանների, շեֆ զորամասերի մարտիկների, արտադրության առաջավորների, տարբեր երկրներից հանրապետություն ժամանած ուսանողական և այլ պատվիրակությունների հետ։ Ուսանողները հանդիպումներ են ունեցել Սովետական Միության մարշալ Հ. Բաղրամյանի, զրահատանկային զորքերի մարշալ Հ. Բաբաջանյանի, գեներալներ Ա. Կարապետյանի, Ն. Սաֆարյանի, Ս. Մարտիրոսյանի և այլոց հետ։ Կազմակերպվել են նաև սահմանապահ մարտիկների հետ հանդիպման երեկոներ։

Գաղափարական-քաղաքական աշխատանքում կարևոր տեղ են գրավում աշխատավորական կոլեկտիվների և զորամասերի փոխադարձ շեֆական կապերը։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը բազմիցս նշել է դրանց անհրաժեշտությունը, պահանջել՝ որոնել ու կիրառել մերձեցման նոր ձևեր ու միջոցներ։

Մեր հանրապետության արտադրական ձեռնարկությունների, ուսումնական հաստատությունների, ստեղծագործական միությունների, գիտական և մշակութային հիմնարկությունների կուսակցական և հասարակական կազմակերպություններն զգալիորեն ակտիվացրել և ուժեղացրել են շեֆական կապերը զինվորական և սահմանապահ ստորաբաժանումների հետ։

Լենինգրադի Կիրովի անվան օպերայի և բալետի ակադեմիական թատրոնի արտիստների՝ «Հոգատարությամբ շրջապատենք սովետական զինված ուժերը» կոչը լայն արձագանք է գտել Սովետական Հայաստանի ստեղծագործական կոլեկտիվներում։ Հատկապես մեծ աշխատանք են կատարել Ալ. Սպենդիարյանի անվան օպերայի և բալետի ակադեմիական, Կ. Ստանիսլավսկու անվան թատրոնները, «Հայֆիլմ» կինոստուդիան, Հայաստանի նկարիչների միությունը, պետական կոնսերվատորիան և ստեղծագործական այլ կոլեկտիվներ։ Նրանք զինվորների համար կազմակերպել են կինոլեկտորիումներ, արվեստի վարպետների և գեղարվեստական ինքնագործունեության համերգներ, գրական-երաժշտական երեկույթներ, հայ նկարիչների և քանդակագործների ցուցահանդեսներ։ Հայաստանի գիտնականները բանակայինների համար տասնյակ դասախոսություն ու զեկուցում են կարդացել ժամանակակից գիտության ու տեխնիկայի հրատապ պրոբլեմների վերաբերյալ։

Վ. Ի. Լենինը մեծ նշանակություն էր տալիս հուշարձանների պատմական, գիտական և դաստիարակչական կողմին։ Հուշարձանները մարդկանց վեհ և փառավոր գործերի մարմնացումն են։ Դրանք սերունդներին պերճախոս պատմում են մեծ պայքարի ու հաղթանակի, սովետական կարգերի համար իրենց կյանքը զոհաբերած մարդկանց մասին։ Ինչպես ընդգծեց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում, մեր երկրի քաղաքներում և գյուղերում ստեղծված մարտական փառքի հուշարձաններն ու հոյակապ մոնումենտները սովետական մարդկանց անսահման հարգանքի վկայությունն են այն հերոսների հիշատակի հանդեպ, որոնք իրենց կյանքն են զոհաբերել հանուն հայրենիքի։

Վերջին տարիներին հանրապետության բնակավայրերում ևս, բնակչության նախաձեռնությամբ, կուսկազմակերպությունների ու տեղական սովետների աջակցությամբ, մասսայական կարգով կառուցվում են հուշարձաններ և կոթողներ Հայրենական մեծ պատերազմում զոհված ռազմիկների հիշատակին։ Վերջին 5 տարիներին հանրապետությունում կառուցվել է այդպիսի 200 հուշարձան։ Հայրենասիրական այս շարժումը շարունակվում է։ Խնդիրն այն է, որ դրանց բացման արարողությունն անցկացվի բովանդակալից, նպաստի երիտասարդության հայրենասիրության դաստիարակությանը։ Հոգատարությունը կոթողների ու հուշարձանների նկատմամբ պետք է դառնա մեր ժողովրդի պարտականությունը։

Հայրենասիրության դաստիարակության գործում կարևոր դեր են խաղում էքսկուրսիաները։ Պատմության և մշակույթի հուշարձաններին, հայրենի երկրամասի պատմությանը, էկոնոմիկային, գիտության և կուլտուրայի ասպարեզում ձեռք բերած նվաճումներին ծանոթանալը մարդկանց մեջ դաստիարակում է սեր հայրենիքի նկատմամբ, հավատարմություն սովետական ժողովրդի հեղափոխական, մարտական և աշխատանքային ավանդույթներին։

Հայրենասիրության դաստիարակության շրջանակները շատ լայն են։ Այն ենթադրում է բազմաբնույթ միջոցառումներ։ Այդ դաստիարակության մեջ առանձնահատուկ տեղ է հատկացվում աճող սերնդին հայրենի քաղաքի, գյուղի, բնաշխարհի նկատմամբ սիրո պատվաստմանը։ Դա կարելի է անել զանազան ձևերով, որոնցից առավել արդյունավետ են դասախոսությունները ու էքսկուրսիաները, թանգարանները, ալբոմներն ու լուսանկարային ցուցափեղկերը և այլն։ Այդ առումով որոշակի աշխատանք է կատարվում Սիսիանի շրջանում։ Այստեղ, օրինակ, պիոներական տուրիստական խմբի հայրենասիրական ջոկատի ուժերով ստեղծվել է հայրենագիտական թանգարան, որը նամակագրական կապեր է հաստատել հանրապետության բազմաթիվ դպրոցների, պատմա-գավառագիտական թանգարանների հետ։

Հանրապետության կուսակցական, սովետական օրգանների և հասարակական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրներից է՝ մասսաներին, հատկապես երիտասարդությանը, դաստիարակել նախորդ սերնդի հեղափոխական, մարտական և աշխատանքային ավանդույթներով, աճեցնել կոմունիզմի գործին նվիրված, համարձակ և արի, գաղափարական ամուր կոփվածքով մարտիկներ։ Հարկավոր է մշտապես հիշել ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևի արտահայտած այն միտքը, որ «Կուսակցությունը բարձր է գնահատում սովետական մարդկանց հայրենասիրական ոգին, նրանց պատրաստակամությունը՝ բոլոր ուժերը նվիրաբերել հանուն իրենց սոցիալիստական հայրենիքի բարգավաճման, պաշտպանել հեղափոխության նվաճումները, սոցիալիզմի գործը»։

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԽՄԲԵՐԸ ՄԵԾ ՈՒԺ ԵՆ

ՀՐ. Ս. ՀՈՎՍԵՓՅԱՆ

Մասսաների հետ կուսակցության կապն ամրապնդելու գործում կարևոր
Մասսաների հետ կուսակցության կապն ամրապնդելու գործում կարևոր
դեր են խաղում կուսակցական խմբերը։ Նրանք այն հիմնական օղակներն են,
տրոնք, ամենից ավելի մոտիկ գտնվելով արտադրությանը, գործելով արտա-
դրամասում, բրիգադայում, ֆերմայում, իրենց ակտիվ գործունեությամբ
ամեն կերպ օգնում ու նպաստում են տվյալ կուսկազմակերպության առջև
ծառացած խնդիրների հաջող լուծմանը, յուրաքանչյուր կոմունիստի պատաս-
խանատվության բարձրացմանը, մասսաների շրջանում տարվող քաղաքա-
կան-դաստիարակչական ներգործուն աշխատանքի ծավալմանը։ Կուսակցական
խմբերում կոմունիստները միաժամանակ լայն հնարավորություն են ունե-
նում՝ լիովին դրսևորելու իրենց անձնական ունակությունները, գործիմացու-
թյամբ զբաղվելու արտադրության և սոցիալիստական մրցության կազմա-
կերպմամբ, առաջավոր փորձի ընդհանրացմամբ ու տարածմամբ։ Նրանք
հանդես են գալիս որպես նախաձեռնող ուժ, իրենց օրինակով ոգևորում աշ-
խատանքային ընկերներին։

Կուսակցական-կազմակերպական աշխատանքի փորձը հաստատում է՝
այնտեղ, որտեղ կուսկազմակերպությունները, նրանց բյուրոները գործնական
օգնություն ու ղեկավարություն են ցույց տալիս իրենց ներքին օղակներին,
մոտիկից զբաղվում նրանց ակտիվության և նախաձեռնության զարգացմամբ,
մարդկանց վրա կուսակցական ազդեցության ու ներգործության ուժեղաց-
մամբ, այնտեղ կուսխմբերը լավ են գործում և դրական արդյունքների հաս-
նում։

Այդ տեսակետից աշխատանքի հարուստ փորձ է կուտակել Արարատի
շրջանի Փոքր Վեդի գյուղի կոլտնտեսության կուսկազմակերպությունը։ Կոլ-
տնտեսության արտադրական բրիգադներում և անասնապահական ֆերմա-
ներում ստեղծվել և գործում են 7 կուսակցական խմբեր։ Կուսկազմակերպու-
թյունը և նրա բյուրոն անհրաժեշտ ղեկավարություն և օգնություն են ցույց
տալիս դրանց։ Պարբերաբար հրավիրվող սեմինար պարապմունքներում ու
խորհրդակցություններում կուսխմբերի կազմակերպիչներին պարզաբանվում
են նրանց անելիքները, կազմակերպության աշխատանքի ձևերն ու մեթոդները,
կատարվում է փորձի փոխանակություն։ Կուսբյուրոյի նիստում, օրինակ, վեր-

չերս ընդհանրացվեց №№ 1,5 բրիգադների կուսխմբերի փորձը։ Լսվել են նաև մեքենա-տրակտորային բրիգադայի կուսխմբի, ինչպես նաև առանձին կոմունիստների հաշվետվությունները։

ՍՄԿԿ Կենտկոմի «Յարոսլավլի քաղաքային կուսակցական կազմակերպությունում կուսակցական ժողովների անցկացման պրակտիկայի մասին» հայտնի որոշման առումով կուսկազմակերպությունը քննարկել է այն հարցը, թե կուսխմբերն ինչպես են օգնում կոմունիստներին՝ ՍՄԿԿ կանոնադրական պարտականությունները և կուսակցական հանձնարարությունները կատարելու գործում։ Դրանից հետո կուսբյուրոն ուժեղացրել է պահանջկոտությունը կուսխմբերի կազմակերպիչների նկատմամբ, մշտապես զբաղվում է նրանց գործունեությամբ։

Այս միջոցառումների իրականացմամբ պետք է բացատրել, որ վերջին շրջանում նկատելի կերպով բարելավվել է կոլտնտեսության կուսխմբերի աշխատանքը, բարձրացել նրանց ինքնագործունեությունը և պատասխանատվությունն արտադրական խնդիրների հաջող լուծման գործում։

Ակտիվ գործունեության լավ օրինակ է տալիս № 2 բրիգադայի կուսխումբը, որի կազմակերպիչն է առաջավոր այգեգործ Մ. Պետրոսյանը։ Նա սիստեմատիկաբար խորհրդակցում, մտքեր է փոխանակում կոմունիստների հետ, նրանց տալիս հանձնարարություններ, հետևում դրանց կատարմանը։ Կուսխումբն իր գործունեության կարևոր բնագավառներից մեկը համարում է գյուղատնտեսական արտադրության վերելքին ամեն կերպ նպաստելը։ Կոմունիստները, բրիգադայի անդամների հետ միասին, պարբերաբար անդրադառնում են այդ հարցին, իրականացնում գործուն միջոցառումներ։ Անցած տարվա սկզբին կուսխումբն իր ժողովում, անկուսակցական այգեգործների մասնակցությամբ, քննարկեց սոցիալիստական մրցության կազմակերպման հարցը։

— Եկեք սոցիալիստական մրցություն ծավալենք՝ հոբելյանական տարում հեկտարից 45 ցենտներ հացահատիկ, 170 ցենտներ խաղող և 600 ցենտներ պոմիդոր ստանալու համար,— բրիգադայի անդամներին դիմեց կուսխմբի կազմակերպիչը։

Առաջարկությունն արժանացավ նրանց հավանությանը։ Ժողովում այգեգործներն ու հողագործները մրցման մեջ մտան և ստանձնեցին ավելի բարձր պարտավորություններ։ Սակայն գործը դրանով չավարտվեց։ Հետագայում կուսխումբը գործնական օգնություն ցույց տվեց մրցողներին, որոշեց յուրաքանչյուրի անելիքը բարձր բերքի համար մղվող պայքարում, հետևեց պարտավորությունների անթերի կատարմանը։ Կուսխմբի անմիջական նախաձեռնությամբ 10 օրը մեկ բրիգադայում ամփոփվել են մրցության արդյունքները, խրախուսվել առաջավորները։

Մեծ լարվածություն է առաջանում հատկապես այգիների բուժման ժամանակ։ Դա կուսխմբից պահանջում է լուրջ մոտեցում ու մեծ ջանքեր։ Անցած տարի, օրինակ, անդրադառնալով դրան, կուսխումբը հարց բարձրացրեց կոլտնտեսության վարչության առջև՝ այգիների բուժմանն ակտիվորեն մասնակցողներին խրախուսել նաև դրամական պարգևով։ Դրանից հետո կոլտնտեսության վարչությունը և կուսկազմակերպությունը նյութական խրախուսանք սահմանեցին այն այգեգործների համար, ովքեր բուժումը կատարում են արագ ու բարձր որակով։ Այդ միջոցառումը ո՛չ միայն բարձրացրեց այգեգործների անձնական շահագրգռությունը, այլև նպաստեց կարգապահության ամրա-



պնդմանը. բոլորը մասնակցեցին այգիների հիվանդությունների ու վնասատուների դեմ մղվող պայքարին. բուժումն ավարտվեց հաջողությամբ։

Կուսխմբի կոմունիստները տոն և ուղղություն են տալիս բրիգադայի անդամներին, իրենց անձնվեր աշխատանքով օրինակ ծառայում նրանց։ Այսպես, Ն. Կուրբանովը գարնան սկզբից մինչև ուշ աշուն մեծ ջանասիրությամբ աշխատում է այգիներում ու բանջարանոցներում, օրական կատարում 1,5—2 արտադրական նորմա, միշտ ընթանում սոցիալիստական մրցության առաջավորների շարքում։ Նրան չի զիջում Մ. Պետրոսյանը։ Նա արտադրության մեջ ապահովում է իր ավանգարդային դերը, աշխատասիրությամբ ու ջանասիրությամբ նվաճում բրիգադայի անդամների համակրանքն ու վստահությունը։ Չորրորդ տարին է, ինչ բրիգադայի կոմունիստները Մ. Պետրոսյանին ընտրում են կուսխմբի կազմակերպիչ։

Կուսակցական խումբը լուրջ նշանակություն է տալիս նաև այգեգործների ու բանջարաբույծների շրջանում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքի կազմակերպմանը։ Այստեղ սիստեմատիկաբար անց են կացվում ագիտացիոն զրույցներ, կատարվում է առաջավոր փորձի փոխանակություն։ Իր փորձի մասին պատմել է օղակավարուհի Է. Մելքումյանը, որն ամեն տարի հեկտարից ստանում է 650—700 ցենտներ պոմիդոր։ Հատկանշական է, որ կուսխմբի արդյունավետ գործունեությամբ բարձրացել է բրիգադայի անդամների ակտիվությունը, զարգացել է նրանց նախաձեռնությունը. մրցության բովում ավելի են ստվարանում առաջավորների շարքերը։ 45 այգեգործներն ու բանջարաբույծներն էլ մրցության առաջամարտիկներ են։ Բրիգադան հիանալի արդյունքի հասավ հնգամյակի վերջին տարում։ Կենսագործելով ՍՄԿԿ XXIV համագումարի պատվին ստանձնած սոցիալիստական պարտավորությունները՝ նա կոլտնտեսությունում ստացավ ամենաբարձր բերքը. հեկտարից հացահատիկ՝ 49 ցենտներ, խաղող՝ 176 և պոմիդոր՝ 643 ցենտներ։ Կուսխումբը, ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների առնչությամբ, նպատակ է դրել իններորդ հնգամյակի առաջին տարում գործադրել բոլոր ջանքերը, որպեսզի բրիգադան նվաճի նոր բնագծեր և արժանանա կոմունիստականի բարձր կոչման։

Անասնապահական ֆերմաների կուսխմբում կան 13 կոմունիստ։ Նրանցից 9-ն անմիջականորեն աշխատում է արտադրության ամենավճռական տեղամասերում և ակտիվորեն մասնակցում նյութական բարիքների ստեղծմանը։ Կուսխումբը դարձել է կթվոր-անասնապահների և հովիվների ոգեշնչողն ու կազմակերպիչը, հետևողականորեն զբաղվում է ինչպես արտադրական, այնպես էլ մարդկանց դաստիարակության հարցերով։ Կուսխմբի օգնությամբ կաթնապրանքային ֆերմայում յուրաքանչյուր տասնօրյակում ամփոփվում է սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքը, առաջավոր կթվորուհիների ու անասնապահների մասին գրվում է պատի թերթում, ամսվա վերջում հուշադրոշ և դրամական պարգև են տրվում ամենաառաջավոր կթվորուհուն։ Կուսխումբը մեծ աշխատանք է ծավալում անասնապահության վարման կուլտուրան բարձրացնելու համար։

Կուսկազմակերպությունն անցած տարի քննության առավ կովերի և ոչխարների արհեստական սերմնավորման վիճակը կոլտնտեսությունում։ Այդ հարցի նախապատրաստմանն ակտիվ մասնակցեցին կուսխմբի կոմունիստները։ Գ. Թովմասյանը և Բ. Հարությունյանը հանգամանորեն ուսումնասիրեցին

հարցը և կոնկրետ առաջարկություններ ներկայացրին ընդհանուր ժողովին։ Ոչխարների ծնի նախօրյակին էր։ Կուսխմբի կոմունիստներին հուզում էր այն անկորուստ անցկացնելը։ Անդրադառնալով այդ հարցին՝ նրանք ժողովում գործարար խոսակցություն ծավալեցին, որոշեցին իրենց անելիքները։ Խմբի ակտիվ միջամտությամբ ժամանակին նորոգվեցին ու կարգի բերվեցին ծնարանները, լրացվեց գույքի պակասը, սահմանվեց 24-ժամյա հերթապահություն։ Կուսխումբն իրագործեց մի շարք այլ միջոցառումներ, որոնք նպաստեցին կարգապահության ամրապնդմանը և հովիվների պատասխանատվության բարձրացմանը։ Այս ամենը տվեց իր դրական արդյունքը. ծինն անցկացվեց անկորուստ, յուրաքանչյուր 100 մաքիից ստացվեց ու պահպանվեց 102 գառ։

Կոլտնտեսության էկոնոմիկայում մեծ տեսակարար կշիռ ունի բանջարաբուծությունը։ Բանջարանոցային և բոստանային կուլտուրաների ցանքատարածությունը կազմում է 117 հեկտար։ Մի ժամանակ մշակությունն ամբողջապես կատարվում էր ձեռքով։ Այդ բրիգադայի կուսխումբը հանդես եկավ խրախուսելի նախաձեռնությամբ՝ փորձելով մեքենայացնել միջշարային տարածությունների մշակությունը։ Հինգ կոմունիստ մեխանիզատորները, կուսխմբի կազմակերպիչ Ա. Հովհաննիսյանի և մեքենա-տրակտորային բրիգադայի բրիգադավար Ա. Հարությունյանի ակտիվ մասնակցությամբ, վերասարքավորեցին եղած կուլտիվատորները և մեքենայացրին բանջարանոցային կուլտուրաների միջշարային տարածությունների քաղհան-փխրեցումն ու սնուցումը։ Եվ ահա արդյունքը. կրճատվեց աշխատողների թիվը, զգալի չափով իջեցվեց բանջարեղենի ինքնարժեքը, միջին բերքատվությունը հոբելյանական տարում կազմեց 323,5 ցենտներ— նախատեսվածից 90 ցենտներով ավելի։

Մեքենա-տրակտորային բրիգադայում ընդգրկված են 7 կոմունիստ մեխանիզատորներ։ Կուսխումբը շարունակ հետևում է, որպեսզի տեխնիկան օգտագործվի արդյունավետ, ապահովվի նրա բարձրարտադրողական աշխատանքը։ Բրիգադային ամրացված են տարբեր մակնիշի 22 տրակտոր, հացահատիկի 2 կոմբայն, 13 բեռնատար ավտոմեքենա, 11 կցասայլակ և այլ մեքենաներ ու սարքավորումներ։ Կուսխումբը հետևում է դրանց տեխնիկական խնամքին, նորոգման ընթացքին։ Կոմունիստների եռանդուն ջանքերով բրիգադան կազմ ու պատրաստ դիմավորեց և հաջողությամբ ավարտեց իններորդ հնգամյակի առաջին տարվա գարնանացանը, ստեղծեց բարձր բերքի լավ երաշխիք։

Արտադրության ղեկավարման և արդյունավետության բարձրացման գործում աչքի են ընկնում նաև №№ 5, 6 և շինարարական բրիգադաների կուսխմբերը, որոնց կազմակերպիչներն են Յու. Ալահվերդիևը, Ն. Իսմայիլովը և Ա. Հովհաննիսյանը։

Շինարարական բրիգադայի կուսխմբի անդամներին տրվում են կոնկրետ հանձնարարություններ։ Կուսկազմակերպիչը դրանք գրանցում է իր օրագրում և հետևում կատարմանը։ Կուսկազմակերպության ու կուսխմբի աջակցությամբ գյուղում շինարարական մեծ գործեր են կատարվել. կառուցվել են մշակույթի պալատ, միջնակարգ դպրոց, հանրախանութ, ռեստորան, բաղնիք, կենցաղ-սպասարկման տաղավար։ Կուսխմբի անդամներն զբաղվում են նաև գյուղի բարեկարգմամբ ու կանաչապատմամբ, իրենց առաջարկություններով օգնում կուսկազմակերպությանը և կոլտնտեսության վարչությանը՝ բնակչու-



թյան կուլտուր-կենցաղային սպասարկումը լավագույն ձևով կազմակերպելու համար։

Կուսխմբի հաջող գործունեությամբ պետք է բացատրել նաև այն, որ կոլտնտեսության կուսկազմակերպությունը դարձել է մարտունակ, ուժեղացրել իր ազդեցությունը հանրային արտադրության զարգացման վրա, կոմունիստները քայլում են մրցության ավանգարդում, վստահված գործը կատարում ամենայն պատասխանատվությամբ ու բարեխղճությամբ։ Այսպես, կոմունիստ Ե. Սիմոնյանը երկար տարիներ եղել է շարքային այգեգործ, հմտացել է ու ձեռք բերել փորձ ու գիտելիք և այժմ ղեկավարում է այգեգործական 6-րդ բրիգադան։ Արտադրության հմուտ կազմակերպիչը շարունակ հոգ է տանում այգիների բերքատվությունը բարձրացնելու մասին։ Այդ նպատակով նա ժամանակին ձեռնամուխ է լինում մշակությանն ու բուժմանը, լիարժեք հեկտարների ստեղծմանը, բերքահավաքի անկորուստ անցկացմանը։ Պարտքի խոր գիտակցության ու բարձր պահանջկոտության միջոցով բրիգադայի մարդիկ ձեռք են բերում հիանալի արդյունքներ։ 1970 թվականին, օրինակ, այգեգործները հեկտարից ստացան 148 ցենտներ խաղող։

Կոլտնտեսությունում մեծ հեղինակություն է վայելում կոմունիստ Մ. Ալիևը։ Նա բրիգադավար է, արդարացնում է կուսկազմակերպության վստահությունը, լուրջ ուշադրություն նվիրում աշխատանքի ճիշտ կազմակերպմանը, ձգտում է, որպեսզի այգեգործները ճշտությամբ ու խնամքով կատարեն մշակությունը։ Արդյունքներն էլ վատ չեն։ Բրիգադան միշտ հեկտարից հավաքում է 140—145 ցենտներ խաղող, իսկ հոբելյանական տարում հեկտարից ամբարեց նաև 57,1 ցենտներ հացահատիկ։

Կոլտնտեսության առաջընթացն ապահովելու համար ջանք ու եռանդ չի խնայում կոմունիստ Մ. Հովհաննիսյանը։ 27 տարի անընդմեջ ու հմտորեն ղեկավարում է բազմաճյուղ կոլտնտեսությունը։ Մարգարը մանկուց սիրել է հողը, աճել ու մեծացել կոլտնտեսականների աչքի առջև։ Հարուստ կենսափորձը, մտավոր կարողությունը օգնում են նրան՝ լուծելու արտադրության բարդ խնդիրները, շենացնելու հանրային տնտեսությունը։ Կոլտնտեսականները Մ. Հովհաննիսյանի մեջ տեսնում են և՛ փորձառու ղեկավարին, և՛ հոգատար ընկերոջը։ Անգնահատելի ծառայությունների համար նա արժանացել է համընդհանուր հարգանքի ու ճանաչման, Աշխատանքային կարմիր դրոշի երեք շքանշանի, որպես պատգամավոր մասնակցել կոլտնտեսականների համամիութենական III համագումարին։ Հայաստանի կոմկուսի XXV համագումարում նա արժանացավ մեծ վստահության. ընտրվեց ՍՄԿԿ XXIV համագումարի պատգամավոր։ Վերջերս Մ. Հովհաննիսյանն արժանացավ նոր պատվի ու վստահության. պարգևատրվեց Լենինի շքանշանով և ընտրվեց Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ։

Կուսկազմակերպությունը, կուսխմբերը, բոլոր կոմունիստները պատվով են կատարում աշխատավորների ստեղծագործական ակտիվությունն ու նախաձեռնությունը գլխավորելու, նրանց ուժերը կուսակցության առաջադրած խնդիրների իրականացմանը նպատակամղելու իրենց դերը։ Դրա շնորհիվ կոլտնտեսությունը քայլում է ժամանակին համընթաց և դարձել է հանրապետության ամենաառաջավոր տնտեսություններից մեկը։ Առանձնապես բեղմնավոր էր նրա գործունեությունը անցած հնգամյակում։ Բավական է ասել, որ 1966 թվականի համեմատությամբ, անցած տարի կոլտնտեսությունում

խաղողի միջին բերքատվությունը բարձրացավ ավելի քան 50, պտուղներինը՝ 66, բանջարեղեններինը՝ 139 ցենտներով։ Մեծ չափով գերակատարվեցին հացահատիկի, բոստանային կուլտուրաների բերքատվության, պետությանը գյուղատնտեսական մթերքների վաճառքի հնգամյա ծրագրով նախատեսված բոլոր առաջադրանքները։ Հացահատիկի բերքատվությունը հեկտարից անցած տարի կազմեց 53,6 ցենտներ։ Միայն անասնաբուծությունը տնտեսությանը տվեց մոտ 300 հազար ռուբլու եկամուտ։ Այս բոլորի շնորհիվ կոլտնտեսության դրամական եկամուտը, 1966 թվականի 850 հազարի դիմաց, 1970 թվականին հասավ մեկ միլիոն 600 հազար ռուբլու, իսկ յուրաքանչյուր աշխօրի հասույթը կազմեց 6 ռ. 50 կոպեկ՝ չհաշված հացահատիկն ու մյուս մթերքները։

Այս ցուցանիշները ձեռք բերվեցին գերազանցապես գյուղատնտեսական արտադրության կատարելագործման, նրա ինտենսիվացման, գիտության նվաճումների և առաջավոր փորձի արմատավորման շնորհիվ։

Փոքր Վեդի գյուղի կոլտնտեսության բարի համբավը տարածվել է մեր ողջ երկրում։ Մի քանի տարի է, ինչ նա ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի մասնակից է։ Վերջերս կոլտնտեսությունն արժանացավ ավելի բարձր պարգևի. գյուղատնտեսական արտադրության զարգացման և պետությանը երկրագործական ու անասնապահական մթերքների վաճառքի հնգամյա պլանի կատարման գործում ձեռք բերած մեծ հաջողությունների համար պարգևատրվեց Լենինի շքանշանով։

Նոր հնգամյակում զարգացման լայն հեռանկարներ են բացվում Լենինի շքանշանակիր կոլտնտեսության առջև։ ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները, ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թվականների դիրեկտիվները և կառավարական բարձր պարգևը աշխատանքային բուռն խանդավառություն են առաջացրել կոլտնտեսությունում։ Ի պատասխան կոմունիստական կուսակցության ջերմ հոգատարության, վաստակաշատ կոլտնտեսականներն ստանձնել են նոր պարտավորություններ և խոստացել հնգամյակը կատարել 4 տարում։ Հնգամյակի առաջին տարում խաղողի համախառն արտադրությունն այստեղ հասնելու է 2000 տոննայի, պտղինը՝ 625, բանջարեղենինը և բոստանային կուլտուրաներինը՝ 4000 տոննայի։ Կաթի, մսի ու բրդի համախառն արտադրությունը կավելանա 30—40 տոկոսով։ Ծրագրվել է ամեն մի հեկտարից հավաքել 58 ցենտներ հացահատիկ։ Նոր հնգամյակում մեծապես կաճեն դրամական եկամուտները և 1975 թ. կհասնեն ավելի քան 2 միլիոն ռուբլու։ Դա հնարավորություն կտա կառուցելու արտադրական նոր շենքեր, ձեռք բերելու գյուղատնտեսական կատարելագործված մեքենաներ, օգտագործելու ավելի շատ հանքային պարարտանյութեր և թունաքիմիկատներ։ Ընթացիկ տարում գյուղը կստանա բնական գազ, հիմնովին կբարեկարգվեն փողոցները։

Փոքր Վեդիի կոլտնտեսության կուսկազմակերպությունը, իր գործունեությունը վարելով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներին համապատասխան, կոմունիստների, բոլոր աշխատավորների ուժերը մոբիլիզացրել է՝ կուսակցության առաջադրած նոր խնդիրները հաջողությամբ լուծելու համար։ Այդ գործում մեծ դեր են խաղում նրա ներքին օղակները՝ կուսակցական խմբերը, որոնք մեծ ուժ են։

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՖՈՆԴԱՎՃԱՐԸ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ

Մեր երկրում իրականացվող տնտեսական ռեֆորմի հիմնական նպատակն է՝ ամեն կերպ բարձրացնել հասարակական արտադրության արդյունավետությունը, արագացնել ազգային եկամտի աճի տեմպերը և դրա հիման վրա բարձրացնել սովետական ժողովրդի բարեկեցությունը, ամրապնդել երկրի տնտեսական հզորությունը։ Տնտեսական ռեֆորմը սոցիալիստական տնտեսավարման լենինյան սկզբունքների կիրառումն ու զարգացումն է, արտադրաուժերի և գիտա-տեխնիկական հեղաշրջման ձեռք բերած մակարդակին համապատասխան արտադրահարաբերությունների կատարելագործումը։

Տնտեսական ռեֆորմի հետագա զարգացման և կատարելագործման տեսակետից վճռական քայլ են ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թվականների հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվները։ Նոր հնգամյակում կուսակցությունն անհետաձգելի խնդիր է համարում տնտեսական ռեֆորմը ծավալել ո՛չ միայն լայնությամբ, այլև խորությամբ։ Արտադրության կառավարման, պլանավորման և տնտեսական խթանման սիստեմի ու մեթոդների հետագա կատարելագործումը պետք է, առաջին հերթին, ապահովի ընդլայնված վերարտադրության տնտեսական արդյունավետության բարձրացումը։

Հասարակական արտադրության աճի բարձր տեմպերը, որոնք նախատեսված են իններորդ հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում, պետք է ձեռք բերվեն ո՛չ միայն կապիտալ շինարարության ավելացմամբ, որը հնգամյակում աճելու է 36—40 տոկոսով և ընդգրկելու է վիթխարի մասշտաբներ, այլև հանրային արտադրության տնտեսական արդյունավետության բարձրացմամբ։

Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման ժամանակակից պայմաններում բարձր գնահատելով տնտեսական աճի որակական գործոնների դերը, Լ. Ի. Բրեժնևը ասում է. «Մենք պետք է արտադրությունը մեծացնենք և արտադրանքի որակը բարելավենք ո՛չ միայն նոր կապիտալ ներդրումների և աշխատողների թվի ավելացման հաշվին, այլև ավելի ու ավելի մեծ չափով՝ արդեն գոյություն ունեցող արտադրական կարողությունների լրիվ ու ռացիոնալ օգտագործման, ժամանակակից գիտության ու տեխնիկայի նվաճումների արմատավորման, ինչպես նաև աշխատաժամանակի յուրաքանչյուր րոպեի, յուրաքանչյուր մեքենայի ու մեխանիզմի, յուրաքանչյուր դրամ հումքի ու վառելիքի նկատմամբ խնայողական վերաբերմունքի հաշվին»։

Արտադրական հիմնական ֆոնդերի արդյունավետ օգտագործման պրոբլեմը գիտա-տեխնիկական առաջադիմության արդի պայմաններում ավելի

ակտուալ է դարձել: Արտադրական հիմնական ֆոնդերը, հատկապես, աշխա-
տամեքենաներն ու մեխանիզմները կազմում են մեր ազգային հարստության
ակտիվ մասը, հասարակական արտադրության ոսկրային և մկանային սիս-
տեմը: Թե ինչպիսի ռեզերվներ են պարփակված հիմնական ֆոնդերի օգտա-
գործումը բարելավելու մեջ, կարելի է դատել հետևյալ թվերից: Մեր երկրի
հիմնական ֆոնդերն այժմ գերազանցում են 730 միլիարդ ռուբլուց, որի 60
տոկոսից ավելին արտադրական հիմնական ֆոնդերն են: Հաշվարկները ցույց
են տալիս, որ եթե հիմնական արտադրաֆոնդերի օգտագործումը բարելավվի
1 տոկոսով, ապա ազգային եկամուտը տարեկան կաճի 4,5 միլիարդ ռուբլով:
Բարձր գնահատելով նոր հնգամյակի կանխատեսումների իրականացման
գործում տնտեսական աճի ինտենսիվ գործոնի դերը, կուսակցությունն առաջ-
նահերթ խնդիր է համարում արտադրական հիմնական ֆոնդերի և կարողու-
թյունների յուրաքանչյուր միավորից ստացվող արտադրանքի թողարկման ա-
վելացումը. այդ հնարավոր է արտադրության տեխնիկական վերազինման ու
վերասարքավորման, նրա կառուցվածքի պրոգրեսիվ փոփոխության, ֆիզիկա-
պես մաշված և բարոյապես հնացած սարքավորումները՝ նոր արդիականաց-
ված և տեխնիկապես կատարյալ սարքավորումներով փոխարինելու, արտա-
դրական կարողությունների յուրացման պլանային ժամկետները կրճատելու,
սկզբունքորեն նոր տեխնոլոգիական պրոցեսների ներդրման ու արմատավոր-
ման, ինչպես նաև արտադրապրոցեսների առավել ինտենսիվացման միջոցով:
Ժողովրդա-տնտեսական այդ բացառիկ կարևոր խնդրի լուծման վճռական
գործոնը ֆոնդավճարն է: Ֆոնդավճարը միաժամանակ այն կարևոր տնտեսա-
կան լծակն է, որը խրախուսման ֆոնդերին կատարվող հատկացումների չա-
փերը ուղղակի կախման մեջ է դնում արտադրաֆոնդերի օգտագործման ար-
դյունավետությունից. որքան լավ են օգտագործվում արտադրաֆոնդերը, այն-
քան ավելանում են խրախուսման ֆոնդերին կատարվող հատկացումները:
Հայտնի է, որ ձեռնարկությունների նյութական խրախուսման, բնակա-
րանային շինարարության, սոցիալ-կուլտուրական միջոցառումների և արտա-
դրության զարգացման ֆոնդերը կազմավորվում են ինչպես արտադրանքի
իրացման ծավալի աճի, այնպես էլ հաշվարկային շահութաբերության մա-
կարդակի համեմատ: Այդ ֆոնդերին կատարվող հատկացումների հիմնական
մասը պայմանավորված է հաշվարկային շահութաբերության մակարդակով:
Տնտեսական խթանումը ստիպում է ձեռնարկություններին որպեսզի նրանք,
որքան հնարավոր է, արտադրական ծրագրի կատարումն ապահովեն ավելի
պակաս արտադրաֆոնդեր շահագործելով: Այդ նպատակով ձեռնարկություն-
ները ջանում են զերծ մնալ իրենց արտադրության ծավալին ու բնույթին չհա-
մապատասխանող, այսպես կոչված, ավելցուկային սարքավորումներից, մե-
քենաներից և ապրանքանյութական արժեքների այլ մնացորդներից: Այսպի-
սով, ֆոնդավճարը և դրա հետ սերտ կապված տնտեսական խթանման նոր
սիստեմը, մի կողմից՝ նպաստում է արտադրամիջոցները ժողովրդական տըն-
տեսության տարբեր ճյուղերի միջև վերաբաշխելու, մյուս կողմից՝ ուժեղաց-
նում արտադրական կոլեկտիվների նյութական շահագրգռվածությունը եղած
արտադրամիջոցներն ավելի ինտենսիվ օգտագործելու:
Այդ տեսակետից ֆոնդավճարը հարաբերություն է ո՛չ միայն ձեռ-
նարկությունների արտադրական կոլեկտիվների նյութական շահագրգռվածու-
թյան և արտադրաֆոնդերի օգտագործման միջև, այլև պետության և ձեռնար-



կությունների, ձեռնարկության և կոլեկտիվի, նրանց առանձին անդամների և, վերջապես, հասարակական վերարտադրության ֆոնդերի միջև:

Պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին փոխադրված հանրապետական ենթակայության ձեռնարկությունների արտադրաֆոնդերը եթե 1967 թվականին, 1966 թվականի համեմատությամբ, աճեցին մեկ տոկոսից մի փոքր ավելի, ապա իրացված արտադրանքի ծավալն աճեց 9,6, շահույթինը՝ 18,5 տոկոսով: Արտադրաֆոնդերի արդյունավետ օգտագործման մասին է խոսում 1 ռուբլու ֆոնդերի հաշվով իրացման ծավալի և շահույթի գումարի ավելացումը: 1967 թվականին, այսինքն՝ տնտեսական ռեֆորմի առաջին տարում, 1966 թվականի համեմատությամբ, մեկ ռուբլու արտադրաֆոնդերին բաժին ընկնող իրացման գումարն աճեց 8,7, իսկ շահույթինը՝ 17,7 տոկոսով, իսկ 1969 թ., 1967 թ. համեմատությամբ, 1 ռուբլու արտադրաֆոնդերի հաշվով իրացման գումարն աճել է 15,4, շահույթինը՝ 12,6 տոկոսով:

Ֆոնդավճարի խթանիչ դերն արտադրաֆոնդերի օգտագործման մակարդակի բարձրացման ոլորտում ավելի ակնհայտ է դառնում, երբ հարցը քննում ենք կոնկրետ: Երևանի ճշգրիտ սարքերի գործարանը 1967 թվականին առաջադրանքները կատարելու և գերակատարելու հետ միասին, արտադրաֆոնդերի արժեքը և դրանցից հաշվարկվող ֆոնդավճարի գումարը, պլանի համեմատությամբ, կրճատել էր 16,9 տոկոսով: Դրա շնորհիվ իսկ 4,8 տոկոսով շահույթի պլանի գերակատարման պայմաններում, գործարանի հաշվարկային շահութաբերությունն աճեց 27,9, իսկ այդ ցուցանիշի համար տնտեսական խթանման ֆոնդերին կատարվող հատկացումները՝ 33,3 տոկոսով: Միամտություն կլիներ պնդել, որ պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմն ավտոմատիկ կարգով ցանկալի արդյունքներ է տալիս: Անհրաժեշտ է նշել, որ առանց լավ կառավարման և կատարյալ կազմակերպման պատշաճ արդյունք չեն տա ո՛չ լրացուցիչ կապիտալ ներդրումները, ոչ էլ տնտեսական խթանման ամենակատարյալ սիստեմը:

Ըստ արժանվույն գնահատելով կառավարման դերը, Լ. Ի. Բրեժնևն ասում է. «...ժողովրդական տնտեսության զարգացման արդի էտապը թույլ չի տալիս բավարարվելու հին փորձով: Կառավարումը վերածվում է գիտության, և այդ գիտությանը հարկավոր է հնարավորին չափ արագորեն և հնարավորին չափ խոր տիրապետել, համառորեն սովորել»:

Պետք է նկատի ունենալ, որ տնտեսավարման նոր կարգը կարևոր միջոց է, որը հնարավորություն է տալիս բարձրացնելու արտադրողների նյութական շահագրգռվածությունը, ապահովելու նրանց ակտիվ մասնակցությունն արտադրության կառավարմանն ու նրա արդյունավետության բարձրացմանը: Սակայն տնտեսավարման նոր կարգը, ինքնին, առանց արտադրության խելացի կազմակերպման ու կառավարման ցանկալի արդյունք տալ չի կարող: Այդ է վկայում, թերևս, Երևանի ժամացույցի գործարանի օրինակը:

Ձեռնարկության արտադրական հիմնական ֆոնդերը 1969 թվականին, 1968 թվականի համեմատությամբ, աճեցին 5,5, իսկ թողարկվող արտադրանքի ծավալը՝ միայն 3 տոկոսով: Ավելին, 1967—1969 թթ. արտադրաֆոնդերի 4,8 տոկոս աճի պայմաններում շահույթը ո՛չ միայն չաճեց, այլ կրճատվեց ավելի քան 44 տոկոսով, որի հետևանքով ձեռնարկության արտադրաֆոնդերի օգտագործման արդյունավետությունն իջավ կիսով չափ և կազմեց 11,7 տոկոս: Այդ նշանակում է, որ արտադրաֆոնդերն ավելի արագ են աճել, քան

դրանց օգտագործման արդյունավետությունը։ Արտադրաֆոնդերի օգտագործ-
ման արդյունավետության իջեցման պատճառով ձեռնարկության տնտեսա-
կան խթանման ֆոնդերին կատարվող հատկացումները 1969 թվականին, 1967
թվականի համեմատությամբ, կրճատվեցին ավելի քան երկու անգամ։
Պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմի փոխադրված ձեռ-
նարկություններում արտադրաֆոնդերի օգտագործումը հիմնականում բարե-
լավվել է մեքենական պարկում գործող սարքավորումների տեսակարար կշռի
ավելացման, սարքավորումների միջնորոգման ժամկետների և նորոգումների
քանակի կրճատման, գործող սարքավորումների օգտագործման ժամկետների
երկարացման, այդ սարքավորումների վերակառուցման ու մոդեռնացման մի-
ջոցով արտադրական կարողությունների ավելացման և դրանց առավելագույն
օգտագործման, հերթափոխության գործակիցների բարձրացման, հիմնական
ֆոնդերի կազմում դրանց ակտիվ մասի ավելի արագ աճի և ապրանքանյութա-
կան չարդարացված գերնորմատիվային մնացորդների կրճատման հաշվին։
Արտադրության արդյունավետության բարձրացման կարևորագույն պայ-
մաններից մեկը, աշխատանքի տեխնիկական զինվածության համեմատու-
թյամբ, արտադրողականության աճի առավել բարձր տեմպերի ապահովումն
է։ Պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին փոխադրված ձեռ-
նարկությունների աշխատանքի փորձը համոզիչ կերպով ցույց է տալիս, որ
իրականում, ֆոնդավճարի կիրառման շնորհիվ, ստեղծվել է արտադրության
արդյունավետության բարձրացման այդպիսի բարենպաստ պայման։ Տնտե-
սավարման նոր պայմաններում ձեռնարկությունները շահագրգռված են, որ-
պեսզի արտադրության ծավալի ավելացումը, առաջին հերթին, ապահովվի
գործող կարողությունների օգտագործումն ինտենսիվացնելու միջոցով։ Ավ-
տոդողերի գործարանում, երբ 1967 թվականին, տնտեսավարման նոր սիս-
տեմին անցնելու առաջին տարում, 1966 թվականի համեմատությամբ, աշ-
խատանքի տեխնիկական զինվածությունն աճել է 1,6, ապա աշխատանքի
արտադրողականությունը՝ 4,8 տոկոսով, որի շնորհիվ ֆոնդահատույցը բարձ-
րացավ 2,9 տոկոսով։ Ֆոնդահատույցի բարձրացումն արդեն ո՛չ թե ժամա-
նակավոր, այլև օրինաչափ երևույթ է դարձել։ Այդ է վկայում թեկուզ այն
փաստը, որ 1969 թվականին, 1968 թվականի համեմատությամբ, տեխնիկա-
կան զինվածության աճի տեմպերի նկատմամբ արտադրողականության աճի
առավել բարձր տեմպերի շնորհիվ ֆոնդահատույցը բարձրացավ ավելի քան
4,7 տոկոսով։ Հատկանշական է, որ ավտոդողերի գործարանում աշխատանքի
արտադրողականության աճը հիմնականում ձեռք է բերվել ո՛չ թե նոր, ավելի
կատարելագործված տեխնիկայի ներդրման ու կիրառման, այլև գործող սար-
քավորումների մոդեռնացման, վերակառուցման և տեխնոլոգիական պրոցես-
ների կատարելագործման (ամբողջ աճի 18 տոկոսը), տեխնիկական ուսուց-
ման միջոցով բանվորների արտադրական որակավորումը բարձրացնելու
(ամբողջ աճի 18—20 տոկոսը) և բանվորական ժամանակի հաշվեկշռի ավե-
լացման շնորհիվ (ամբողջ աճի ավելի քան 32 տոկոսը)։
Աշխատամեքենաները, սարքավորումները և մեխանիզմները հիմնական
ֆոնդերի այն մասն են, որով որոշվում է ձեռնարկության արտադրական հզո-
րությունը։ Արտադրական հիմնական ֆոնդերի կառուցվածքում այդ ֆոնդերի
բացարձակ աճն աշխատողների տեխնիկական զինվածության ավելացման և
աշխատանքի արտադրողականության բարձրացման հիմնական գործոնն է։



Արտադրաֆոնդերի նկատմամբ վճարի սահմանումը նպաստեց նաև ար-
տադրական հիմնական ֆոնդերի կառուցվածքի բարելավմանը, այսինքն՝ աս-
տիճանաբար բարձրացավ դրանց ակտիվ մասի՝ մեքենաների ու սարքավո-
րումների տեսակարար կշիռը։
Այսպես, օրինակ, 1965—1970 թթ. շենքերի և կառուցվածքների հաշվին
սարքավորումների, աշխատամեքենաների և մեխանիզմների տեսակարար
կշիռը Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանում բարձրացել է 5,0, ավ-
տոդողերի գործարանում՝ 4,6 և Կիրովի անվան քիմիական կոմբինատում՝ 4,9
տոկոսով։ Հիմնական ֆոնդերը 1965—1970 թթ. Կիրովի անվան քիմիական
կոմբինատում աճել են 204,9, Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական
գործարանում՝ 156,4 և ավտոդողերի գործարանում՝ 145,4 տոկոսով։ Արտա-
դրության արդյունավետության բարձրացման գործում պակաս կարևորություն
չունի նաև սարքավորումների, աշխատամեքենաների և մեխանիզմների ժա-
մանակին գործարկումը և դրանց կարողությունների արագ յուրացումը։ Ժա-
մանակակից գիտա-տեխնիկական առաջադիմության պայմաններում, երբ
ավելի արագ է վրա հասնում մեքենաների բարոյական մաշվածությունը,
ավելի քան ակտուալ է դարձել դրանց ժամանակին գործարկումն ու յուրա-
ցումը։ Պլանավորման և տնտեսական խթանման հին կարգի պայմաններում
համապատասխան խթանի բացակայության պատճառով արտադրական կո-
լեկտիվները քիչ էին շահագրգռված ժամանակին իրականացնելու չտեղակայ-
ված սարքավորումների տեղակայումն ու գործարկումը։ Այդ էր պատճառը,
որ բավական թվով մեքենաներ տարիներ շարունակ չէին տեղակայվում և
բարոյական մաշվածության հետևանքով դուրս էին գրվում որպես լոմ, որով
հասարակությունը կրում էր հասարակական աշխատանքի վիթխարի կորուստ-
ներ։
ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումի որոշումներին հա-
մապատասխան, ֆոնդավճար սահմանվեց նաև այդ տեսակի հիմնական ֆոն-
դերի համար, որպեսզի հրահրվի ձեռնարկությունների նյութական շահագըր-
գըռվածությունը՝ ժամանակին տեղակայելու և գործարկելու ստացված սար-
քավորումները, աշխատամեքենաները և մեխանիզմները։
Տնտեսական ռեֆորմի մոտ հինգ տարվա արդյունքները ցույց են տալիս,
որ, ինչպես ամբողջ արդյունաբերության մեջ, այնպես էլ դրա առանձին ճյու-
ղերում ու ձեռնարկություններում զգալի չափով կրճատվել են չտեղակայված
սարքավորումների ու մեքենաների գերնորմատիվային մնացորդները։ Այդ
երողությունն ակնհայտ է այնպիսի խոշոր ձեռնարկություններում, ինչպիսիք
են՝ Կիրովի անվան քիմիական կոմբինատը և ալյումինի գործարանը։
Ալյումինի գործարանում, մինչև աշխատանքի նոր պայմաններին անցնե-
լը, հաշվվում էին 1200—1300 հազար ռուբլի չտեղակայված և բանկի կողմից
չվարկավորված սարքավորումներ, որոնց ընդհանուր արժեքը կազմում էր
հիմնական ֆոնդերի արժեքի 5,1—5,5 տոկոսը։ Չտեղակայված սարքավորում-
ների ավելի քան 83 տոկոսը կազմում էր արտասահմանից ստացված «Ստան-
Կվարտո—250» հզոր կոմպլեքսը, որի արժեքը մոտ երկու անգամ ավելի էր,
քան ոսկերչական գործարանի հիմնական ֆոնդերն ամբողջությամբ վերցրած։
Ձեռնարկության տնտեսագիտական ծառայության հաշվարկները ցույց
տվեցին, որ եթե այդ կոմպլեքսն այլ կազմակերպություններին չհանձնվի
(որովհետև ձեռնարկության համար այն պետք չէր), ապա ձեռնարկությունը
ստիպված կլիներ 60 հազար ռուբլու ավելի ֆոնդավճար մուծել բյուջեին, որի

հետևանքով հաշվարկային շահութաբերությունը կիջներ 6,1 տոկոսով, իսկ տնտեսական խթանման ֆոնդերի հատկացումները կկրճատվեին ավելի քան 52 հազար ռուբլով։ Վերադաս կազմակերպության հանձնարարությամբ այդ սարքավորումը 1968 թվականի վերջերին հանձնվեց Միխայլովկա գործարանին։

Հիմնական ֆոնդերի արդյունավետ օգտագործման և դրանց յուրաքանչյուր ռուբլուց ստացվող արտադրանքի ավելացման գործում բարձրացնելով ձեռնարկությունների և արտադրական միավորումների նյութական շահագրգռվածությունն ու պատասխանատվությունը, ֆոնդավճարը դրանով իսկ վճռական ազդեցություն է գործում արտադրանքի ինքնարժեքի իջեցման վրա։

Երևանի ավտոդողերի գործարանը 1970 թվականին, արտադրական կարողությունների և հիմնական ֆոնդերի օգտագործումը բարելավելու շնորհիվ, զգալիորեն իջեցրել է արտադրանքի ինքնարժեքը և դրա հաշվին տնտեսել 588 հազար ռուբլի, որից 332 հազարի հումք և նյութեր, 124 հազարի աշխատավարձ և 132 հազարի սարքավորումներ, շահագործման և պահպանման ծախսեր։

Արդյունաբերության արտադրաֆոնդերի մեկ քառորդից ավելին կազմում են ձեռնարկությունների շրջանառու միջոցները, որոնց շրջապտույտի արագացումն արտադրաֆոնդերի օգտագործումը բարելավելու կարևոր գործոն է։ Այդ է պատճառը, որ կուսակցության Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումի որոշումներին համապատասխան ֆոնդավճար սահմանվեց նաև արտադրաֆոնդերի այդ տեսակի համար։

Շրջանառու միջոցների շրջապտույտի արագացումը կարևոր նշանակություն ունի խնայողության ռեժիմի իրականացման և արտադրության ծավալը մեծացման համար լրացուցիչ ռեսուրսներ հայթայթելու գործում։ Այդ ամենն ապահովում է պլանի կատարումը, միջոցների ավելի փոքր գումարով, մի հանգամանք, որը նպաստում է արտադրության աճի և կուտակումների մեծացմանը։ Այսպես, ավտոդողերի գործարանում, եթե 1966 թվականին, 1965 թվականի համեմատությամբ, արտադրության ծավալի և շրջանառու միջոցների աճի հարաբերակցությունը կազմում էր 1,5, ապա 1970 թվականին մոտավորապես հավասարվել է, իսկ շահույթն աճել է ավելի քան 1,8 անգամ։ Արտադրության արդյունավետության բարձրացումը, անշուշտ, զուգակցվել է աշխատողների նյութական պայմանների բարելավմամբ։ Ավտոդողերի գործարանում մեկ աշխատողի տարեկան վաստակը, ներառյալ նյութական խրախուսման ֆոնդից տրվող պարգև-հավելումները, 1970 թվականին, 1966 թվականի համեմատությամբ, աճել է ավելի քան 23,7 տոկոսով։

Նոր հնգամյակում, երբ կուսակցության կողմից խնդիր է դրված արտադրանքի ընդհանուր աճի 87—90 տոկոսը ստանալ գործող սարքավորումների ու մեքենաների ինտենսիվ օգտագործման և աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին, անհամեմատ բարձրանում է ֆոնդավճարի դերը՝ որպես այդ սարքավորումների ու մեքենաների արդյունավետ օգտագործման տնտեսական հիմնական խթանի։

Ֆոնդավճարի դերի բարձրացումը պահանջում է՝ կատարելագործել դրա կառուցման, հաշվարկման և մուծման ձևերն ու մեթոդները, օպտիմալ մակարդակի վրա պահել տնտեսական խրախուսման մյուս լծակների հետ ունեցած կապը և ուժեղացնել դրա արդյունավետության պրոպագանդումը։

Ս. Մ. ՉԱՔԱՐՅԱՆ

# ԱՊԱՀՈՎԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԱՐԶՈՒՄ

Գյուղատնտեսական արտադրությունը պլանաչափ զարգացնելու, դրա արդյունավետությունն ըստ ամենայնի բարձրացնելու նպատակով, պետությունը մեծ ուշադրություն է նվիրում սովխոզների և կոլտնտեսությունների տնտեսական հաշվարկի, ֆինանսների ամրապնդման հարցերին, լայնորեն օգտագործելով այնպիսի տնտեսական կատեգորիաներ, ինչպիսիք են՝ վարկը, ապահովագրությունը և այլն։

Ապահովագրության հիմնական նպատակն այն է, որ փոխհատուցվի բնակլիմայական անբարենպաստ պայմանների հետևանքով գյուղատնտեսությանը հասցված վնասը, նորմալ պայմաններ ստեղծվեն տնտեսությունների գործունեության և ընդլայնված վերարտադրության իրագործման համար։

Չորրորդ տարին է, ինչ կոլտնտեսությունների գույքի ապահովագրությունը կիրառվում է նոր պայմաններում։ Այժմ գյուղատնտեսական կուլտուրաների բերքը ո՛չ միայն ապահովագրված է կարկտից, փտելուց, հեղեղից, փոթորկից, մրրիկից և մի շարք այլ տարերային աղետներից ոչնչանալու և վնասվելու դեպքերից, այլև երաշտի, անբավարար ջերմության, գերխոնավության, ոռոգման աղբյուրներում անջրության կամ սակավաջրության և տվյալ վայրի համար արտասովոր օդերևութաբանական կամ բնական այլ պայմանների, ինչպես նաև բույսերի հիվանդությունների, վնասատուների և հրդեհի հետևանքով այդ կուլտուրաների կորստի կամ վնասվելու դեպքում։

Ապահովագրության նոր պայմաններում փոխհատուցում է վճարվում ո՛չ միայն բերքի կորստի, այլև պտղատու-հատապտղատու և այլ բազմամյա տնկիները ոչնչանալու դեպքում, մի բան, որ շատ կարևոր է այն կոլտնտեսությունների համար, որոնք զբաղվում են այգեգործությամբ, խաղողագործությամբ և այլն։

Անասունների ապահովագրության կարգի փոփոխման շնորհիվ զգալի չափով պակասեցին կոլտնտեսությունների ապահովագրական վճարները, լրիվ պահպանելով նյութական օգնություն ցույց տալու արդյունավետությունը՝ անասունները վարակիչ հիվանդությունների, տարերային աղետների, հրդեհի, իսկ տոհմայինները՝ նաև այլ պատճառներից առաջացած կորստի դեպքում։ Ընդ որում, ապահովագրությունը տարածվում է մատղաշների, տնային թռչունների, մուշտակամորթ գազանների, ճագարների, մեղվաընտանիքների վրա։

Նոր պայմաններում լրիվ բալանսային արժեքով են ապահովագրված շենքերը, կառուցվածքները, գյուղատնտեսական տեխնիկան, մեքենայացված փոխադրամիջոցները, խրիգացիոն և մելիորատիվ կառուցվածքները, ձկնորսանավերը, ձկնորսության գործիքները, գույքը, արտադրանքը, հումքը, նյութերը և կոլտնտեսությունների մնացած ունեցվածքը։

Այսպիսով, պետական ապահովագրությունը, որն անցկացվում է նոր պայմաններում, ընդգրկում է կոլտնտեսությունների, միջկոլտնտեսային ձեռնարկությունների, կազմակերպությունների և միավորումների ողջ ունեցվածքը և ըստ էության այն կոչված է անեացնելու բնության բոլոր տարերային ուժերի պատճառած վնասները։ Գործող օրենսդրությամբ ապահովագրական մարմինները չեն կարող ոչ մի շահույթ ունենալ կոլտնտեսություններում ապահովագրական գործառնություններ անցկացնելիս։

Ընթացիկ տարում չօգտագործված ժամանակավոր միջոցների մնացորդի գումարը նախատեսվում է բացառապես օգտագործել հաջորդ տարիներում կոլտնտեսություններին ապահովագրական հատուցում վճարելու համար, եթե ընթացիկ տարվա վճարներն անբավարար են։

Պետական ապահովագրության գործառնություններն կատարվում են տնտեսական հաշվարկի հիման վրա՝ յուրաքանչյուր միութենական հանրապետությունում ամբողջությամբ վերցրած։ Սակայն ըստ տարիների բերքատվության զգալի տատանումների կապակցությամբ և ապահովագրության արդյունքներին համապատասխան, գործառնությունների առավել ֆինանսական կայունության համար ստեղծված է կոլտնտեսությունների գույքի ապահովագրության միջհանրապետական պահեստային ֆոնդ։ Այն գոյանում է ապահովագրական վճարներից 3 տոկոս մասհանման և կլիմայական բարենպաստ տարիներին գործառնությունների անցկացման արդյունքներից՝ ժամանակավոր ազատ միջոցների մնացորդի 25 տոկոսի հաշվին։ Միջհանրապետական պահեստային ֆոնդը նախատեսված է միութենական հանրապետությունների պետական ապահովագրության մարմիններին բացառապես վերադարձվող փոխտվության համար այն տարիներին, երբ ապահովագրական հատուցում տալիս չեն բավարարի ընթացիկ վճարները և անցյալ տարիների միջոցների մնացորդը։

1968—1970 թվականների գործառնությունների անցկացման արդյունքների վերլուծությունը ցույց է տալիս, որ պետական ապահովագրությունը պետության կողմից կազմակերպված ճկուն և միասնական սիստեմ է՝ կոլտընտեսություններին փոխադարձ օգնելու, բնության տարերային ուժերի ազդեցության դեպքում էական ներգործություն ունենալու գյուղատնտեսության արտադրության կայունությունն ապահովելու գործում։

Ամբողջությամբ վերցրած ՍՍՀՄ-ում երկու տարվա ընթացքում, ապահովագրության անցկացման նոր պայմաններում, կոլտնտեսություններին վճարվել է 2 միլիարդ 303 միլիոն ռուբլի ապահովագրական հատուցում կամ գրեթե այդ նպատակով նախատեսված ողջ միջոցները (98,2 տոկոս)։

Պետական ապահովագրության արդյունավետության վերաբերյալ կարելի է դատել Հայկական ՍՍՀ-ում 1968—1970 թթ. պետական ապահովագրության մարմինների կողմից կոլտնտեսություններին ցույց տրված տնտեսական օգնության չափերից։ Ինչպես հայտնի է, գյուղատնտեսական արտադրության համար կլիմայական պայմաններն ինչպես 1968 թ., այնպես էլ 1969—1970 թթ.,



եղել են անբարենպաստ։ Անսովոր ցրտերը, սառնամանիքը, աշնան-ձմռան շրջանում ձյունը, գարնան, ամռան-աշնան ժամանակ՝ երաշտը, հեղեղումները, ցրտահարությունը, կարկտահարությունը բացասական ազդեցություն թողեցին գյուղատնտեսական կուլտուրաների ցանքերի ու խաղողի այգիների վրա և մեծ վնաս պատճառեցին կոլտնտեսություններին և սովխոզներին։

Հանրապետությունում ապահովագրական հատուցման սահմանման ու վճարման հետ կապված աշխատանքներն անցկացվեցին կազմակերպված, կարճ ժամկետում, Հայկական ՍՍՀ ֆինանսների մինիստրության և ֆինանսական մարմինների անմիջական վերահսկողությամբ և գյուղատնտեսության մինիստրության մարմինների հետ համագործակցված։

Այդ աշխատանքների կատարման պրոցեսում ապահովագրական մարմինները հատուկ ուշադրություն նվիրեցին ապահովագրական հատուցումների վճարման վերաբերյալ փաստաթղթերի ճիշտ և ժամանակին ձևակերպմանը, փաստացի ցանքատարածությունների, համախառն բերքի վերաբերյալ տվյալների ստուգմանը այն հաշվով, որպեսզի կոլտնտեսություններին ապահովագրական հատուցումներ վճարվեն գործող օրենսդրությանը համապատասխան։

1970 թվականին Հայկական ՍՍՀ կոլտնտեսություններին ապահովագրական հատուցում է վճարվել 7737 հազար ռուբլի, որից գյուղատնտեսական կուլտուրաների ապահովագրության հատուցումները կազմել են 7230 հազար ռուբլի։ Իսկ, ընդհանուր առմամբ, տարերային աղետների՝ գյուղատնտեսությանը պատճառած վնասների դիմաց 1968—70 թթ. վճարված է 22,5 միլիոն ռուբլի։

Գյուղական 34 շրջանների (որտեղ կան կոլտնտեսություններ) ավելի քան 50 տոկոսը, առավել շատ ապահովագրական հատուցումներ են ստացել, քան կազմել են կոլտնտեսությունների մուծած ապահովագրական վճարները։

Հոկտեմբերյանի շրջանի կոլտնտեսությունները գյուղատնտեսական կուլտուրաների բերքը պարտադիր ապահովագրելու համար մուծել են ընդամենը՝ 1212 հազար ռուբլի ապահովագրական վճարներ, որի 91 տոկոսը կամ՝ մոտ 1103 հազար ռուբլին նախատեսված էր հատուցումների համար։ Հայտնի է, որ մուտքերի 4 տոկոսը հատկացվում է տարերային աղետները և դժբախտ պատահարները կանխելուն, 3-ը՝ միջհանրապետական պահեստային ֆոնդին, 2-ը՝ ապահովագրության հետ կապված ծախսերին։ Ինչպես տեսնում ենք, կոլտնտեսությունների գույքի պետական պարտադիր ապահովագրության գումարից պետական բյուջեին մասհանումներ չեն նախատեսված և կոլտնտեսություններից ստացված գումարներն ապահովագրության միջոցով որպես վնասների փոխհատուցում, գրեթե լրիվ վերադարձվում են նրանց։

1970 թվականին բնակլիմայական անբարենպաստ պայմանների հետևանքով Հոկտեմբերյանի շրջանի կոլտնտեսությունների մեծամասնությունը բանջարա-բոստանային և մյուս կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարից, միջին հաշվով, ավելի քիչ բերք ստացավ, քան անցած հինգ տարիներին, որի համար հատուցվեց ավելի քան 1500 հազար ռուբլի կամ այդ նպատակի համար նախատեսված գումարի հանդեպ հատուցումը կազմեց 136,0 տոկոս։

Նման վիճակ գոյություն ունի նաև էջմիածնի շրջանում, որտեղ նախատեսված 725 հազար ռուբլու դիմաց հատուցումները կազմեցին 980 հազար ռուբլի. համապատասխանորեն՝ Շամշադինում՝ 550 հազարի դիմաց 1032 հազար ռուբլի, Աբովյանում՝ 174 և 292, Ապարանում՝ 70 և 155, Ախուրյանում՝ 260 և 507, Սիսիանում՝ 157 և 240 հազար ռուբլի և այլն։

1969 թվականին Վարդենիսի շրջանի Գյունաշլու կոլտնտեսությունը միայն աշնանացան հացահատիկային կուլտուրաների բերքը վնասվելու և ոչնչանալու համար ապահովագրական հատուցում է ստացել 18 հազար ռուբլի, այն դեպքում, երբ ապահովագրական վճարը կազմել է 5200 ռուբլի։ Իսկ շրջանի 6 կոլտնտեսության ապահովագրական վճարներն աշնանացան հացահատիկային կուլտուրաների համար կազմել են 42124 ռուբլի, հատուցման գումարը՝ 94627 ռուբլի կամ երկու անգամ ավելի։

Ախուրյանի շրջանի հինգ կոլտնտեսության միայն շաքարի ճակնդեղի բերքը վնասվելու համար ապահովագրական հատուցում է վճարվել 80125 ռուբլի, մինչդեռ այդ կոլտնտեսություններն ապահովագրության դիմաց մուծել են ընդամենը 22616 ռուբլի կամ հատուցման գումարը մուծումներից 3,5 անգամ ավելի է։

Սպիտակի շրջանի Մեծ Պարնիի, Կաթնաղբյուրի, Գոգարանի, Ծաղկաբլուրի, Սարահարթի և Ջրաշենի կոլտնտեսությունները շաքարի ճակնդեղի ապահովագրության համար հատուցում են ստացել 54221 ռուբլի, 25195 ռուբլի ապահովագրական վճարների դեպքում կամ հատուցման գումարը մուծումներին գերազանցել է երկու անգամ։

էջմիածնի շրջանի 6 կոլտնտեսության բանջարա-բոստանային կուլտուրաները վնասվելու համար ապահովագրական հատուցում է վճարվել 236320 ռուբլի, նախատեսված 82647 ռուբլու փոխարեն կամ մոտ երեք անգամ ավելի։

Հանրապետության կոլտնտեսություններին խոշոր օգնություն է ցույց տրըվել շենքերը, կառուցվածքները, շինությունները, սարքավորումները և մնացած գույքը ձյան առատ տեղումների, հեղեղումների, երկրաշարժի և այլ պատճառներով ոչնչանալու և վնասվելու համար։ Հիշյալ պատճառներով գույքը ոչնչանալու համար կոլտնտեսությունները վնասի հատուցման կարգով երեք տարվա ընթացքում ստացել են 1962 հազար ռուբլի, որից՝ 1968 թվականին 780 հազար ռուբլի, ընդ որում, այդ գումարը, տվյալ նպատակի համար նախատեսված միջոցների համեմատությամբ, կազմել է 106 տոկոս։ Իսկ կենդանիների ապահովագրության հատուցումները կազմել են 506,0 հազար ռուբլի։

Երբ մենք տնտեսագիտորեն վերլուծում ենք ապահովագրության արդյունավետությունն առանձին կոլտնտեսություններում, պարզվում է, որ արտակարգ, անսովոր տարերային աղետների ժամանակ աննշան ապահովագրական մուծումների դեպքում տուժած կոլտնտեսությունները պետական ապահովագրության օրգաններից խոշոր չափերի հատուցումներ են ստանում, որը նրանց հնարավորություն է ընձեռում ո՛չ միայն շուտափույթ վերացնելու աղետների պատճառած վնասները, այլև իրենց տրամադրության տակ միջոցներ ունենալու կոլտնտեսականների աշխատանքի դիմաց դրամական վարձատրություն տալու, արտադրության նորմալ կազմակերպման և, վերջապես, դրա հետ կապված ծախսերը կատարելու համար։



Սակայն, ըստ էության, դա միայն սկիզբն է, առաջին խոշոր քայլը, որն ուղղված է ապահովագրության արմատական վերակառուցմանը, նպատակ ունենալով բարձրացնելու դրա տնտեսական արդյունավետությունը գյուղատնտեսության մեջ։ Անհրաժեշտ է մշտապես խոշոր գիտա-հետազոտական աշխատանք ծավալել հետագայում ապահովագրությունը կատարելագործելու համար, լուրջ ուշադրություն դարձնելով այդ գործի տեսությանն ու պրակտիկային վերաբերող հարցերին։

Այժմ արդեն կարելի է որոշել առաջնակարգ հարցերը, ինչպես նաև խոշոր պրոբլեմները, որոնց հաջող լուծմամբ հեռանկարում ավելի կկատարելագործվի ապահովագրությունը։ Դա հնարավորություն կտա կոլտնտեսությունների էկոնոմիկան ավելի ամրապնդելու և նրանց ֆինանսական հնարավորությունների աճին համապատասխան առավել մեծ չափերով ապահովագրական ֆոնդ ստեղծելու։

Ամենից առաջ անհրաժեշտ է լուծել պահեստային ֆոնդերի ձևավորման ու օգտագործման հարցերը։ Ըստ գործող օրենսդրության, կոլտնտեսությունների վճարների 3 տոկոսից բացի, կենտրոնացված միջհանրապետական պահեստային ֆոնդին փոխանցվում է միայն ազատ միջոցների մնացորդի 25 տոկոսը, որը գոյանում է նպաստավոր տարիներին, իսկ 75 տոկոսը մնում է միութենական հանրապետությունների պետական ապահովագրության գլխավոր վարչությունների հաշիվներում։ Պահեստային ֆոնդի անբավարար կենտրոնացման հետևանքով իջնում է միջոցների օգտագործման մանևրելիությունը, որը կարող է հանգեցնել այնպիսի դրության, երբ ժամանակավոր ֆինանսական օգնություն ցույց տալու համար միջհանրապետական ֆոնդի միջոցները կլինեն անբավարար, այն դեպքում, երբ առանձին միութենական հանրապետությունների հաշիվներում կլինի միջոցների զգալի մնացորդ։ 1969 թվականը լրիվ հաստատեց այդպիսի վիճակի հնարավորությունն անգամ այնպիսի միութենական հանրապետություններում, ինչպիսիք են՝ ՌՍՖՍՀ, Ուկրաինական ՍՍՀ և Ուզբեկական ՍՍՀ, որոնք ապահովագրության ենթակա բազմաթիվ օբյեկտներ, հսկայական տերիտորիա և, հետևապես, գործառնությունների ֆինանսական մեծ կայունություն ունենալով հանդերձ դիմեցին միջհանրապետական պահեստային ֆոնդի օգնությանը։

Կոլտնտեսությունների գույքի, հատկապես գյուղատնտեսական կուլտուրաների բերքի ապահովագրությունը տարերային բոլոր աղետներից (ներառյալ երաշտը), իհարկե, տնտեսական տեսակետից արդյունավետ է անցկացնել ժամանակավոր ազատ միջոցների լրիվ կենտրոնացման պայմաններում, որոնք գոյանում են նպաստավոր տարիներին։

Ապահովագրության խոշոր արդյունավետության մյուս ոչ պակաս կարևոր խնդիրը կոլտնտեսություններին բուսաբուծության գծով տարերային աղետներից պատճառած վնասների դիմաց հատուցման մակարդակի բարձրացումն է։ Գործող օրենսդրությամբ կոլտնտեսություններին փոխհատուցում է վճարվում վնասի 50 տոկոսի չափով, որը հաշվարկվում է ըստ գործող պետական գնման գների՝ 1 հեկտարի վերջին 5 տարվա միջին և տվյալ տարվա բերքի արժեքի տարբերությունից, ելնելով գյուղատնտեսական կուլտուրայի ցանքերի ամբողջ տարածության տվյալներից։ Որպեսզի բարձրացվի վնասի հատուցման մակարդակը, թեկուզ 10 տոկոսով, պահանջվում է ապահովագրական ֆոնդը կոլտնտեսությունների վճարների հաշվին տարեկան միջին չափով ավելացնել

250 միլիոն ռուբլով կամ դա ստեղծել ներքին ռեզերվներից՝ ապահովագրության սիստեմը կատարելագործելու միջոցով, քանի որ վերջին երեք տարվա պրակտիկան ցույց է տալիս, որ ապահովագրության վճարների գործող տարիֆների հաշվին նման գումարի ապահովումը հնարավոր չէ։

Վնասի հատուցման մակարդակը կարելի է բարձրացնել, եթե բուսաբուծությունից ստացած կորստի դիմաց, արժեքային արտահայտությամբ, կոլտնտեսությանը վճարվի հատուցում ոչ թե առանձին գյուղատնտեսական կուլտուրաների, այլ, ամբողջությամբ վերցրած, բուսաբուծության համար։ Դրանով կդադարեցվի ոչ ռացիոնալ հատուցումների վճարումն այն դեպքերում, երբ կոլտնտեսությունը բուսաբուծությունից, միջին մակարդակի համեմատությամբ, կորուստ չի ունենա, այլ կունենա առանձին կուլտուրաների բերքից, որը ծածկելու է առավել բարձր բերք ունեցող առանձին կուլտուրաներով։

Խոր ուսումնասիրություն պահանջող պրոբլեմային հարցերից խոշոր է բնության տարերային ուժերի աննպաստ ներգործությունից բուսաբուծության արտադրանքի որակի իջեցման հետևանքով կորստի փոխհատուցումը։ Գործող կարգի պայմաններում կոլտնտեսություններին փոխհատուցում է վճարվում միայն բերքի քանակական կորստի դեպքում, մինչդեռ նրանք հաճախ տնտեսական զգալի վնաս են կրում ստացած արտադրանքի որակի իջեցումից, հատկապես ծխախոտի, բամբակի, խաղողի և այլ կուլտուրաների։

Այդ հարցի լուծումը կարևոր է։ Կոլտնտեսությունների էկոնոմիկայի ամրապնդման և դրանց ֆինանսական հնարավորությունների աճի շնորհիվ, մեր կարծիքով, մոտ ապագայում կարելի է միջոցներ հատկացնել այդ նպատակին։

Ժողովրդատնտեսական խոշոր պրոբլեմ է նաև սովխոզներում ապահովագրության կատարելագործումը։ Բանն այն է, որ սովխոզներում ապահովագրության ֆոնդը ներկայումս ստեղծվում է օգուտներից, մասհանումների հաշվին, որը հնարավորություն է տալիս փոխհատուցելու բնության տարերային ուժերի պատճառած վնասի միայն 10—12 տոկոսը։ Այսպիսի հանգամանքը, բնականաբար, չի կարող էապես նպաստել այն սովխոզների էկոնոմիկայի ամրապնդմանը, որոնք մեծ չափով տուժում են բնական աղետներից։

Նոր պայմաններում, կոլտնտեսությունների գույքի ապահովագրության փորձի կուտակման հետ, նպատակահարմար է մշակել առաջարկություններ՝ սովխոզներում ևս պետական ապահովագրության նոր սիստեմ կիրառելու։ Դա կարելի է սովխոզները լրիվ տնտհաշվարկի փոխադրելու միջոցով, որին պետք է ձեռնամուխ լինել այժմվանից։

Կարելի է վստահ ասել, որ հեռանկարում պետական ապահովագրությունը մեծ չափով կզարգանա և առավել լրիվ կհամապատասխանի այն խնդիրներին, որոնք կուսակցությունն ու կառավարությունն առաջադրել են գյուղատնտեսության էկոնոմիկայի հետագա վերելքի համար։

Լ. Ա. ՄՈՏԻԼՅՈՎ
Մոսկվա



# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԵՐԿՈՒ ՈԼՈՐՏՆԵՐԸ

Սոցիալիզմի ժամանակ էկոնոմիկայի անշեղ աճը և պլանային բնույթը օբյեկտիվորեն պայմանավորում են աշխատունակ բնակչության ռացիոնալ օգտագործման հնարավորությունն ու անհրաժեշտությունը։ Սոցիալիստական հասարակարգում աշխատունակ ողջ բնակչությանը հանրօգուտ աշխատանքի ներգրավելու տնտեսական հիմքն արտադրամիջոցների հանրային սեփականությունն է։ Մեր հասարակությունը, օգտվելով ժողովրդական տնտեսության պլանաչափ, համամասնաբար զարգացման օրենքից, ձգտում է առավել արդյունավետ օգտագործել աշխատանքային ռեսուրսները, քանի որ այն սոցիալիզմի ժամանակ ժողովրդի բարեկեցության բարձրացման կարևորագույն պայմանն է։

Սոցիալիզմի ժամանակ հանրօգուտ գործունեությունը դրսևորվում է երկու ոլորտում. առաջինը՝ հասարակական արտադրության մեջ, երկրորդը՝ տնային ու անձնական օժանդակ տնտեսությունում։ Այս ոլորտները տարբերվում են իրենց տնտեսական բնույթով և տարբեր նշանակություն ունեն սոցիալիստական հասարակության համար։ Որոշիչ դերը պատկանում է հասարակական արտադրությանը, քանի որ այդ ոլորտում զբաղված բանվորների աշխատանքը հանդես է գալիս որպես անմիջականորեն հասարակական և ավելի արտադրողական։ Հենց հասարակական արտադրության զարգացումն էլ կանխորոշում է աշխատունակ բնակչության զբաղվածության բնույթն ու աստիճանը։

Սակայն այս բոլորը չի բացառում սոցիալիզմի ժամանակ անձնական օժանդակ տնտեսության գոյության և այնտեղ հասարակության աշխատանքային ռեսուրսների մի մասի զբաղվածության հնարավորությունը։ Սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում անձնական օժանդակ տնտեսության գոյությունը լիովին օրինաչափ է։ Դա սոցիալիստական հասարակության օբյեկտիվորեն անհրաժեշտ տարրն է՝ նրա զարգացման տվյալ փուլում։

Հասարակական արտադրությունն իր զարգացման արդի փուլում անձնական աշխատանքի ոլորտի կարիք ունի։ Այդ ոլորտը հասարակությանը լրացուցիչ տալիս է այն, ինչն այս կամ այն պատճառով չի կարող լրիվ բավարարել հասարակական արտադրությունը։ Խոսքը վերաբերում է, ամենից առաջ, սննդամթերքներին։ Ներկայումս գյուղատնտեսական մի շարք մթերքների արտադրության գործում դեռևս որոշ դեր է խաղում անձնական օժանդակ տըն-

տեսությունը։ Այսպես, ՍՍՀՄ-ում անձնական օժանդակ տնտեսություններում 1969 թ. արտադրվել է կարտոֆիլի ընդհանուր քանակի 67, բանջարեղենի՝ 39, մսի՝ 35, կաթի՝ 37, ձվի՝ 56, բրդի՝ 21 տոկոսը և այլն (Народное хозяйство СССР в 1969, М., 1970, стр. 295)։ Եվ, պատահական չէ, որ մեր կուսակցությունն ու կառավարությունը հոգատարություն են ցուցաբերում նաև անձնական օժանդակ տնտեսության զարգացմանը։ ՍՄԿԿ XXIV համագումարում իր զեկուցման մեջ Ա. Ն. Կոսիգինը նշեց. «Անհրաժեշտ է խրախուսել անասունների ու թռչունների գլխաքանակի ավելացումը գյուղական բնակչության սեփական տնտեսություններում (իհարկե, որոշված նորմաների սահմաններում) և բնակչությանն օգնություն ցույց տալ անասունները կերով և արոտավայրով ապահովելու գործում»։

Իբրև արտադրության յուրահատուկ սոցիալական ձև, անձնական օժանդակ տնտեսությունը ծագել և ձևավորվել է սոցիալիստական բազիսի զարգացման ու ձևավորման հետ միասին։ Այդ տնտեսությունը ներկայումս չի կարելի վերացնել. երբ հանրային տնտեսությունները կզարգանան այն աստիճան, որ իրենց արտադրանքով լիուլի կբավարարեն եղած պահանջմունքը, անձնական օժանդակ տնտեսությունները կկորցնեն իրենց նշանակությունը։ Նրան լրիվ կփոխարինի հանրային խոշոր ու բարձր արտադրողական տնտեսությունը։

Սոցիալիզմի ժամանակ ռացիոնալ զբաղվածությունն արտահայտվում է հասարակության հիմնական արտադրաուժերի առավել նպատակահարմար ու արդյունավետ օգտագործմամբ, ապահովում հասարակական աշխատանքի արտադրողականության աճի բարձր տեմպեր և այդ հիման վրա առավել լրիվ բավարարում ողջ հասարակության ու նրա անդամների մշտապես աճող պահանջները։

Սոցիալիզմի ժամանակ ռացիոնալ զբաղվածությունն առաջանում է հասարակական տնտեսությունն աշխատուժով պլանաչափ ապահովելու, ժողովրդական տնտեսության զանազան ճյուղերի համար աշխատողների պլանաչափ պատրաստման, ըստ զբաղվածության ոլորտների, ժողովրդական տնտեսության ճյուղերի և երկրի տերիտորիայի աշխատունակ բնակչության առավել նպատակահարմար բաշխում և վերաբաշխում ապահովելու, ինչպես նաև ժողովրդական տնտեսության բոլոր բաժանմունքներում մշտական բանվորական կադրերի ստեղծման տնտեսական խթանման ճանապարհով։ Հասարակական արտադրության մեջ ռացիոնալ զբաղվածության պրոբլեմը լուծելու համար կարևոր է արտադրության ոլորտների ու ժողովրդական տնտեսության ճյուղերի միջև աշխատանքային ռեսուրսների բաշխման օպտիմալ համամասնությունների սահմանումը։

Նյութական արտադրության և ոչ-արտադրական ոլորտներում զբաղվածների թվի հարաբերակցությունը պայմանավորված է, առաջին հերթին, հասարակական կարգով, որում գործում են արտադրաուժերը, դրա զարգացման մակարդակով և հասարակական աշխատանքի արտադրողականությամբ։

Սոցիալիզմի ժամանակ, հենվելով տնտեսական օրենքների վրա և ելնելով արտադրաուժերի զարգացման մակարդակից, պլանավորող օրգանների կողմից որոշակի համամասնություններ են սահմանվում ժողովրդական տնտեսության զարգացման գործում, այդ թվում աշխատուժը բաշխվում է արտադրական ու ոչ-արտադրական ոլորտների միջև, ինչպես նաև ոչ-արտադրական ոլորտի զանազան ճյուղերում։



Անհրաժեշտ է նշել, որ ոչ-արտադրական ոլորտի ներսում աշխատանքային ռեսուրսների բաշխման ճիշտ ու գիտականորեն հիմնավորված համամասնությունների սահմանումն ավելի բարդ խնդիր է, քան կենդանի աշխատանքի բաշխումը նյութական արտադրության ճյուղերի միջև, որտեղ համամասնությունները որոշվում են բուն արտադրության զարգացման օբյեկտիվ պայմաններով։

Տեխնիկական առաջընթացի, հատկապես արտադրապրոցեսների ավտոմատացման ազդեցությամբ աշխատունակ բնակչության զբաղվածության կառուցվածքն անընդհատ փոփոխվում է։ Ըստ որում ի հայտ են գալիս երկու տենդենցներ, որոնցից մեկը գործում է նյութական արտադրաոլորտում. դրա էությունն այն է, որ նոր, առաջավոր գյուղատնտեսական տեխնիկայի արմատավորման, աշխատանքի արտադրողականության աճի շնորհիվ կրճատվում է գյուղատնտեսության մեջ զբաղված աշխատանքային ռեսուրսների քանակը, միաժամանակ այն ավելանում է արդյունաբերության, շինարարության մեջ, տրանսպորտում ու կապում։ Իսկ մյուս դեպքում նյութական արտադրության ոլորտում աշխատողների բացարձակ աճի հետ մեկտեղ տեղի է ունենում այդ ոլորտում զբաղված աշխատանքային ռեսուրսների հարաբերական կրճատում և ոչ նյութական ոլորտում նրանց համապատասխան ավելացում։

Այսպիսով, կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում հասարակական արտադրության ոլորտներում աշխատուժի բաշխման տենդենցների ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ արտադրաուժերի զարգացման և հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման հետ միասին նյութական արտադրության ոլորտներում զբաղվածների բաժինը համեմատաբար կրճատվում է, իսկ ոչ-արտադրական ոլորտում աճում է ինչպես բացարձակորեն, այնպես էլ հարաբերաբար։

Արդի պայմաններում տեխնիկական առաջընթացը, որպես նյութական արտադրության զարգացման հիմք, ապահովում է ոչ-արտադրական ոլորտի համապատասխան զարգացումը։ Ուստի, մեր երկրում կոմունիզմի կառուցման պայմաններում տեխնիկական առաջընթացի կարևորագույն սոցիալական պրոբլեմը նրա ազդեցությունն է ոչ-արտադրական ոլորտի զարգացման վրա՝ պայմանավորված մեր հասարակության տնտեսական ու սոցիալական հասունության աստիճանով։

Բնորոշելով աշխատանքի արտադրողականության աճի նշանակությունը նյութական և ոչ-նյութական ոլորտների միջև աշխատանքի բաշխման համար, Կ. Մարքսը գրել է. «Ենթադրենք, որ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է այնքան, որ եթե առաջ նյութական արտադրությանն անմիջականորեն մասնակցում էր բնակչության $^{2}/_{3}$-ը, ապա հիմա միայն $^{1}/_{3}$-ը։ Առաջ բնակչության $^{2}/_{3}$-ը գոյության միջոցներ էին տալիս բնակչության $^{3}/_{3}$-ին, հիմա $^{1}/_{3}$-ը՝ $^{3}/_{3}$-ին։ Առաջ «զուտ եկամուտը» (ի տարբերություն աշխատողի եկամտի) կազմում էր $^{1}/_{3}$-ը, հիմա $^{2}/_{3}$-ը։ Այժմ ազգը, եթե հեռանանք (դասակարգային) հակադրությունից, պետք է անմիջական արտադրության համար օգտագործեր իր ժամանակի $^{1}/_{3}$-ը նախկին $^{2}/_{3}$-ի փոխարեն։ Հավասարաչափ բաշխման դեպքում բոլորը շատ ժամանակ կունենային—$^{2}/_{3}$-ը՝ ոչ-արտադրողական

աշխատանքի և ժամանցի համար» (К. Маркс и Ф. Энгельс, соч. т. 26, ч. I, стр. 205—206)։ Այնուհետև Կ. Մարքսը նշում է. «Երկիրն այնքան ավելի հարուստ է, որքան պրոդուկտների միևնույն քանակի դեպքում քիչ է արտադրող բնակչությունը ոչ արտադրողի նկատմամբ։ Չէ՞ որ արտադրող բնակչության համեմատական մեծաթիվ լինելը միայն աշխատանքի արտադրողականության համեմատական բարձրության ուրիշ արտահայտությունն է» (К. Маркс, Теория прибавочной стоимости, ч. I, Госполитиздат, 1955, стр. 200)։

Մարքսի այս միտքը ցույց է տալիս, որ աշխատանքի արտադրողականության աճի հիման վրա արտադրության մեջ կրճատվում է աշխատուժի քանակը, որը հարաբերականորեն իր հետ բերում է ոչ-արտադրական ոլորտի անձնակազմի ավելացում։ Բացի այդ, պետք է նկատի ունենալ, որ նյութական արտադրությունն իր զարգացման համար կարիք է զգում ոչ նյութական բնույթի ծառայությունների։ Նյութական արտադրությունը չի կարող զարգանալ առանց որակավորված աշխատուժի, առանց գիտա-տեխնիկական սպասարկման և ծառայությունների այլ տեսակների։

Ինչպես հայտնի է, սոցիալիզմի օրոք նյութական արտադրության հիմնական նպատակը բնակչության պահանջների առավել լրիվ բավարարումն է։ Իսկ այդ պահանջը կրում է ո՛չ միայն նյութական, այլև հոգևոր բնույթ, այսինքն՝ բնակչությունը հավասարապես կարիք ունի նաև այնպիսի ծառայությունների, առանց որոնց նյութական արտադրությունը կորցնում է իր իմաստը։

Նյութական և ոչ-նյութական արտադրության ոլորտների միջև աշխատանքային ռեսուրսների պլանաչափ բաշխման հարցը մեծ նշանակություն ունի ժողովրդական տնտեսության պլանավորման, հասարակական արտադրության և աշխատանքի կազմակերպման կատարելագործման, երկրի աշխատանքային ռեսուրսների վերաբաշխման և կադրերի պատրաստման գործում։

Նյութական և ոչ-նյութական արտադրության ոլորտները փոխադարձաբար կապված են միմյանց հետ, չնայած նրան, որ նյութական արտադրությունը մնում է գործունեության վճռական ոլորտը (1968 թվականի տվյալներով ժողովրդական տնտեսության բոլոր աշխատողների մոտ $^{3}/_{4}$-ը զբաղված էր նյութական բարիքների արտադրությունում)։ Որքան լավ է զարգացած նյութական արտադրությունը, որքան բարձր է աշխատանքի արտադրողականությունը, այնքան մեծ են հնարավորությունները ոչ-արտադրական ոլորտի զարգացման համար։

Արդի պայմաններում նյութական արտադրության ոլորտի գիտա-տեխնիկական բազայի զարգացումը պահանջում է սոցիալիստական հասարակության աշխատողների կուլտուր-տեխնիկական և կրթական ավելի բարձր մակարդակ, իսկ դա պայմանավորում է ընդհանուր և պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության առավելագույն ընդլայնումը, որն ուժեղացնում է ոչ-արտադրական ոլորտում զբաղվածության մեծացման տենդենցը։ Այդ ճանապարհով տեղի են ունեցել որոշակի փոփոխություններ, որոնք կարելի է ցույց տալ մեր հանրապետության օրինակով։



Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության նյութական և ոչ-նյութական ճյուղերում զբաղված աշխատանքային ռեսուրսների բաշխումը (տոկոսներով) *

| Զբաղված են հասարակական արտադրության ճյուղերում | Տարիներ | | | |
|---|---|---|---|---|
| | 1960 | 1965 | 1967 | 1968 |
| Ընդամենը հանրային տնտեսության մեջ | 100,0 | 100,0 | 100,0 | 100,0 |
| 1. Նյութական արտադրության ճյուղերում | 82,0 | 79,0 | 77,0 | 76,0 |
| այդ թվում՝ արդյունաբերության ու շինարարության մեջ | 29,0 | 33,0 | 35,0 | 36,0 |
| Գյուղատնտեսության, անտառային տնտեսության մեջ (ներառյալ անձնական օժանդակ տնտեսություն) | 44,0 | 35,0 | 30,0 | 28,0 |
| Նյութական արտադրության այլ ճյուղերում | 9,0 | 11,0 | 12,0 | 12,0 |
| 2. Ոչ-արտադրական ոլորտում | 18,0 | 21,0 | 23,0 | 24,0 |
| այդ թվում՝ լուսավորության, առողջապահության, գիտության և գիտական ծառայության մեջ | 13,0 | 15,0 | 16,0 | 18,0 |
| Ոչ-արտադրական ոլորտի այլ ճյուղերում | 5,0 | 6,0 | 7,0 | 6,0 |

Աղյուսակի տվյալները ցույց են տալիս, որ գյուղատնտեսության մեջ աշխատանքային ռեսուրսների կրճատումն իր հետ բերում է տվյալ նյութական արտադրության ոլորտում զբաղված աշխատուժի հարաբերական նվազում և ոչ-նյութական արտադրության ոլորտում նրա բաժնի համեմատական ավելացում։ Քստ որում նկատվում է հասարակական արտադրության մեջ զբաղված աշխատանքային ռեսուրսների քանակի բացարձակ ավելացում։ Միայն 1960—1969 թթ. հասարակական արտադրության մեջ զբաղվածների թիվը մեծացել է 59,5 տոկոսով։ Ի դեպ, ոչ նյութական ոլորտում զբաղվածության աճի տեմպերը զգալիորեն ավելի բարձր են եղել, քան նյութական արտադրության մեջ։ Եթե 1960—1969 թթ. ոչ-արտադրական ոլորտում զբաղվածությունը մեծացել է 80, ապա նյութական արտադրության մեջ՝ միայն 45,4 տոկոսով, այսինքն՝ մոտ երկու անգամ ավելի պակաս։

Զբաղվածության աճի տեմպերի այդպիսի հարաբերակցությունը ժողովրդական տնտեսության ոլորտների միջև կպահպանվի նաև հետագայում. այդ պայմանավորված է նրանով, որ տեխնիկայի, տեխնոլոգիայի և արտադրության ու աշխատանքի կազմակերպման կատարելագործման շնորհիվ արտադրության աճը նյութական արտադրության ոլորտի ճյուղերում առավել մեծ չափով կապահովվի աշխատանքի արտադրողականության բարձրացման և ավելի պակաս՝ աշխատուժի քանակի մեծացման հաշվին։ Դա հանգեցնում է այն բանին, որ հանրային տնտեսության մեջ զբաղված աշխատանքային ռեսուրսների ընդհանուր թվում տարեցտարի ավելանալու է ոչ-արտադրական ոլորտում զբաղվածների տեսակարար կշիռը, հիմնականում, նյութական արտադրության ոլորտի կարևոր ճյուղերից մեկի՝ գյուղատնտեսության հաշվին։

Գյուղատնտեսության մեջ զբաղվածների թվի կրճատումը պայմանավորված է այդ ճյուղում աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ, որը թույլ է տալիս այստեղ զբաղված աշխատուժի մի մասը տեղափոխել ժողովրդական տնտեսության ոչ գյուղատնտեսական ճյուղերը, այդ թվում՝ գյուղի ոչ-արտադրական ոլորտը։ Ուստի, գյուղի ոչ-արտադրական ոլորտում զբաղ-

* См. Народное хозяйство Армянской ССР 1968 г., Ереван, 1969 г., стр. 145.

վածների թիվն ավելանում է ինչպես բացարձակորեն, այնպես էլ համեմա-
տական ձևով։
Պետք է նկատել, որ այդպիսի ավելացումը, ի տարբերություն քաղաքի,
տեղի է ունենում գյուղական բնակչության ընդհանուր թվի, հետևաբար, նաև
այստեղ կենտրոնացված աշխատանքային ռեսուրսների կրճատման պայման-
ներում։
Ինչպես նշվեց, մարդկային գործունեության վճռական ոլորտը նյութական
արտադրության բնագավառն է։ Ուստի, նյութական արտադրության ոլորտում
աշխատանքային ռեսուրսների բաշխման համամասնությունները և, ամենից
առաջ, արդյունաբերության մեջ ու այդ մարզի մյուս ճյուղերում զբաղված-
ների թվի միջև եղած հարաբերակցություններն ունեն որոշիչ նշանակություն։
Աշխատանքային ռեսուրսների բաշխումն արդյունաբերության և նյութա-
կան արտադրության մյուս ճյուղերի, այդ թվում՝ գյուղատնտեսության միջև
բնորոշվում է նրանով, որ, չնայած արդյունաբերության մեջ ամբողջությամբ
վերցրած աշխատանքի արտադրողականության աճի բարձր տեմպերին, ար-
տադրության ծավալի աճի առավել բարձր տեմպերը պայմանավորված են
արդյունաբերության մեջ օգտագործվող աշխատուժի քանակի ինչպես բացար-
ձակ, այնպես էլ հարաբերական ավելացմամբ։ Այսպես, 1969 թ., այստեղ
զբաղված բանվորների ու ծառայողների միջին տարեկան թիվը, 1960 թ. հա-
մեմատությամբ, ավելացել է 84,4, համախառն արտադրանքը՝ 137, իսկ աշ-
խատանքի արտադրողականությունը՝ 38 տոկոսով (Советская Армения за
50 лет, Ереван, 1970, стр. 113, 122, 126), այսինքն՝ այդ տարիներին ար-
դյունաբերական արտադրանքը հիմնականում ստացվել է աշխատողների թվի
ավելացման հաշվին։ Պետք է ենթադրել, որ հանրապետության արդյունաբե-
րությունն ապագայում հիմնականում պետք է աճի աշխատուժի օգտագործման
արդյունավետության հաշվին։

ՍՎԵՏԼԱՆԱ ՇԱՀԲԱԶՅԱՆ





## ՏԻԵԶԵՐԱԿԱՆ ԱՊԱՐԱՏՆԵՐՆ ՈՒ ԵՐԿՐԻ ԲՆԱԿԱՆ ՌԵՍՈՒՐՍՆԵՐԸ

Ազգաբնակչության աճը, նրա նյութական նորանոր պահանջմունքների բավարարման անհրաժեշտությունն առավել հրատապ են դարձնում մեր մոլորակի և նրա առանձին մասերի բնական ռեսուրսների պահպանման, դրանց ճիշտ գնահատման, ռացիոնալ օգտագործման խնդիրը։ Այստեղից էլ բխում է բնական ռեսուրսների հետազոտման և ուսումնասիրության նոր, առավել արդյունավետ եղանակների մշակման ու կիրառման պահանջը։

Բնական ռեսուրսներ հասկացությունը շատ լայն է, այն բովանդակում է մեր մոլորակի յուրացված և դեռ չյուրացված օգտակար հանածոներն ու հողերը, անտառներն ու ցամաքային ջրերը, օվկիանոսները, կենդանական աշխարհը, մթնոլորտն ու Երկրի աշխարհագրական թաղանթի այլ հարստությունները։

Վերջին տարիներս մեր մոլորակն ուսումնասիրող գիտությունները (Երկրի վերաբերյալ գիտությունները կամ երկրագիտությունները) խոշոր հաջողությունների են հասել նրա բնական ռեսուրսներին վերաբերող տվյալների հավաքագրման ու մշակման բնագավառում։ Գիտահետազոտական ու պլանավորող հազարավոր հիմնարկություններում մշակվում են երկրաբանների, աշխարհագրագետների, բուսաբանների, օվկիանագետների, ջրաբանների և շատ այլ մասնագետների բազմաթիվ արշավախմբերի հավաքած նյութերը հսկայական տերիտորիաների վերաբերյալ։ Առավել լայնարձակ տերիտորիաներից տվյալների «հանույթ» է կատարվում ինքնաթիռների միջոցով։ Այս երկու հիմնական մեթոդներից բացի, ինֆորմացիա է հավաքվում նաև շատ այլ եղանակներով։ Եվ, այնուամենայնիվ, այդ ամենն այնքան քիչ է ու թերի, որ, կարելի է ասել, Երկրի բնական ռեսուրսների զգալի մասը դեռևս չի հետազոտված։ Առանձնապես քիչ են տվյալները Հարավային Ամերիկայի, Աֆրիկայի, Ասիայի և Ավստրալիայի անապատային ու լեռնային շրջանների, տրոպիկական անտառների, Անտարկտիդայի և Գրենլանդիայի հսկայական սառցապատ տարածությունների ռեսուրսների վերաբերյալ։ Ավելի քիչ են հետազոտված օվկիանոսային հսկայական տարածությունների ռեսուրսները։ Նման պայմաններում անհնար է բնական ռեսուրսների նպատակասլաց օգտագործման հարցի լուծումը ողջ երկրագնդի մասշտաբով։

Ե՛վ գործնականորեն անհնար, և՛ տնտեսապես աննպատակահարմար է ինֆորմացիայի այդ պակասը լրացնել նախկին եղանակներով (թեկուզ և դրանց կատարելագործմամբ)։ Այն իրեն չի արդարացնում նաև մեթոդական առումով, քանի որ խիստ դժվար է մեծ տարածություններում բնական ռեսուրսների դինամիկային հետևելը։ Երբ մեծ բարձրություններից (մինչև 100—150 կմ) հրթիռների միջոցով ստացվեցին երկրագնդի առանձին տեղամասերի լուսանկարները, առաջին անգամ գիտնականներն սկսեցին մտածել երկրամերձ տիեզերքից մեր մոլորակի բնական ռեսուրսների հետազոտման արդյունավետության և առավելությունների մասին։ Երկրի արհեստական արբանյակներից, ավտոմատ կայաններից ու հրթիռանավերից ստացված տվյալները (հիմնականում լուսանկարները) ո՛չ միայն հաստատեցին այդ ենթադրության ճշմարտացիությունը, այլև նոր էջ բացեցին բնական ռեսուրսների ուսումնասիրության բնագավառում։ Այսօր գիտնականները համակարծիք են, որ Երկրի բնական ռեսուրսների ուսումնասիրության ամենահեռանկարային եղանակը տիեզերական թռչող ապարատներից (ՏԹԱ) համապատասխան սարքավորումներով, ավտոմատ եղանակներով ու մասնագետների մասնակցությամբ կատարվող հետազոտություններն են։ ՏԹԱ են համարվում երկրի շուրջը պտտվող արբանյակները, տիեզե-

ժամանակ է անում կենսալի կանաչը և մեկ ամիս անց ջրելու քիչ տարածություն է մնում։ Մի հանգամանք, որը, դժբախտաբար, ձեռնտու է ջրող ընկերներին։

Մի՞թե հայտնի չէ քաղաքի կանաչապատման գործը վարող ընկերներին, որ շատ երկրներում վաղուց ի վեր կանաչապատված գանգվածները ջրվում են ավտոմատ ցնցուղների օգնությամբ։ Արդյոք հնարավոր չէ՞ ջրատու խողովակների ջրանցքը հագցնել ցնցուղի հարմարանքով, որի դեպքում բույսերը կջրվեն անձրևային եղանակով, այլ ոչ թե հրդեհաշեջին անհրաժեշտ ջրի հուժկու ճնշմամբ։ Սա ևս մի «մանրուք» է, որի վերացման դեպքում, մեր քաղաքն ավելի գեղեցիկ կդառնա։

Մեր նպատակն էր՝ վեր հանել մայրաքաղաքի ճարտարապետական մանր ձևերի ու բարեկարգման թերությունները, որոնք, անշուշտ, ստվերարկում են մեր քաղաքի գեղեցկությունը։ Սակայն այս ամենը չի նշանակում, թե վերոհիշյալ բնագավառում չկան դրական, հուսադրող երևույթներ։ Առանձնապես մեծ են հաջողությունները քաղաքի կանաչապատման ու ծաղկազարդման բնագավառում։ Երևանի այգիները, պուրակներն իրենց լճերով, ծաղկանոցներով, այնպիսի համբավ ունեն, որ արդեն երկրորդ անգամ այստեղ հրավիրվում է ճարտարապետների համամիութենական սեմինար՝ նվիրված քաղաքների կանաչապատմանը։ Դա շատ հաճելի է, բայց և պարտավորեցնող։

Խրախուսելի նախաձեռնություն է վերջին տարիներին փողոցներում պտղատու ծառեր տնկելու փորձը։ Առանձնապես գեղեցիկ են կեռասենիները Սայաթ-Նովայի փողոցում, մանավանդ ծաղկման ընթացքում։ Հրաշալի են նաև կարմիր ու սպիտակ վարդերը նույն փողոցում, օպերայի պուրակում, գազոնները, բաղխենիները՝ էջմիածնի խճուղու վրա և այլուր։ Ընդհանրապես լավ են աշխատում մեր քաղաքի ծաղկեգործները. մնում է, որ մենք՝ բնակիչներս, ավելի հարգենք նրանց ազնիվ աշխատանքը։

Մենք քննադատեցինք բնակիչներին, սակայն, քիչ չեն և իսկական հայրենասերները, որոնք գեղեցիկ ծաղիկներով, խաղողի թփերով զարդարում են իրենց պատշգամբներն ու բակերը, չեն զլանում ավելորդ քայլեր անել փողոցի կանաչը չտրորելու համար, անտարբեր չեն այդ ամենը փչացնողների հանդեպ։ Ակներև են և հաջողությունները քաղաքի բարեկարգման, ինժեներական սարքավորման բնագավառներում։ Բայց ահա հենց այդ ակնբախ հաջողությունների հետ անհանդուրժելի են «մանր» թվացող թերությունները, որոնք կարելի է հեշտությամբ վերացնել։ Դրա համար անհրաժեշտ է միայն, որ բոլորս սիրենք մեր քաղաքը, ջանանք ավելի գեղեցիկ դարձնել այն. այդ ամենքիս և մայրաքաղաքի հասարակական կազմակերպությունների կարևորագույն խնդիրներից մեկն է։

Հ. Հ. ԻՍԱԲԵԿՅԱՆ
Ճարտարապետ





# ԱԿԱՆԱՎՈՐ ՈՒՏՈՊԻՍՏ-ՍՈՑԻԱԼԻՍՏԸ

Այս տարի մայիսին լրացավ մեծ մտածող Ռոբերտ Օուենի ծննդյան 200-ամյակը, որին Մարքսը դասում էր սոցիալիզմի «նահապետների» շարքը։

Օուենն ապրել և գործել է արդյունաբերական հեղաշրջման ժամանակաշրջանում, որն ամենից շուտ տեղի ունեցավ Անգլիայում։ Հասարակության վերակառուցման Օուենի ուտոպիական ծրագրերը դարաշրջանի սոցիալ-տնտեսական հարաբերությունների արտացոլումն էին, տրամաբանական արդյունքը։

Նրա հայացքների ձևավորման և հետագա զարգացման վրա մեծ ազդեցություն ունեցան արդյունաբերական հեղաշրջումը, կապիտալիստական հարաբերություններից բխող սուր հակասությունները։ Մարքսը նկատել է, որ Օուենն «իր փորձերի ժամանակ ոչ միայն իրապես ելնում էր գործարանային սիստեմից, այլ նաև թեորիապես այդ սիստեմը հայտարարեց սոցիալիստական հեղափոխության ելակետ» («Կապիտալ», հ. 1, 1954, էջ 526)։

Ականավոր ուտոպիստը սուր քննադատեց մասնավոր սեփականության վրա հիմնված կապիտալիստական հասարակարգը, ցույց տվեց աշխատավոր մարդկանց օրհասական վիճակը կապիտալի աշխարհում, հանդես եկավ նրանց պաշտպանող ծրագրերով։

Կապիտալիզմի օուենյան քննադատությանը բնորոշ է կապիտալիստական հասարակության էկոնոմիկայի խոր, ռեալիստական իմացությունը։ Կապիտալում Մարքսը բազմիցս անդրադարձել է Օուենի հայացքներին՝ կապիտալիստական արտադրաուժերի աճի, դրանց տնտեսական հակասությունների զարգացման և գոյություն ունեցող հասարակական հարաբերությունների փոփոխման վերաբերյալ։ Միաժամանակ, գիտական կոմունիզմի հիմնադիրներն ընդգծել են, որ սոցիալական հակասությունների օուենյան ըմբռնումը տակավին չի հանգում դասակարգային պայքարի անհրաժեշտությանը։ Մարքսիզմի կլասիկները չեն ժխտել Օուենի բացառիկ դերը գործարանային օրենքի և բանվոր դասակարգի սոցիալական ու տնտեսական իրավունքների համար մղվող պայքարում, դրվատել նրա պրակտիկ գործունեությունը։ «Բոլոր հասարակական շարժումները,— գրել է Էնգելսը,— որոնք տեղի են ունեցել Անգլիայում հօգուտ բանվոր դասակարգի, և նրանց բոլոր իրական հաջողությունները Օուենի անվան հետ են կապված» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր Երկեր, Երևան, 1950, հ. 2, էջ 143)։

**Մարքսիզմի երեք աղբյուրները և երեք բաղկացուցիչ մասերը** աշխատության մեջ Լենինը ուտոպիական սոցիալիզմը, ինչպես և Օուենի հայացքները համարում է Մարքսի ու Էնգելսի ուսմունքի տեսական աղբյուրներից մեկը։

Օուենը հասարակության վերակառուցման իր ծրագրերում ելնում էր արտադրաուժերի անընդհատ աճից, դրանց անսահման բազմապատկման հնա-

բավորություններից։ «Արտադրողական նոր հզոր ուժերը,— գրել է Էնգելսը,— որոնք մինչև այժմ միայն անհատների հարստացման և մասսաների ստրկացման համար էին ծառայում, Օուենին պատկերանում էին որպես հասարակական բարենորոգման հիմք և պետք է աշխատեին բոլորի բարեկեցության համար՝ որպես նրանց ընդհանուր սեփականություն» (Նույն տեղը, էջ 153)։

Սակայն, հասարակության զարգացման, դասակարգային պայքարի օրենքների անտեսումը խանգարում էին Օուենին գիտականորեն հիմնավորելու կապիտալիզմից նոր հասարակական սիստեմին անցնելու ուղիները։ Վերջինս, ըստ Օուենի, բացարձակ բանականության, արտադրության և առաջադեմ գաղափարների միասնությունն է։ Հասարակության վերափոխման օուենյան գաղափարները տարբեր ժամանակաշրջաններում տարբեր խնդիրներ են բովանդակել։ Սկզբնական շրջանում նա փորձել է մասնակիորեն փոխել բանվորների սոցիալական միջավայրը, դաստիարակել նրանց և օրինակով ապացուցել նոր հասարակարգ կառուցելու հնարավորությունը։ Հետագայում նա ձգտել է հիմնավորել նոր հասարակարգի անհրաժեշտությունը, առաջ քաշել սոցիալական միջավայրի արմատական փոփոխման հարցը։ Իր նպատակներն իրականացնելու համար Օուենը դիմել է մեկ իշխանության, մեկ տիրող դասակարգի առանձին ներկայացուցիչներին, հայտնի մարդկանց, իսկ հետագայում ավելի հաճախ՝ բանվոր դասակարգին։

Ինչպիսի միջոցներով էլ պայքարելու լիներ Օուենը իր ծրագրերն իրականացնելու համար, մի բան պարզ էր, որ «նա մտադիր չէր ներողամիտ լինել գոյություն ունեցող սիստեմի, դրա սխալների, քաղաքացիական, քաղաքական և կրոնական բնագավառում դրա ստեղծած չարիքների նկատմամբ»։

Օուենը ո՛չ միայն տեսաբան էր, այլև կյանքի հասարակական պայմանների ռեֆորմատոր։ Նա հանդես եկավ կաբինետային տիպի գիտնականի դեմ՝ պահանջելով թեորիայի, պրակտիկայի և փորձի միացում։ Նա գտնում էր, որ անհրաժեշտ է սովորել ղեկավարել հանգամանքները։ Սխալ կլիներ մտածել, թե Օուենը կարծում էր, որ կյանքի հանգամանքներն իրենք կարող են փոխել հասարակությունը, մարդկանց խառնվածքը։ Ըստ նրա, հասարակությունը, մարդկանց վարքագիծը փոխելու համար անհրաժեշտ է փոփոխել կյանքի հանգամանքները, ազդել մարդկանց շրջապատող պայմանների վրա. Օուենը հասկանում էր, որ հասարակարգի կառուցվածքն անփոփոխ թողնելով՝ ոչինչ չի կարելի հասնել։ «Նույն հաջողությամբ կարելի է կաթը խառնել ջրին»։

Այդ իսկ պատճառով, չի կարելի մեղադրել Օուենին այն բանում, որ նա չէր տեսնում կյանքի օբյեկտիվ պայմանների վրա ներգործելու անհրաժեշտությունը. սակայն, նա չէր հասկանում, որ հասարակության վերակառուցումը պետք է հանդիսանա հեղափոխական պրակտիկայի, բանվոր դասակարգի հեղափոխական գործողությունների արդյունք։ Օուենը ձգտում էր իր ուտոպիական սոցիալիզմի տեսությունը միացնել պրակտիկ գործունեությանը։ Նյու-Լենարկյան փորձերը՝ տեսության և պրակտիկայի միասնության վերաբերյալ նրա պատկերացումների կոնկրետ արտահայտությունն էին։ Այստեղ չի կարելի չնկատել կեղեքողների հասարակարգի սահմաններից դուրս գալու Օուենի համաշխարհային պատմական փորձը։ Իր այն միտքը, թե մարդը ձևավորվում է միջավայրի ազդեցությամբ, ջանում էր իրականացնել Նյու-Լենարկի մանածագործարանում, որտեղ նա այդ գաղափարը դարձնում էր իր գործունեության ելակետ։ Օուենը ձգտում էր հասնել բանվորների համընդհանուր բարեկեցության,



վերացնել բոլոր արատավոր սովորույթները, դաստիարակել մարդկանց, ուղղել և փոխել նրանց բնավորությունները։ Նա միտում էր երեխաների դաստիարակման գործը դնել նոր հիմքերի վրա։ Օուենը վստահ էր, որ «յուրաքանչյուր փոփոխություն կարող է տեղի ունենալ միայն լավ մտածված և ստույգ հաշված միջոցներով»։

Իր Մարդկային բնավորության ձևավորման փորձեր կամ նոր հայացք հասարակության մասին աշխատության մեջ նա նկարագրում է Նյու-Լենարկում 16 տարիների ընթացքում կիրառած սկզբունքները։ Ըստ նրա «յուրաքանչյուր հասարակության, համապատասխան միջոցների օգնությամբ, կարելի է տալ ցանկացած բնավորությունը, սկսած ամենալավից և վերջացրած ամենավատով, ամենաանզարգացածից՝ ամենազարգացածը։ Այդ միջոցները նշանակալից չափով գտնվում են նրանց ձեռքում, ովքեր ազդեցություն և հսկողություն ունեն մարդկային գործերի վրա» (Նույն տեղը, էջ 14)։

Օուենը ձեռնարկել է վերափոխել Նյու-Լենարկի բնակչության հարաբերությունները, պայքարում էր առանձին կրոնական աղանդների քարոզած կրոնական ֆանատիզմի դեմ։ Նա գտնում էր, որ չի կարելի շփոթել աղանդավորությունը ճշմարիտ կրոնի հետ։ Այստեղ, նա դեռ չէր ելնում կրոնի դեմ, ընդհակառակը, հույս ուներ ճշմարիտ կրոնի օգնությամբ ձևավորել, դաստիարակել բնավորություններ։ Օուենը հասնում է նրան, որ առանձին կրոնական աղանդների անդամներ սկսում են աշխատել համերաշխ և թվում էր, թե համայնքի բոլոր անդամները միատեսակ կրոնական համոզմունքներ ունեն։

Ղեկավարվելով այն գաղափարով, թե «մարդը եղել է, կա ու կլինի շրջապատող միջավայրի արդյունք» (Р. Оуэн. Революция в сознании и деятельности людей, Избр. соч., т. II, стр. 136), Օուենը ձեռնամուխ է լինում իր պրակտիկ միջոցների իրականացմանը։ Աշխատանքային օրվա տևողությունը կրճատվում է մինչև 13—14 ժամի, բարձրանում է բանվորների աշխատավարձը, նրանց համար ստեղծվում են աշխատանքի և պրուստի բարեկեցիկ պայմաններ։ Օուենն առաջինն էր, որ բանվորների երեխաների համար ստեղծեց մանկապարտեզներ ու մսուրներ։ Եվ շուտով Նյու-Լենարկը դառնում է «միանգամայն օրինակելի մի գաղութ, որտեղ հարբեցողությունը, ոստիկանությունը, քրեական դատարանները և դատավարությունները, աղքատների խնամակալությունը, բարեգործության կարիքը անծանոթ երևույթներ են» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, Երևան, 1950, հ. 2, էջ 152)։

Առաջին անգամ մարդկության պատմության մեջ իրականացվեց սոցիալիզմի գաղափարների կիրառումը փոքր շրջանակներում։

Սակայն Օուենն իր սկզբունքների մեխանիկական կիրառման կողմնակից չէր։ Նա պահանջում էր տիրող չարիքների պատճառների մանրակրկիտ ուսումնասիրություն։ Օուենը վստահ էր, որ բրիտանական օրենսդիր իշխանությունները չեն հրաժարվի իրագործելու իր սկզբունքները, ավելին, նա հույսը դնում էր թագավորի, մինիստրների ու պառլամենտի վրա։ Օուենը խաղաղ, անվտանգ ռեֆորմի կողմնակից էր հասարակության բոլոր անդամների համար։ Իսկ ի՞նչ էր հարկավոր այդ նպատակին հասնելու համար՝ ճիշտ, խելացիորեն դաստիարակել մարդկանց, ձևավորել նրանց բնավորությունները, քանի որ բոլոր չարիքները, վերջին հաշվով, «տգիտության անհրաժեշտ հետևանք են»։

Արգասաբեր է Օուենի գործունեությունը մանկավարժության բնագավառում։ Նա երազում էր ստեղծել «բնավորությունների ձևավորման ինստի-

տուտ», կրթությունը դարձնել պետական գործ, ցանկանում հիմնել ուսուց-
չության պատրաստման հատուկ ուսումնական հաստատություններ: Նա
առաջ էր քաշում ժողովրդական կրթության գործին եկեղեցու չխառնվելու պա-
հանջը:

Նյու-Լենարկը համաշխարհային ճանաչում բերեց Օուենին: Այնտեղ տա-
սը տարում հաճախել է ավելի քան 20 հազար մարդ՝ հայտնի պետական ու
քաղաքական գործիչներ, տիրող դասակարգի ներկայացուցիչներ, պառլամեն-
տի անդամներ, գիտնականներ, արտասահմանյան երկրների դեսպաններ:
Նյու-Լենարկում Օուենը պաշտպանում է բանվորների, գործարանատերերի շա-
հերը: Դրա համար այդ շրջանում նա համընդհանուր ճանաչման արժանացավ:

Օուենի կարծիքով, նոր աշխարհն ստեղծվում էր յուրահատուկ օրենքնե-
րով, որը բոլոր բնագավառներում արմատապես պետք է տարբերվի կապի-
տալիստական հասարակությունից: Այստեղ, նախ պետք է «ոչնչանա արտա-
դրամիջոցների մասնավոր սեփականությունը»: «Նոր Հարմոնիա» համայնքի
սահմանադրության մեջ, գլխավոր սկզբունքները թվարկելիս, մատնանշվում է
ունեցվածքի ընդհանրությունը: Արտադրության և աշխատանքի միջոցները
գտնվում են համայնքի տնօրինության տակ և համարվում համայնքի անդամ-
ների ընդհանուր սեփականությունը:

Օուենն իր համախոհների նման գյուղատնտեսության և արդյունաբերու-
թյան միացումը համարում էր ապագա հասարակության կառուցման անհրա-
ժեշտ պայման, գտնում անբնական գյուղատնտեսական ու արդյունաբերական
աշխատանքի բաժանումը: Նա պահանջում էր այդ հակադրության վերացում,
հակադրություն, որը երկրում ստեղծում էր ճգնաժամեր և լճացումներ: Այդ
նպատակով նրա համայնքները կառուցվում են արդյունաբերության և գյուղա-
տնտեսության միավորման հիմքի վրա: Գլխավոր դերը Օուենը, ի տարբերու-
թյուն Ֆուրիեի, հատկացնում էր արդյունաբերությանը, հատկապես խոշոր մե-
քենայական արտադրությանը: Ելնելով առավել զարգացած անգլիական կա-
պիտալիզմի տնտեսական պայմաններից, նա կարողացավ ճիշտ ըմբռնել հա-
սարակության զարգացման գործում արդյունաբերության առաջավոր դերը:
Նա բազմիցս նշում էր, որ կոմունիստական հասարակարգը կհիմնվի արտա-
դրաուժերի զարգացման բարձր մակարդակի, տեխնիկական և գիտական նվա-
ճումների հիմքի վրա:

Օուենը մեծ ուշադրություն էր նվիրում ապագա հասարակությունում աշ-
խատանքի բնույթին և ձևերին: Աշխատանքը նա համարում էր մարդկային
կյանքի ու գործունեության հիմք: Նրա կարծիքով, ճիշտ ուղու վրա դրված ֆի-
զիկական աշխատանքը ժողովրդական բարեկեցության ու հարստության աղ-
բյուր է: Օուենը կանխատեսում էր, որ կոմունիստական հասարակությունում
արմատապես կփոխվի աշխատանքի բնույթը, այն կդառնա հաճելի ու բերկրա-
լի, մարդու համար ո՛չ միայն գոյությունը պահպանելու միջոց կլինի, այլ եր-
ջանկություն կբերի, կվսեմացնի, կազնվացնի նրան, կազատի բոլոր արատա-
վոր սովորույթներից: Մարդիկ,— նկատել է նա,— կկարողանան իրենց մեջ
մշակել ամենագնահատելի հատկությունները, որոնք ճիշտ ուղու վրա դրվելով,
կարող են մեծապես օժանդակել մարդկային երջանկությանը:

Արդյունաբերական և գյուղատնտեսական աշխատանքի զուգորդման
պրոբլեմի հետ միասին, Օուենն առաջ է քաշել ֆիզիկական ու մտավոր աշխա-
տանքի միասնության հարցը: «Բոլոր դասարանների երեխաները, առանց բա-
ցառության, պետք է ստանան ֆիզիկական ու մտավոր այնպիսի դաստիարա-



կություն, որը հնարավորություն ընձեռի արտադրել այնքան, որքան հասարա-կությունը պահանջում է նրանցից»:

Օուենը դասակարգային պայքարի և հասարակության հեղափոխական վերակառուցման հակառակորդ էր: Ըստ նրա, անցումը կապիտալիզմից սոցիալիզմին կկատարվի աստիճանաբար, որը բոլոր զարգացած ժողովուրդների մոտ գրեթե միաժամանակ կսկսվի և ավելի կարագանա՝ իր ճանապարհին չհանդիպելով որևէ դիմադրության և հաղթելով գոյություն ունեցող հասարակական բոլոր սիստեմները» (Р. Оуэн. Доклад Графству Ленарк. Избр. соч., т. I, стр. 227): Այդ պրոցեսի իրականացումը պահանջում է որոշ ժամանակ, երբ կստեղծվեն անհրաժեշտ պայմաններ: Յուրաքանչյուր համայնքի ներսում կառաջանան նոր հասարակական կոմունիստական հարաբերություններ, որոնք հիմնված կլինեն արտադրության միջոցների ընդհանուր սեփականության վրա: Արդյունաբերության և գյուղատնտեսության միասնականության բազայի վրա հիմնված կոլեկտիվ արտադրությանը համապատասխան, տեղի կունենա բոլոր բարիքների բաշխում, որը, ըստ Օուենի, սերտորեն կապված է դրամի անհետացման հետ: Դրամական փոխանակումը, Օուենի կարծիքով, կապիտալիստական հասարակարգում ծնում է նյութական բարիքների բաշխման անհավասարություն: Օուենը միանգամայն ճիշտ կարողանում էր հասկանալ, որ նյութական բարիքների արտադրության հիմքում ընկած է աշխատանքը, և դրա համար նյութական բարիքների փոխանակման և բաշխման ժամանակ նա դրամը փոխարինում է նոր չափանիշով, որով համապատասխանորեն արտահայտվում է իրերի վրա ծախսված աշխատանքի քանակը: Նա գտնում էր որ հնարավոր է սահմանել այս կամ այն նյութական բարիքների արտադրության վրա ծախսված միջին աշխատանքը և համապատասխանորեն որոշել յուրաքանչյուր իրի փոխանակային արժեքը: «Այսպիսով,— գրում է Օուենը,— մարդկային աշխատանքը կվերականգնի իր բնական և իսկական արժեքը, որը կաճի գիտության զարգացման հետ միասին» (Р. Оуэн. Доклад Графству Ленарк. Избр. соч., т. I, стр. 188): Այստեղից Օուենը, սակայն, հանգում է սխալ եզրակացության, նոր չափանիշն ըստ նրա, ի վիճակի կլինի ոչնչացնելու աղքատությունը, գործազրկությունը և կբարելավի հասարակության բոլոր սոցիալական խմբերի կյանքի պայմանները:

Կ. Մարքսը Կապիտալում, քննադատելով նոր չափանիշ մտցնելու վերաբերյալ Օուենի առաջարկությունը, գրում է. «Օուենի աշխատանքային փողը» նույնքան քիչ առնչություն ունի «փողի» հետ, որքան ասենք թատերատոմսը: Օուենը ենթադրում է անմիջաբար հանրայնացված աշխատանք, այսինքն՝ արտադրության մի ձև, որ տրամագծորեն հակադիր է ապրանքային արտադրությանը: Աշխատանքային անդորրագիրը միայն հավաստում է արտադրողի անհատական մասնակցության բաժինը ընդհանուր աշխատանքի մեջ և նրա անհատական պահանջների մասը ընդհանուր արդյունքի այն մասի նկատմամբ, որը նախանշված է սպառման համար: Բայց Օուենը չէր էլ մտածում թողնել ապրանքային արտադրությունը և միևնույն ժամանակ ձգտում վերացնելու նրա անհրաժեշտ պայմանները փողային ձեռնարկությունների միջոցով, (Կ. Մարքս, Կապիտալ, 1954, հ. 1, էջ 103—104):

Նոր աշխարհում, ըստ նրա, կվերանան բոլոր դասակարգերը և սոցիալական խմբերը: Հասարակությունը կազմված կլինի տնտեսական, սոցիալական, գաղափարական հարաբերություններում իրավահավասար մարդկանցից: Այսպիսով, Օուենն առաջ է քաշում դասակարգերի վերացման հարցը: Նա

միաժամանակ ելնում է ժողովուրդների միջև ազգային բոլոր միջնորմների վերացման անհրաժեշտությունից: Մարդկային իրավունքների խարտիայում Օուենը նշում է, որ բոլոր մարդիկ ազատ իրավունք ունեն մեկնելու երկրից երկիր: Բոլոր երկրների և ժողովուրդների միջև պետք է ստեղծվի ապրանքների և գործունեության ազատ փոխանակում: Նա նկատել է, որ ապագա հասարակությունն իր բնույթով ինտերնացիոնալ է, հիմնված ազգային իրավահավասարության, դեմոկրատիզմի սկզբունքների վրա: «Հասարակության բոլոր անդամները դիտվում են որպես մի ընտանիք, և ոչ ոք չի գերադասվի իր գործունեությամբ»:

Չնայած ուտոպիզմին, Օուենի սիստեմը բովանդակում է ռեալիստական մտքեր, որոնք իրենց էական ազդեցությունն ունեցան գիտական կոմունիզմի հիմնադիրների հայացքների ձևավորման վրա:

Օուենի ուսմունքն իր յուրովի արձագանքն է գտել հայ առաջավոր մտքի ներկայացուցիչների մոտ: Հեղափոխական դեմոկրատ Մ. Նալբանդյանը քաջատեղյակ էր Օուենի հայացքներին: Հատկանշական է, որ իր հայտնի ստեղծագործության՝ Երկու տողի համար Նալբանդյանը որպես բնաբան վերցրել է Օուենի հետևյալ խոսքերը՝ «Ճշմարտությունը կրոն է, նորան միայն խնդրեցեք, իսկ նորանից՝ ոչինչ»:

Պայքարելով այդ ճշմարտության համար, Նալբանդյանն ավելի առաջ է գնում Օուենից՝ առաջ քաշելով հարստահարված մասսաների ազատության ձեռքբերման համար հեղափոխական, բռնի միջոցների անհրաժեշտությունը:

Նալբանդյանը հրապարակորեն արտահայտում է իր համակրանքն ու սերը դեպի «ճնշված մարդկության անմահ բարեկամքը», որոնց թվում է նաև Օուենը: Իր մեկ ուրիշ ստեղծագործության՝ Նկատողության մեջ Նալբանդյանը մեծ համակրանքով է խոսում Օուենի և նրա Նյու-Լենարկի փորձերի մասին: «Ո՞վ չգիտե,— գրում է նա,— կամ չէ լսել Ռոբերտ Օուենի և նրա նուալենեքյան դպրոցի անունը. ո՞վ չգիտե այն ազնիվ մարդու սուրբ և նվիրական խորհուրդը— յուր հիմնած դպրոցով և գործարանով վերացնել սոսկալի աղքատությունը... Բայց և ո՞վ չգիտե, թե ինչե՞ր չբերեց այն մարդու գլուխը բողոքական եկեղեցին» (Մ. Նալբանդյան, Ընտիր երկեր, Երևան, 1953, էջ 549):

Նալբանդյանի բոլոր ստեղծագործություններում կարմիր թելի նման անցնում է այն միտքը, թե սեփական շահը հարկավոր է տեսնել ընդհանուր շահի մեջ: Արտահայտելով սոցիալիստական էթիկայի այս սկզբունքը, Նալբանդյանը բարոյական ուսմունքի հիմք է ընդունում «մարդկային համերաշխությունը», որով նա, անկասկած, ի նկատի ուներ Օուենի և Ֆուրիեի «սոցիալիստական հարմոնիան»:

XIX դարի արևմտահայ դեմոկրատ Մաթեոս Մամուրյանը հանդես է բերում Ռոբերտ Օուենի հայացքների իր իմացությունը: Նա հասկացել է Օուենի աթեիստական հայացքները, նրա մատերիալիստական մոտեցումը կրոնի հարցերին և Ռոբերտ Օուենի, Ֆուրիեի, Սեն-Սիմոնի հետևորդ է համարում այն մարդուն, որը «նյութականը գերադասում է հոգեկանից» (Մ. Մամուրյան, Անգլիական նամականի, Երևան, 1966, էջ 365): Նա նշում է, որ վերջիններս բանականության, շահի, գիտության կրոնն են դավանում:

Նշելով ուտոպիական սոցիալիզմի հիմնադիրներից մեկի՝ Ռոբերտ Օուենի ծննդյան 200-ամյակը, առաջավոր մարդկությունն արժանին է հատուցում նրա տեսական ժառանգությանը, որը բարերար ներգործություն ունեցավ գիտական կոմունիզմի ուսմունքի ձևավորման ու ստեղծման գործում:

ՍՎԵՏԼԱՆԱ ՍԱՐԳՍՅԱՆ

# ՄԱՄՈՒԼԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԷՋԵՐ

## ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ՄԱՄՈՒԼԸ ՆՈՐ ԿԱՐԳԵՐԻ ՇԵՄԻՆ

Բոլշևիկյան հայ պարբերական մամուլի պատմության մեջ 1920 թվականը գրավում է յուրահատուկ տեղ: Դա այն ժամանակ էր, երբ Անդրկովկասի բուրժուա-ազգայնական անկախ կոչեցյալ հանրապետությունները և նրանց ղեկավարող ազգայնական կուսակցությունները վերջնականապես վարկաբեկվել էին աշխատավոր ժողովրդի աչքում, կորցրել առանց այն էլ մաուզերի ուժով պահպանվող հեղինակությունը:

Հայ ժողովրդի երկարամյա բազմաչարչար ուղին, դասակարգային ու ազգային ճնշման կրկնակի լուծը, ազատության դարավոր որոնումները և, վերջապես, պատմության ողջ ընթացքը նրան անվերապահորեն և մեկընդմիշտ տարան մեծ Հոկտեմբերի ուղիով: Հեղափոխական այդ մեծ պայքարը ղեկավարում էին բոլշևիկները: Արդեն 20 թվականի գարնանը Հայաստանը հղի էր հեղափոխությամբ:

Անհաշտունչ այդ տարիներին, երբ չկային տպագրական համարավետ պայմաններ, սակավ էին գրական կադրերը, թերթերը լույս էին տեսնում ազգայնական կառավարությունների ամենօրյա արգելքների ու կամայականության պայմաններում, երբեմն մեծ ընդհատումներով, այդուհանդերձ, բոլշևիկյան հայ պարբերական մամուլն անփոխարինելի դեր խաղաց՝ հանդիսանալով առաջադեմ խոհերի ու ձգտումների արտահայտիչը: Թերթերը պրոպագանդում էին մարքսիզմ-լենինիզմի գաղափարները, երիտասարդ Սովետական Ռուսաստանի արտաքին ու ներքին քաղաքականության հարցերը, բացահայտում հակակոմունիստական կուսակցությունների ռեակցիոն էությունը: Այդ տարիների մամուլի դիպուկ բնութագիրն է տվել լենինյան գվարդիայի հայ մարտիկներից մեկը՝ Սարգիս Կասյանը.

«Որքան էլ տևական չէին այդ թերթերը, որքան էլ մեծ ընդմիջումներով էին նրանք հրապարակ գալիս, այնուամենայնիվ, նրանք ցրնցում էին հայ ազգաբնակչությանը, խոր հետաքրքրություն առաջ բերում, խորունկ հետք թողնում նրանց մտքի ու սրտի մեջ: Ամեն մի թերթ մի իրադրություն էր, որը խորապես դրոշմվում էր հայ աշխատավորի սրտում, անհաշտ հեղափոխական կռվի մղում, կազմակերպական ջահ դառնում նրա համար» («Սովետական Հայաստան», № 4, 1926 թ.):

1920 թ. լույս են տեսել բոլշևիկյան 16 հայ պարբերականներ:

1920 թվականի հունվարի 1-ին Թիֆլիսում լույս տեսավ Ռուսաստանի կոմունիստական (բոլշևիկյան) կուսակցության Կովկասյան երկրային կոմիտեի օրգան «Պահակ» թերթը:

1920-ի հունվարին, երբ Անդրկովկասում մոլեգնում էր հակահեղափոխական տեռորը, «Պահակն» իր առաջին համարում տպագրեց Վ. Ի. Լենինի «Ծաբաթօրյակների մասին» հոդվածը և Մաքսիմ Գորկու **Բազեի երգը** ստեղծագործությունը: Այս ընթերցողը տեսնում է պրոլետարական հայ գրող Հակոբ Հակոբյանի **Մարգարե եմ ես** բանաստեղծությունը, տեղեկություններ ստանում Սովետական Ռուսաստանի մասին. թերթը կոչ է անում օրինակ վերցնել հեղափոխական Ռուսաստանից և թոթափել դաշնակցական լուծը:

«Պահակին» ակտիվ աշխատակցել են Հակոբ Հակոբյանը, Ավետիք Գուլոյանը, Հատիկ Ազիզյանը, Շավարշ Ամիրխանյանը, Սիմակը և ուրիշներ: Ընդամենը 23 համար լույս տեսնելուց հետո «Պահակ» թերթը փակվեց Վրաստանի մենշևիկյան կառավարության կարգադրությամբ:

Ալեքսանդրապոլի բոլշևիկներն արդեն փորձով գիտեին տպագիր օրգանի ազդեցության ուժը: Հեղափոխական տրադիցիաներով հարուստ այդ քաղաքում հունվարի 11-ին լույս տեսավ «Ալիք» թերթի առաջին և միակ համարը: «Ալիքը» Ռուսաստանի կոմունիստական (բոլշևիկյան) կուսակցության Ալեքսանդրապոլի կազմակերպության օրգանն էր, որի լույսընծայման համար մեծ ջանք էին թափել Սարգիս Խանոյանը, Բագրատ Ղարիբջանյանը, Արշակ Գոգունցը և ուրիշներ: Թերթն արտա-

ցրում էր աշխատավորական մասսաների խոհերն ու պահանջները, տեղեկություններ հայտնում Ալեքսանդրապոլի երկաթուղայինների գործադուլի, Սովետական Ռուսաստանի կյանքի մասին: Այն ողջունում էր Սովետական Ռուսաստանին հաղթանակների առթիվ, Հայաստանի աշխատավորությանը կոչ անում բախտը կապել Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հետ, ուժեղացնել պայքարը դաշնակցության և նրանց օտարերկրյա տերերի դեմ, պայքարել հանուն Հայաստանում սովետական իշխանության հաղթանակի: Այդ ամենը խիստ տագնապ առաջացրին դաշնակցականների շրջանում: Տեղական իշխանությունները հարձակվեցին «Ալիքի» տարածողների վրա, ծեծեցին նրանց, ոչնչացրին թերթի գրեթե բոլոր համարները: Այն արգելվեց: Մեզ է հասել միայն թերթի մասին կազմված ոստիկանական գործը և առաջին էջի լուսանկարը:

Ավելի ուշ, Հայաստանում, սովետական իշխանության հաստատման հենց նախօրյակին, Ալեքսանդրապոլում հրատարակվեց նաև «Կոմունիստ» թերթը, որը նույնպես մեծ դեր խաղաց աշխատավոր մասսաների հեղափոխական շարժումների կազմակերպման գործում:

Հեղափոխական տրադիցիաներով դաստիարակված Լոռվա բոլշևիկները հունվարի 20-ին հրատարակում են «Լոռվա գյուղացիության ձայնը» թերթը, որը բոլշևիկյան կազմակերպությունների և գյուղացիական միության օրգանն էր: Արտահայտելով ընչազուրկ գյուղացիության խոհերն ու ձգտումները, լրագիրը միաժամանակ սուր քննադատում էր օտարերկրյա իմպերիալիստական տերությունների՝ Հայաստանում վարած գաղութային քաղաքականությունը, մերկացնում անգլո-ամերիկյան-ֆրանսիական կապիտալի ներկայացուցիչների գործելակերպը, վեր հանում սուտը, կեղծիքն ու կողոպուտը...

Քննարկելով ագրարային քաղաքականության հարցը՝ «Լոռվա գյուղացիության ձայնը» կոնկրետ փաստերով ցույց էր տալիս, թե ի՞նչ կարող է տալ հեղափոխությունը գյուղացիներին:

Ապրիլի 1-ից Երևանում սկսեց լույս տեսնել Ռուսաստանի կոմունիստական (բոլշևիկյան) կուսակցության Երևանի քաղաքային կոմիտեի օրգան «Կոմունիստ» թերթը: Այն հրատարակվում էր անլեգալ: Թերթի խմբագիրն էր Ասքանազ Մռավյանը: Քայլ առ քայլ ցույց տալով Անդրկովկասյան բուրժուա-ազգայնական կուսակցությունների հակահեղափոխական գործողություններն ու գործարքները, թերթը, միաժամանակ, հայ աշխատավորներին նախազգուշացնում էր չենթարկվել թշնամու պրովոկացիաներին ու կեղծ խոստումներին, պայքարել Հայաստանում սովետական կարգերի հաղթանակի համար:

Երևանի աշխատավորության հեղափոխական պայքարի պատմության մեջ «Կոմունիստը» հիանալի կատարեց ո՛չ միայն կոլեկտիվ պրոպագանդիստի, այլև կոլեկտիվ կազմակերպչի իր դերը:

Ապրիլին, Ռուսաստանի կոմունիստական (բոլշևիկյան) կուսակցության Հայաստանի կոմիտեի ցուցումով Երևանում լույս տեսավ ևս մի թերթ — «Գյուղացու ձայնը»: Այս թերթում թղթակցություններով հանդես էին գալիս Երևանի, Շիրակի, Զանգեզուրի, Լոռու, Էջմիածնի, Իջևանի և Հայաստանի այլ գավառների գյուղացիները: Թերթը խմբագրում էին Ա. Մելքոնյանն ու Դ. Տեր-Սիմոնյանը: Տեղական իշխանությունները բոլշևիկյան այս թերթը ևս արգելեցին:

1920 թվականի մայիսյան ապստամբության ճնշումից հետո Հայաստանի բոլշևիկները շարունակում են լուրջ ուշադրություն նվիրել գրավոր պրոպագանդային: Լույս են տեսնում «Կարմիր բանակ», «Երիտասարդ կոմունիստ», «Կարմիր աստղ» և այլ թերթեր, թռուցիկներ, բրոշյուրներ:

Հայ իրականության մեջ իր բացառիկ տեղն ունի Բաքվի «Կոմունիստ» թերթը, որն սկսեց լույս տեսնել 1920 թվականի մայիսի 18-ից: Այն պրոպագանդում էր սոցիալիստական հեղափոխության տեսական ու տակտիկական դրույթները, լուսաբանում Հայաստանի կոմունիստական կուսակցության, նրա Կենտկոմի և արտասահմանյան բյուրոյի գործունեությունը, վեր հանում հայ ժողովրդի՝ Ադրբեջանում բնակվող հատվածի հերոսական աշխատանքը՝ սոցիալիստական վերափոխումների զանազան ճակատներում:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո Ռուսաստանի շատ քաղաքներում հաջորդաբար սկսեցին լույս տեսնել հայկական թերթեր: Չորս տարվա ընթացքում հրատարակվեց ավելի քան 19 պարբերական, որոնք մեծ դեր խաղացին հայ գաղթօջախներում մասսաների կոմունիստական դաստիարակության ասպարեզում:

Ռոստով-Նախիջևանի հայ ազգաբնակչության կյանքում զգալի դեր խաղաց տեղի կուսակցական կազմակերպության հայկական սեկցիայի օրգան «Բանվորի կռիվը» թերթը, որի առաջին համարը լույս տեսավ 1920 թ. մարտի 3-ին: Այն լուսաբանում էր սովետական իշխանության դեկրետները, որոշումները և զանազան միջոցառումներ: Կրասնոդարում, որտեղ վաղուց ի վեր հայերը բնակություն էին հաստատել, 1920 թ. օգոստոսի 1-ին լույս է



տեսնում «Կարմիր աստղ» թերթը: Այն սկզբում հրատարակվում է որպես Ռուսաստանի կոմունիստական (բոլշևիկյան) կուսակցության Կուբան-սևծովյան քարտուղարությանը կից Արևելյան ազգությունների բաժնի օրգան, ապա, 38-րդ համարից սկսած՝ իբրև Կրասնոդարի կոմիտեի հայկական սեկցիայի օրգան. թերթը խմբագրում էին Ն. Տեր-Անդրեասյանը և Կ. Հալաբյանը: «Կարմիր աստղը» առաջին համարի առաջնորդողում հայտնում է իր նպատակները. «Մեր թերթն այսօր իրեն նպատակ է դնում պարզել մի կողմից դաշնակցական-բուրժուական կառավարության պատկերը Հայաստանում, մյուս կողմից՝ սովետական կառավարության ձեռնարկած միջոցառումները: Մեր թերթն աշխատելու է հայ բանվորությանը և չքավոր գյուղացիությանը բացատրել, որ ինչպես ամբողջ աշխարհի, նույնպես և հայ աշխատավոր մասսայի ազատագրումը կախված է ռուսական հեղափոխության բախտից»:

Անդրկասպյան երկրամասի հեղկոմի որոշմամբ Պոլտորացկում (այժմ Աշխաբադ) հունվարի 29-ին լույս տեսավ «Կոչնակ» հայերեն թերթը: Այն հայկական գործերի կոմիսարիատի Պոլտորացկի բաժանմունքի օրգանն էր և լուսաբանում էր Աշխաբադի, Տաշքենդի, Կոկանդի, Սամարղանդի, Չարջուի և Միջին Ասիայի այլ քաղաքների հայ աշխատավորության առօրյան: «Կոչնակի» խմբագիրն էր Գ. Սադաթյանը: Հրատարակվելով մայր հայրենիքից հեռու, Հայաստանի հեղափոխական շարժումների գնահատման հարցում «Կոչնակը» դրսևորել է որոշակի սխալներ: Նրա էջերում երբեմն տեղ էին գտնում անկումային տրամադրություններով համակված հոդվածներ ու ակնարկներ: Այդուհանդերձ «Կոչնակն» ըզգալի դեր խաղաց Միջին Ասիայի քաղաքների հայ աշխատավորության կյանքի լուսաբանման, նրանց կուլտուր-կրթական գործի կազմակերպման ոլորտում:

Դեռևս 1914 թվականին իր **Ռուսաստանի բանվորական մամուլի անցյալից** հոչակավոր աշխատությունում Լենինը գրում էր. «Ռուսաստանի բանվորական մամուլի պատմությունը **հասկանալու** համար պետք է իմանալ ո՛չ միայն և նույնիսկ ո՛չ այնքան մամուլի զանազան օրգանների անունները, որոնք ոչինչ չեն ասում արդի ընթերցողներին և միայն շփոթեցնում են նրան, այլ սոցիալ-դեմոկրատիայի զանազան մասերի բովանդակությունը, բնույթը, գաղափարական գիծը» (Երկեր, հ. 20, էջ 303):

Ղեկավարվելով լենինյան այս դրույթով, պետք է նշել, որ 1920 թվականին հրատարակվող հայկական թերթերը գրավոր պրոպագանդայի այն միակ միջոցն էին, որի օգնությամբ մասսայականացվում ու լուսաբանվում էին մարքսիզմ-լենինիզմի գաղափարները, կուսակցության տակտիկական, սոցիալիստական հեղափոխության կոնկրետ խնդիրները, սովետական իշխանության վերաշինող միջոցառումները:

Այդ իսկ տեսակետից առաջին պլանի վրա էին մղվում մարքս-լենինյան հեղափոխական ուսմունքի պրոպագանդայի հարցերը: Ուսումնասիրելով բոլշևիկյան հայ պարբերական մամուլի պատմությունը, տեսնում ենք, որ թերևս չկա մի թերթ, որ իր էջերը սիրով տրամադրած չլինի պրոլետարիատի մեծ առաջնորդի հոդվածներին:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո, Հայաստանում սովետական իշխանության համար մըղվող պայքարի ժամանակաշրջանում, բոլշևիկյան հայ պարբերական մամուլում ավելի հաճախ սկսեցին տպագրվել Վ. Ի. Լենինի աշխատությունները: 1920 թվականի ընթացքում հայկական թերթերը տպագրեցին Վ. Ի. Լենինի մի շարք կարևոր հոդվածները՝ նվիրված կոմունիստական կուսակցության թեորիային ու պրակտիկային, սովետական կառավարության ներքին ու արտաքին քաղաքականության, իմպերիալիստական պատերազմի, ազգային, ագրարային և այլ հարցերի:

Հողային հարցն ընդհանրապես շատ է հուզել Անդրկովկասի գյուղացիությանը: Եվ, պատահական չէ, որ ինչպես հայկական, այնպես էլ վրացական ու ադրբեջանական թերթերում այդ հարցին շատ հոդվածներ են նվիրվել: Սակայն առավել ուշագրավ է այն հանգամանքը, որ ագրարային հարցում նույնպես թերթերի ելակետն ինտերնացիոնալիստական է: Անդրկովկասի երեք ժողովուրդների համար ագրարային հարցը նրանք համարում են հավասարապես չլուծված և խնդիր են դնում վերացնել հողի մասնավոր սեփականությունն Անդրկովկասում: Այսպես՝ «Լոռվա գյուղացիության ձայնը» թերթը դեռևս 1920 թ. ապրիլի 4-ին գրում է. «Վրաստանում, Հայաստանում և Ադրբեջանում մինչև օրս էլ չեն լուծվել հողային գործերը, թեև այդ երկրների իշխանները, որոնք պոմեշչիկների ու գեներալների, ազնվականների ու գյուղական տզրուկների մոտիկ բարեկամներն են,— ամեն օր, օրը մի քանի անգամ երդվում են Ռուսաստանի սուրբ հեղափոխության անունով, թե **հողը աշխատավորինն է:** Հայաստանում մինչև հիմա էլ հողային օրենք չկա. էդ երկրի պարոն դաշնակցականներն իրենց պառլամենտում էդպիսի բաներով զբաղվելու ժամանակ չունեն:

Վրաստանում մենշևիկները մի խայտառակ օրենք են սարքել ժողովրդի դեմ, թե ազնվական ու պոմեշչիկ աղաները առաջին կատեգորիայից ինչքան դեսյատին բաժին պիտի ըստանան, երկրորդից՝ ինչքան, երրորդից՝ ինչքան,— ջահաննամը, թե աշխատավոր ու չարքաշ գյուղացուն մի չարեք օրավար էլ հող չի գալիս: Էդ մենշևիկ պարոնները վախում են, չլինի՞ թե ռանչպարը զոռի ազնվականին, չլինի՞ թե խեղճ ու կրակ պոմեշչիկին զրկի աղջատը...

Վրաստանի նման մի խայտառակ օրենք էլ ունի Ադրբեջանը: Բայց ինչպես մեր Լոռվա աշխատավոր գյուղացին, հայ, վրացի, ադրբեջանցի գյուղացին էլ շատ լավ հասկանում են, որ հողը՝ էդ հողի վրա քրտնողինն է: Ինչպես հասարակ գյուղացին, նույնպես և ազնվականն ու պոմեշչիկ պարոնը մի-մի **շունչ** են և երկուսի արյունն էլ կարմիր է, երկուսն էլ հավասար ուտել են ուզում և ապրել: Ամեն մարդ հավասար չափով կարող է հողից օգտվել և եթե ազնվական ու պոմեշչիկ պարոնը լայաղ կանի իր մեջքը կռացնել ու մի քիչ քրտնել, թող գա իր շնչի բաժինը ստանա ու վարի» («Լոռվա գյուղացիության ձայնը», № 5, 1920 թ.):

Թերթը վճռականորեն հայտարարում է, որ հողը մասնավոր սեփականություն չպետք է լինի: Սա արդեն ագրարային հարցի մարքսլենինյան լուծման պահանջն է:

Կոմունիստական կուսակցության ազգային քաղաքականության կարևոր ծրագրային դրույթները մշակել է Վ. Ի. Լենինը: Այդ տեսակետից ուշագրավ է 1920 թվականի հունիսին, կոմունիստական ինտերնացիոնալի երկրորդ կոնգրեսի առթիվ Իլյիչի գրած **Ազգային և գաղութային հարցերի վերաբերյալ թեզիսների սկզբնական ուրվագիծ** աշխատությունը. ծրագրային մի փաստաթուղթ, որն այսօր էլ պահպանել է իր արդիականությունը: Այդ հոդվածը հուլիսին հայերեն միաժամանակ լույս տեսավ «Բանվորի կռիվը» և «Կոմունիստ» թերթերում. այն նոր լույս է սփռում համաշխարհային հասարակական-քաղաքական կյանքի վրա: Այսօր ևս իմպերիալիստական լծից ազատագրված և ազատության դրոշ պարզած ժողովուրդներն ապրում են պատմական այն պրոցեսը, որը տասնամյակներ առաջ կանխագծել էր մեծ առաջնորդը: Լենինի կողմից ամփոփված ռուսական հեղափոխության անսպառ փորձը, որպես ուղեցույց աստղ, առաջնորդեց Անդրկովկասի ժողովուրդներին նոր պայքարի: Լենինյան դրույթները ազգային հարցի պրոլետարական լուծման վերաբերյալ իրենց նոր հաստատումը գտան հայերի, ադրբեջանցիների և վրացիների ազատագրման փորձով:

Հրատարակվելով Անդրկովկասի տարբեր քաղաքներում՝ Երևանում, Ալեքսանդրապոլում, Թիֆլիսում, Բաքվում և այլուր, առաջավոր հայ թերթերը չէին կարող անտարբեր մնալ բոլոր ազգությունների աշխատավորության հեղափոխական պայքարի միասնության հարցերի նկատմամբ:

Մտնել ազգային հարաբերությունների բարդ ու խճճված հանգույցի բացահայտման ոլորտը երկրամասում տիրող ազգային թշնամանքի մթնոլորտում, բուրժուական մամուլի թունդ ազգայնական վայրահաչությունների պայմաններում, ցույց տալ Անդրկովկասի բոլշևիկների ղեկավարությամբ գործող բազմազգ աշխատավորության ձգտումներն ու հեղափոխական նպատակները— սա, հիրավի, բոլշևիկյան հայ պարբերական մամուլի ինտերնացիոնալ պարտքն էր, որը նա կատարում էր նվիրվածաբար: Իր ծննդյան օրից այն զինվորագրվում էր ժողովուրդների ինտերնացիոնալ բարեկամության մեծ գործին, քանզի լույս տեսնելով տարբեր վայրերում, հայ ժողովրդի ազատագրությունը մշտապես կապում էր տվյալ տերիտորիայում ապրող ճնշված, ընչազուրկ աշխատավորների հեղափոխական պայքարի հետ:

Այսօր, երբ հետադարձ հայացք ենք ձգում հեղափոխական սերնդի գործունեության վրա, երբ վեր ենք հանում սոցիալիստական ազգերի ինտերնացիոնալ բարեկամության ակունքները, գնահատում Անդրկովկասի բոլշևիկների գործունեությունը երկրամասի ժողովուրդների ինտերնացիոնալ համերաշխության համար մղված պայքարի բոլոր փուլերում, ապա պարզորոշ երևում է հայ մամուլի ուրույն տեղը, նրա անգնահատելի ծառայությունները սովետական իշխանության արշալույսին:

Մամուլն իր էջերում պրոպագանդում էր ժողովուրդների ինտերնացիոնալ համերաշխությունը, ազգերի եղբայրությունը, նշում, որ անհրաժեշտ է վերջ տալ ազգամիջյան-եղբայրասպան կոտորածներին, Անդրկովկասի ժողովուրդների միջև ամրապնդել սերտ կապերն ու բարեկամությունը. մի բան, որ այնպես հետևողականորեն պահանջում էր Վ. Ի. Լենինը Անդրկովկասի կոմունիստներից: Իր առաջնորդող հոդվածներից մեկում «Պահակը» գրում է. «Հոսում է դարձյալ հայ և ադրբեջանցի բանվորների և գյուղացիների արյունը: Սրի են քաշվում հայ, ադրբեջանական գյուղերը, իսկ Երևանում և Բաքվում մինիստրական բանկետներ են, բալեր: Մինիստրները մեղադրում են իրար, գրում են երկար ու ամբողջովին սուտ նոտաներ, վազում են գանգատով իրենց պաշտպան անգլիացիների ու ամերիկացիների մոտ: Բայց հոսում է եղբայր ժողովուրդների արյունը: Որովհետև այլ կերպ լինել չի կարող այնքան ժամանակ, քանի դեռ իշխանությունը գտնվում է ժողովրդի թշնամիների ձեռքին»:



Այնուհետև թերթը բացահայտում է, որ «Դա մուսավաթի և դաշնակցության վարած հակաժողովրդական, շովինիստական քաղաքականությունից բխող անխուսափելի չարիքն է: Սուտ ու կեղծ են երկու կողմի մինիստրների բարձրադղորդ հայտարարությունները խաղաղության մասին: Դրանք միայն արվում են ժողովրդական մասսաները շփոթելու և նոր ավանտյուրաների զոհ դարձնելու դիտավորությամբ»:

Թերթը կոնկրետ օրինակներով ցույց է տալիս, թե, ինչպես 1905 թ. ռուսական առաջին հեղափոխության ժամանակ, այնպես էլ 1917 թ. բուրժուա-ազգայնական կուսակցությունները հրահրում էին ազգամիջյան ընդհարումներ, դրանով իսկ ցանկանում շեղել աշխատավորական մասսաների ուշադրությունը բարձրացող հեղափոխությունից: «Այսօր կրկնվում է հինը: Կառավարությունների համար պարզապես ձեռնտու է և շահավետ՝ մոլորության մեջ պահել իրենց ժողովուրդներին և ժողովուրդների եղբայրական արյան մեջ հաստատել իրենց դասակարգային բռնակալությունը... Հայ և ադրբեջանցի ժողովուրդները միայն այն ժամանակ կդադարեն փոխադարձաբար իրար բնաջնջելուց, երբ այլևս տխուր պատմական հիշողություն դարձած կլինեն այժմյան մուսավաթի և դաշնակցության հերոսները: Իսկ այդ կլինի, և կլինի շուտով» («Պահակ», № 2, 1920 թ.):

«Լոռվա գյուղացիության ձայնը» թերթի առաջնորդողներից մեկում գրված է. «Հայ և ադրբեջանցի ճնշված, շահագործված ժողովուրդներն իրար հետ կռվելու բան չունեն, նրանք երկուսն էլ տանջված ու քաղցած են, երկուսն էլ ուզում են իրար կողքի հանգիստ ու խաղաղ ապրել, ինչպես ապրել են միշտ, երբ մութ մարդիկ նրանց չեն խառնակել, երբ ժողովրդի թշնամիները մեջները չեն մտել ու սուտ-սուտ թշնամություն ստեղծել»: Թերթը հանդես չի գալիս սոսկ նկարագրողի դերում: Նա վերլուծում է եղբայր ժողովուրդների համատեղ պայքարի առանձին դրվագներ և եզրակացնում. «Բայց հայ ու ադրբեջանցի աշխատավոր գյուղացիների միաբանությունից վախենում են հայ և ադրբեջանցի ունևորները: Հայ և ադրբեջանցի աղքատների դասակարգային համերաշխությունից, եղբայրությունից սարսափում են ժողովրդի թշնամիները»: Թերթը բացահայտ կոչ է անում հայ և ադրբեջանցի աշխատավորներին, հողազուրկ գյուղացիներին՝ «...միացեք և միասին, կողք-կողքի ու ձեռք-ձեռքի տված պաշտպանեցեք ձեր արդար իրավունքները, ձեր համերաշխության ու եղբայրության սուրբ գործը էս աշխարհի տերերի դեմ» (№ 3, 1920 թ.):

«Միայն բանվորների և գյուղացիների ապստամբությունը դաշնակցական, մուսավաթական և մենշևիկյան կառավարությունների դեմ վերջ կտա ազգային կոտորածներին Անդրկովկասում... Կեցցե՛ Խորհրդային իշխանությունը Հայաստանում, Վրաստանում և Ադրբեջանում»: Ահա այսպիսի լոզունգներով էր 1920 թվականին Երևանում լույս տեսնում «Կոմունիստը»:

Թերթերը վճռականորեն պայքարում էին ինչպես նացիոնալիզմի, նույնպես և նիհիլիզմի, ազգային սահմանափակության դեմ, ցույց տալիս, որ իմպերիալիստական գաղափարական էքսպանսիան շեշտը դնում է հատկապես նացիոնալիզմի վրա, դրանով իսկ փորձում ազգամիջյան խլրտումների միջոցով շահագործվող մասսաներին հեռու պահել քաղաքական պայքարից, սերմանել ազգային թշնամանք և քայքայել պրոլետարիատի հեղափոխական պայքարի միասնական ճակատը:

Անդրկովկասի բազմազգ աշխատավորության ինտերնացիոնալ համերաշխության պրոպագանդան նպաստեց գաղափարական դաստիարակությանը հեղափոխական բանվորների մի ամբողջ սերնդի, որն անձնազոհ կռվի նետվեց հանուն երկրամասում սովետական իշխանության հաղթանակի:

Օժտված բոլշևիկյան մամուլի վեհ տրադիցիաներով, «Правда», «Известия», «Беднота» թերթերի օրինակով, հայ պարբերական մամուլը հայ աշխատավորության շրջանում անդուլ մասսայականացնում էր աշխարհում առաջին պրոլետարական պետության գաղափարները: Դա առաջնահերթ կուսակցական հանձնարարություն էր: Տպագրելով սովետական իշխանության առաջին օրենսդրական ակտերը՝ հայ մամուլը ղեկավարվում էր լենինյան այն դրույթով, ըստ որի դեկրետները պետք է դառնան սովետական իշխանության գաղափարների պրոպագանդման հզոր միջոց:

Սովետական կառավարության ընդունած յուրաքանչյուր դեկրետ, յուրաքանչյուր որոշում արտացոլվում էր բոլշևիկյան հայ պարբերական մամուլում: 1920 թվականին, Անդրկովկասում տիրող բուրժուա-ազգայնական կառավարությունները և նրանց ձայնափող դեղին մամուլը միտումնավոր կերպով աղավաղում էին սովետական իշխանության քաղաքականությունը, հերյուրանքներ տարածում նրա հաս-

ցեին: Կարևոր, դժվարին էին բոլշևիկյան հայ մամուլի խնդիրները: Այս իրադրություններում «Պահակ» թերթը կոչ է անում հետևել Սովետական Ռուսաստանի օրինակին. «Ի՞նչ է մընում անել, եթե ոչ, առանց ազգային խտրականության, միահամուռ ջանքերով վերջ տալ ներկա տիրող կարգերին և ստեղծել Խորհըրդային Անդրկովկաս, միանալով Խորհրդային Ռուսաստանին, դրանից զատ ուրիշ ելք չկա» (№ 16, 1920 թ.):

. «Լոռվա գյուղացիության ձայնը» թերթում Անդրկովկասի ժողովուրդների ու նախասիրությունների մասին կարդում ենք. «Մենք այսօր էլ սպասում ենք մեր հեղափոխությանը, սպասում ենք, որ մեր բանվոր-գյուղացին Ռուսաստանի մեծ հեղափոխությունից գոնե երեք տարի անցնելուց հետո ազատվի կապիտալի լծից, հարուստների ու ազնվականների շահագործումից, սպասում ենք, որ մեր զանազան լեզվով խոսող հայ, վրացի, ադրբեջանցի տանջված աշխատավորությունը մեզ մոտ էլ լինի իր հալալ աշխատանքի, իր երկրի տերը, զրկվածների ու շահագործվածների պետություն ունենա» (№ 14, 1920 թ.):

Ինչպես տեսնում ենք, թերթը չի բաժանում հայ, վրացի, ադրբեջանցի երեք տարբեր լեզուներով խոսող ժողովուրդների արմատական հեղափոխական շահերը:

«Պահակը», «Լոռվա գյուղացիության ձայնը», «Ալիքը», «Կոչնակը», «Բանվորի ձայնը», «Կարմիր աստղը», «Կոմունիստը» և այլ թերթեր լուսաբանում են սովետական իշխանության իսկական էությունը, նրա կոչումն աշխատավոր ժողովրդի բարեկեցության բարձրացման ոլորտում: Բազում հոդվածներում հայ կոմունիստները ցույց էին տալիս սովետական կառավարության որոշումների գործնական, հեղափոխական բնույթը, դրանով իսկ ընդգծում, որ սովետական իշխանությունը նոր տիպի պետություն է, ժողովրդի շահերի իսկական արտահայտիչն ու պաշտպանը: Արտադրամիջոցների զարգացմանը, սոցիալիստական աշխատանքային կարգապահության ամրապնդմանը նվիրված հոդվածները հարուստ էին բանվորների ակտիվ նախաձեռնությունը դըրսևորող օրինակներով:

Հայկական թերթերը միաժամանակ ցույց էին տալիս, թե աշխատավորներն ինչպիսի՜ ոգևորությամբ են լծվել լենինյան ստեղծարար աշխատանքին: Ռուստովի «Բանվորի կռիվը» 1920 թվականի մարտի 16-ի համարում գրում էր. «Տնտեսապես քայքայված Սովետական Ռուսաստանը պետք է փրկել գալիք կատաստրոֆից: Պետք է վերականգնել ու զարգացնել երկրի արդյունաբերությունը, կանոնավորել բարիքների բաշխումը, պետք է պատերազմական դրությունից թևակոխել վերաշինության»:

Հայկական թերթերը հատուկ ուշադրություն էին նվիրում մատաղ սերնդի կրթությանն ու դաստիարակությանը: «Պահակի» № 5-ում տըպագրվել է «Մանուկները Խորհրդային Ռուսաստանում» հոդվածը, որտեղ հանգամանորեն ցույց է տրված, թե ինչպիսի արմատական վերափոխություններ են կատարվել Սովետական Ռուսաստանում ժողովրդական կրթության ասպարեզում, որո՜նք են մանուկների կրթության ու դաստիարակության նոր սիստեմի առավելությունները:

Հաջորդ համարում «Պահակն» արդեն գրում է, թե ինչ վիճակում է հայ պատանիների ու աղջիկների կրթության գործը բուն Հայաստանում, դաշնակցության տիրապետության օրոք: Հակադրված են կրթական երկու սիստեմ, հակադրված են, որպեսզի ակնբախ լինի սոցիալիստական հասարակարգի առավելությունները, նրա ընձեռած բոլոր հնարավորությունները: Այս առումով հետաքրքրական է **Խորհրդային Ռուսաստանում** ընդարձակ ինֆորմացիան, որ տպագրվել է «Պահակ»-ում, Մոսկվայի բանփակի բացման առթիվ:

Հայ աշխատավորական մասսաներին հաղորդակից դարձնելով մարքսիստական տեսության հեղափոխական պրակտիկայով հաստատված լենինյան դրույթներին, 1920 թվականի բոլշևիկյան հայ պարբերական մամուլի նպատակն էր՝ ավելի ու ավելի ամրապնդել հեղափոխական տեսությունը հայ իրականության մեջ, ցույց տալ ռուսական պրոլետարիատի և աշխատավոր գյուղացիության պայքարի ուղու ճշմարտացիությունը, բորբոքել պայքարի կրակը դարերով ճնշված հայ ժողովրդի հոգում, կոչի կոչելով նրանց բոլոր շահագործողների դեմ:

Եվ այդ սրբազան կռվում, որը 1920 թ. նոյեմբերին պսակվեց բուրժուա-ազգայնական իշխանության տապալմամբ, սովետական կարգերի հաստատմամբ, հայ բոլշևիկյան պարբերական մամուլն ուղեցույց աստղ դարձավ բազմաչարչար հայ ժողովրդի ազատության ու երջանկության ճանապարհին:

**Ս. Հ. ՍԱՐԳՍՅԱՆ**
**Բանասիրական գիտությունների թեկնածու**

# Ժուռնալիստի ՆՈԹԵՐ

## ԸՆԴՀԱՏՎԱԾ ԿՅԱՆՔ



*«Արյան մեջ շաղախված ընկած էր սալահատակին, ձեռքի մեջ ծխախոտի գլանակը շարունակում էր վառվել, նրա կիսափակ աչքերն ուղղված էին արևելք, շրթունքները շարժվում էին, թվում էր, թե ինչ-որ ասելիք ունի, ուզում է մի բան հայտնել: Նա վերջին ճիգով փորձեց բարձրացնել գլուխը, բայց ուժերը չբավականացրին: Ոճրագործը, չվրիպելու համար գաղտագողի մոտենալով, հրազենը մոտեցրել էր ծոծրակին և նոր միայն կրակել»,— պատմում է առաջինը սպանության վայրը հասած Նորիկ Արզումանյանը:*

*Դաշնակցական արկածախնդիրները նման ձևով էին դատաստան տեսել հայ ժողովրդի արժանավոր զավակ, իրանահայ բանաստեղծ, արձակագիր և դրամատուրգ, «Վերելք» թերթի խմբագիր, ժողովուրդների միջև խաղաղության ու բարեկամության հաստատման համար մղվող պայքարի ակտիվ գործիչ Արամայիս Արզումանյանի հետ: Հանցագործին (ոմն Հաչյան) պատասխանատվությունից զերծ պահելու նպատակով, նախապես մշակված պլանի համաձայն, անհապաղ փոխադրում են Բեյրութ, իսկ դաշնակցական պարագլուխ Սաքո Շատախունու ակտիվ միջամտությամբ, դադարեցվում է սպանության գործի քննությունը: Հանցագործը մինչև օրս անպատիժ է:*

*Ջրավականանալով հաշվեհարդարով՝ դաշնակցականները գործի են դնում անլուր զըրպարտությունների իրենց վաղեմի զենքը: Հասարակությանը մոլորեցնելու նպատակով նրանք ամենուրեք Հ. Արզումանյանի մասին տարածում են գրպարտագրեր, որոնցով ճգնում են հաստատել, թե իբր «...Արզումանյանը կոմինֆորմբյուրոյի ընդհատակյա աշխատող էր», «ավարտել էր Մոսկվայի հատուկ կոմունիստական դպրոցը», «հայրը կրթվել ու դաստիարակվել էր սովետական երկրում»: Ոչնչով չհիմնավորված այս զայրալի հերյուրանքները սրանով չեն ավարտվում: Բանավոր ու գրավոր պրոպագանդայի մեջ փորձեր են արվում Արամայիս Արզումանյանին ներկայացնել որպես հայ ժողովրդի «երդվյալ թշնամի»՝ զուրկ ազգային արժանապատվության զգացումից և հայրենասիրությունից:*

### ՈՐՆ Է ՃՇՄԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ

*1919 թվականին, չկարողանալով տանել Անդրկովկասում բուն դրած դաշնակցականների, մենշևիկների ու մուսավաթականների կամայականությունները, ներկարար Բալասան Արզումանյանը թողնում է հայրենի բնաշխարհը, տե-*

Գինը 25 կ.։ 

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԱՐՀԵՍՏԱԿԱՆ ԵՂԱՆԱԿԱՍՏԵՂԾ ԿԱՅԱՆԸ

*Խարկովում կառուցվում է մեր երկրի խոշորագույն ֆիզոտրոնը՝ արհեստական եղանակաստեղծ կայանը։ 1500 քառակուսի մետր է նրա և ջերմոցների ընդհանուր տարածությունը։ Այստեղ հնարավոր կլինի ստեղծել ամենատարբեր եղանակային պայմաններ— անձրև, չորահողմ, թեթև ցրտահարություն... Եղանակը կըկարգավորեն ավտոմատները և էլեկտրոնային սարքերը։*

*Ֆիզոտրոնը հնարավորություն կընձեռի փորձարկումներ կատարելու ֆիզիոլոգիայի, բիոքիմիայի, բիոֆիզիկայի, գենետիկայի և բույսերի սելեկցիայի բնագավառում։*

## ԿՈՒՅՐԵՐԻ ՀԱՄԱՐ

*Ժողովրդական տնտեսության համամիութենական ցուցահանդեսի «Ռադիոէլեկտրոնիկա» տաղավարում ցուցադրված է տրանզիստորային դյուրակիր մի սարք՝ կույրերի համար։ Ուլտրաձայնային այս փոքր ձայնորսիչը նախագծված է Լիտվայում։ Սարքը հաղորդում է բարձր հաճախականության ազդանշաններ, որսում դրանց արտացոլումը և վերածում լսելի հնչունային արձագանքի, որոնց ձայներանգը և տոնը փոփոխվում են արգելքի բնույթին և հեռավորությանը համապատասխան։ Սարքի գործողության տրամագիծը 6 մետր է, կշիռը չի անցնում 500 գրամից։ Տեսողությունը կորցրած մարդը կարող է վստահել իր էլեկտրոնային «ուղեկցին» և համարձակ քայլել անծանոթ վայրերում։ «Կողմնորոշիչն» ունի երկու տարբերակ. մեկը նման է տրանզիստորային ռադիոընդունիչի և կրում են կրծքի վրա, մյուսը՝ գրպանի լապտերիկի։*

## ՆԱԽՆԻՆԵՐԻ ՕՐԻՆԱԿՈՎ

*Մարդու հեռավոր նախնիները «քայլել»-շարժվել են չորեքթաթ։ Եվ ո՛չ միայն նրանք, այլև իրենց մոտ «ազգակիցները»։ Ահա թե ինչու որոշ գիտնականներ գտնում են, որ չորեքթաթ շարժումին նմանվող ֆիզիկական վարժությունները օգտակար են օրգանիզմի համար, հատկապես սրտային և թոքային մի շարք հիվանդությունների, ինչպես նաև մկանային ու ներվային սիստեմների բուժման ժամանակ։ Այդ նպատակին է ծառայում «Ռիդի» ֆիրմայի (ԱՄՆ) թողարկած բավականին պարզ կառուցվածքի մարմնամարզական ապարատը, որով կարող են վարժություններ կատարել 6—60 տարեկան մարդիկ։*

## ՀՐԱԿԱՅՈՒՆ ԳՈՐԾՎԱԾՔ

*Շվեյցարիայում արտադրվել է հրակայուն գործվածք, որն ալյումինե պոլիէթիլենային նուրբ ժապավենով պատած արհեստական մետաքս է։ Գործվածքն անդրադարձնում է ջերմային ճառագայթների մոտ 98 տոկոսը։ Շատ ամուր է ու թեթև։ Այն դիմանում է մինչև 300° C ջերմության։ Այդ մետաքսից կարվում է պաշտպանական արտահագուստ։*

## ԹՈՒՂԹ՝ ՆԱՎԹԻՑ

*1969 թվականին «Պալպ էնդ պեյպեր ինտերնեյշնլ» ամսագրի տվյալներով ողջ աշխարհում արտադրվել է 126,9 միլիոն տոննա թուղթ. որը շատ քիչ է աշխարհի բնակչության օրեցօր աճող պահանջների բավարարման համար։*

*Վերջերս հաղորդում ստացվեց, որ Տոկիոյի համալսարանի պրոֆեսոր Տեստուիրոն մշակել է նավթից թուղթ ստանալու մեթոդը։ Գիտնականի վկայությամբ այդպիսի թուղթը սովորականից զգալիորեն թեթև է և ամուր։ Սակավանտառ Ճապոնիայի համար նավթից թուղթ ստանալը տնտեսական բացառիկ կարևոր նշանակություն ունի։ Գիտնականն այնքան է հավատում իր գյուտի ապագային, որ դրա հաղորդումը տպագրել է նավթից ստացած թղթի վրա և դրա անվնասությունն ապացուցելու համար իր նախաճաշը փաթաթում է այդ թղթով։*